Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք



# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

11
ՆՈՅԵՄԲԵՐ
1986 Թ.

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ
ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ
ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

ԼՈՒՅՍ Է
ՏԵՍՆՈՒՄ
ԱՄԻՍԸ ՄԵԿ
ԱՆԳԱՄ
ՀԱՅԵՐԵՆ
ԵՎ
ՌՈՒՍԵՐԵՆ

## Բովանդակություն



ՀԱՅԱՍՏԱՆԻ
ԿՈՄԿՈՒՍԻ
ԿԵՆՏԿՈՄԻ
ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ

ԵՐԵՎԱՆ

Խմբագրության հասցեն՝
375023, Երևան—23, Օրջոնիկիձեի պողոտա, № 2

ՀԵՌԱԽՈՍՆԵՐ՝

գլխավոր խմբագիր՝ 52—89—93
գլխավոր խմբագրի տեղակալ՝ 52—99—06
պատասխանատու քարտուղար՝ 52—99—22
պատասխանատու քարտուղարի տեղակալ՝ 56—59—93

Բաժիններ

մարքս-լենինյան տեսության պրոպագանդայի՝ 52—05—58
կուսակցական կյանք՝ 52—25—46
սոցիալ-տնտեսական պրոբլեմների՝ 52—57—56
գիտության և կուլտուրայի՝ 52—99—34
գրական աշխատողներ՝ 52—66—77
56—59—94
թղթակից, սրբագրիչ՝ 53—86—11
52—99—36





# ՍՈՎՈՐԵՑՆԵԼ ՄՏԱԾԵԼ ՈՒ ԳՈՐԾԵԼ ՆՈՐՈՎԻ

## ԸՆԿԵՐ Մ. Ս. ԳՈՐԲԱՉՈՎԻ ՃԱՌԸ

### հասարակական գիտությունների ամբիոնների վարիչների համամիութենական խորհրդակցությունում 1986 թ. հոկտեմբերի 1-ին

*Հարգելի ընկերնե՛ր։*

*Նախ և առաջ ես կցանկանայի կուսակցության Կենտրոնական կոմիտեի անունից ի սրտե ողջունել ձեզ և հաջողություններ մաղթել ձեր խորհրդակցությանը։ Մենք դրան մեծ կարևորություն ենք տալիս։*

*Ժամանակը պահանջում է նախաձեռնություն, ստեղծագործություն կյանքի բոլոր ոլորտներում։ Նա առաջ է քաշել իրենց նորությամբ և մասշտաբներով աննախադեպ խնդիրներ, որոնք պետք է լուծվեն ամենասեղմ պատմական ժամկետներում։*

*Կենտրոնական կոմիտեն ելնում է այն հաստատ համոզմունքից, որ արագացման,* **վերակառուցման, սովետական հասարակության որակապես նոր վիճակի հասնելու կուրսի իրագործումն աներևակայելի է առանց գաղափարատեսական գործունեության ակտիվացման,** *առանց զարգացող սոցիալիզմի հասարակական հարաբերությունների կատարելագործման գործնական միջոցների հուսալի գիտական ապահովման։*

*Ժամանակին Մարքսը և Էնգելսը գրում էին, որ պրոլետարիատը, դեռ նախքան բարիկադների վրա իր հաղթանակը նվաճելը, իր տիրապետության մոտեցման մասին ազդարարում է մի շարք մտավոր հաղթանակներով։*

*Ներկա ժամանակների նկատմամբ դա կիրառելով՝ մենք կարող ենք ասել, որ մեր կողմից դեռ նախքան մեր հասարակության որակապես նոր վիճակի հասնելը, մենք պետք է մտավոր խոշոր հաղթանակներ տանենք, էապես առաջ ընթանանք տեսության ոլորտում, կյանքի նոր երևույթների ու պրոցեսների ստեղծագործական իմաստավորման գործում։*

*Տեսությունն անհրաժեշտ է ոչ միայն հեռանկարային սոցիալական ու քաղաքական կողմնորոշման համար։ Այն անհրաժեշտ է բառացիորեն մեր յուրաքանչյուր առաջընթաց քայլի համար։ Քիչ չեն շատ խոշոր գործնական ու մի հարց չի կարող լուծվել առանց իմաստավորվելու և տեսականորեն հիմնավորվելու։ Տեսական գործունեությունն ինքը դառնում է սոցիալիստական և կոմունիստական շինարարության կարևորագույն շարժիչ ուժերից մեկը, վերակառուցման ամենակարևոր գործիքը։*

*Տեսական միտքը պետք է ավելի լրիվ և խորը բացահայտի առաջին հեր-*

թին սոցիալիզմի արդի փուլի առանձնահատկությունները, մինչև 2000 թվականը և դրանից հետո սոցիալիզմի որակապես նոր վիճակի հասնելու առանձին փուլերը։ Տեսական միտքը կոչված է տալու ամբողջությամբ վերցրած արդի աշխարհի գիտականորեն օբյեկտիվ պատկերը։

Այս բոլորը հասարակ հարցեր չեն։ Վերցնենք դրանցից միայն մեկը։ Մեր իդեալը մարդու համակողմանի զարգացումն է, որը ենթադրում է մարդկանց հարաճուն նյութական և հոգևոր պահանջմունքների ավելի ու ավելի լրիվ բավարարում։ Ընդսմին կարևոր է, որ նյութական առաջադիմությունն ուղեկցվի մտավոր և բարոյական ձեռքբերումներով։

Մենք փորձով գիտենք. եթե մարդու և հասարակության մեջ աղքատանում է հոգևոր, բարոյական սկզբունքը, ապա անխուսափելիորեն ուժեղանում են սպառողական տրամադրությունները, իրամոլությունը, ավելի է աղքատանում ներաշխարհը։ Ինչպես տեսնում ենք, պահանջմունքների աճի օրենքը միանշանակ կերպով և ինքնաբերաբար չի գործում։ Այստեղ պրոբլեմ կա, այն էլ ինչպիսի՜։ Եվ այն հարկավոր է լուծել կյանքի և մարդու զարգացման բոլոր գործոնների փոխգործողությամբ։

Ծավալվող վերակառուցումը անչափ պատասխանատու սոցիալական պատվեր է տալիս հասարակական գիտությունների ամբողջ համակարգին։ Ժամանակակից կյանքի նյութի հիման վրա հարստացման կարիք են զգում մեր պատկերացումները արտադրողական ուժերի և արտադրական հարաբերությունների դիալեկտիկայի, սոցիալիստական սեփականության, կոոպերացման, ժողովրդական ինքնավարության և դեմոկրատիայի մասին, հասարակական գիտակցության զարգացման, բացասական երևույթների պատճառների և հաղթահարման ուղիների մասին, նաև շատ ուրիշ հարցեր։

Կուսակցությունը տնտեսական գիտության հարաճուն ավանդին է ապավինում այն պայքարում, որ մենք մղում ենք հանուն արտադրողական ուժերի զարգացման, առաջադիմական տեխնոլոգիաների կիրառման, արտադրական հարաբերությունների որակական կատարելագործման, տնտեսավարման ու կառավարման ձևերի փոփոխման։

Առանց դրա անհնար են արագացումը, գլխավոր՝ մարդկային գործոնի «գործի գցելը»։

Մի խոսքով, ՍՄԿԿ Կենտկոմը տեսական ճակատի ակտիվացումը դիտում է որպես կարևորագույն խնդիր։ Դա մեր ստրատեգիայի անկապտելի բաղադրիչն է, անհետաձգելի և օբյեկտիվ սոցիալական պահանջմունք։ Այդ ճանապարհին հարկավոր է շատ բանից հրաժարվել, իսկ շատ բան էլ նորից սկսել։

Ես ի՞նչը նկատի ունեմ։

Կուսակցության XXVII համագումարի ծրագրային փաստաթղթերում, «Կոմունիստ» հանդեսի մասին ՍՄԿԿ Կենտկոմի վերջերս ընդունած որոշման մեջ խոսվում է հասարակագիտության վերակառուցման անհրաժեշտության մասին։ Նախանշված են դրա պրոբլեմային ուղղությունները, այդ աշխատանքի կոնկրետ ուղիներն ու մեթոդները։ Դուք այստեղ քննարկելու եք այդ հարցերը։

Ես կուզենայի իմ կարծիքը հայտնել այդ առթիվ։ Առաջին հերթին, կարծում եմ, պետք է խոսվի հասարակագիտության փոփոխված դերի ու նշանակության մասին ինչպես ամբողջությամբ վերցրած գիտության ներսում, այնպես էլ ավելի լայն՝ հասարակական և համամարդկային մասշտաբով։ Հասարակության մեջ տեղի ունեցող խոր, որակական, կարելի է ասել՝ հեղափոխական փոփոխությունները պահանջում են ոչ թե միայն հասարակագիտության պարզ վերակառուցում, այլև մյուս գիտությունների, ինչպես նաև ամբողջությամբ վերցրած հասարակության կողմից դեպի հասարակագիտություն մի շարք էական տեղաշարժերի կատարում։

Պարզ է, որ մեր կյանքի վերակառուցման, նրա նորացման ընթացքում տեղի է ունենում գաղափարների, հոգեբանական դրույթների, մտածողության ու վարքագծի ոճերի սուր, ոչ միշտ բացահայտ, բայց անզիջում պայքար։ Հինը առանց մարտի չի հանձնվում, նա գտնում է զանազան սխոլաստիկական խճողամտություններով կյանքի դինամիկային հարմարվելու նոր ձևեր։ Ըստ



որում արդեն «արագացում», «վերակառուցում» հասկացություններն էլ երբեմն ջանում են ներառնել հնացած դոգմաների ու ստերեոտիպների շրջանակների մեջ, ամլացնելով դրանց նորությունն ու հեղափոխական էությունը։

Բայց այսօրվա պրոցեսները չի կարելի հարմարեցնել հին ձևակերպումներին։ Անհրաժեշտ է մշակել կյանքի ժամանակակից դիալեկտիկան արտացոլող նոր հետևություններ։ Եվ դա կարելի է անել միայն ստեղծագործության մթնոլորտում։ Ճշմարտության որոնումը պետք է ընթանա տարբեր տեսակետների զուգադրման, բանավեճերի ու քննարկումների, նախկին ստերեոտիպների վերացման պայմաններում։

Ուստի և առանձնակի ուժով մենք խոսում ենք նոր գաղափարներ առաջ քաշելիս համարձակության, նախաձեռնության անհրաժեշտության մասին։ Ուստի և այսօր կուսակցությունը այդպես սրությամբ է դնում «ճշմարտության պահի» հարցը, թե՛ կյանքում և թե գիտության մեջ ճշմարտության հաստատման հարցը, գիտություն, որը կոչված է ուսումնասիրելու այն և գտնելու նրա պրոբլեմների սթափ և արդյունավետ լուծումներ։ «Ովքեր կամենում են որոնել «ուղիներ դեպի մարդկային երջանկությունը»,— ընդգծում էր Լենինը,— նրանց առաջին պարտականությունն այն է, որ ինքնախաբեությամբ չզբաղվեն, քաջություն ունենան շիտակորեն ընդունելու այն, ինչ որ կա»։

Նոր մտածողությունը, որին բոլորը պետք է տիրապետեն, դիալեկտիկական մտածողությունն է, իսկ դիալեկտիկան, ինչպես գրել է Կ. Մարքսը, «ոչնչի առջև չի խոնարհվում և հենց իր էությամբ քննադատական է ու հեղափոխական»։ Եվ այդ հատկանիշը մարքսիզմին է պատկանում «ամբողջովին և անվերապահորեն» (Լենին)։

Այսօր հասարակագետների առջև դրված է կյանքի պահանջներից եղած հեռավորության հաղթահարման խնդիրը։ Մեզ կենսականորեն անհրաժեշտ է հասարակագիտության ամբողջ ճակատի վճռական շրջադարձ դեմքով դեպի պրակտիկան։ Այսպես դրեց հարցը մեր կուսակցական համագումարը։ Վստահ եմ, որ հենց այդ ուղղությամբ կընթանա նաև ձեր խորհրդակցության աշխատանքը։

Կցանկանայի միայն ընդգծել. պրակտիկայի հետ տեսության կապի ամրապնդումը սոսկ ընդհանուր կոչ չէ։ Դա հասարագիտության վերակառուցման բանալին է, գիտնականների, դասախոսների աշխատանքի սկզբունքը։

Եվս մի հարց. պրակտիկան իմացության հիմքն ու ճշմարտության չափանիշն է։ Սա մենք վաղուց ենք յուրացրել, սա դուք սովորեցնում եք ուսանողներին։ Բայց մի՞շտ է արդյոք հաշվի առնվում, որ տեսության ու պրակտիկայի կապը դիալեկտիկական կապ է։ Չի կարելի տեսական խնդիրները կտրել գործնական խնդիրներից, բայց չի կարելի նաև տեսությունը փոխարինել փաստերի սոսկական գրանցմամբ։ Տեսությունը պետք է առաջ անցնի պրակտիկայից, ընդգրկի ավելի լայն երևույթներ, ավելի խոր նայի, տեսնի «այն, ինչ քողարկել է ժամանակը»։

Գիտությունը, տեսությունը անփոխարինելի են այնտեղ և այն ժամանակ, որտեղ և երբ «չեն գործում» գործողությունների սովորական եղանակները, որտեղ անցած փորձն ու գործնական հմտությունը արդեն չեն կարող հարկավոր խորհուրդը տալ, որտեղ անհրաժեշտ են սկզբունքորեն նոր լուծումներ, ոչ ստանդարտ գործողություններ։

Գիտությունը հարկավոր է մեզ և այն բանի համար, որ ձևավորի, դաստիարակի, արմատավորի ինքնուրույնաբար, ստեղծագործաբար մտածելու երիտասարդության ընդունակությունը։

Ասեմ ուղղակի և շիտակորեն. հասարակական գիտությունների դասավանդման առայժմ գոյություն ունեցող դրվածքն ու ձևերը, մեթոդները բավականաչափ նպաստում են այն բանին, ինչ մենք անվանում ենք դոգմատիզմ, սխոլաստիկա։

«Հանրահայտ ճշմարտություններում» այնպիսի դեղատոմսեր գտնելու հակումը, որոնք պիտանի լինեն կյանքի բոլոր դեպքերի համար, ծնունդ է

առնում պարզունակությունից, ոչ թե մտքի ստեղծագործական աշխատանքի, այլ ընդհանուր դրույթների անմիտ սերտման հաշվարկից։

Սերտմանը, անգիր անելուն Լենինը, ինչպես հայտնի է, հակադրում էր խորհրդածումը։ Իսկ դա էլ հենց հաճախ պակասում է հասարակական գիտությունների դասավանդմանը։

Ստեղծվել է մի տարօրինակ պատկեր. ժամանակակից գիտական իմացության մեջ ամենահետաքրքրականն ու գրավիչը՝ մարդն ու հասարակությունը, նրանց զարգացման օրենքները, հակասությունները, դասակարգերի պայքարը, նոր աշխարհի շինարարությունը, մարդկանց ձգտումը դեպի իդեալ, հոգեկան որոնումներն ու հիասթափությունները, ճշմարտության ձեռքբերումն ու աշխատանքային արարման հերոսությունը հաճախ դասախոսություններում, անենք՝ նաև դասագրքերում, վերածվում են ինչ-որ ձանձրալի, անհամ, ձևական բանի։

Դրանով իսկ սպանվում է մարքսիզմ-լենինիզմի կենդանի ոգին, նրա հուզական ինտելեկտուալության ամբողջ գրավչությունը, որը մարդկային անհագիստ մտքի գագաթն ու թանձրուկն է, որը ներառել է աշխատավոր մարդկանց ամբողջ իմաստնությունն ու ցավը, հսկայական փորձը, լավագույն ապագայի նրանց հույսերը։

Այսօր, երբ կուսակցությունը կոչ է արել մտածել և աշխատել նորովի, անհրաժեշտ է շատ բանում և նորովի կառուցել կրթության ու դաստիարակության պրոցեսը։

Նախ և առաջ խոսքը ստեղծագործական մոտեցման մասին է, դոգմատիկ մեթոդների և հասարակական գիտությունների դասավանդման մեթոդիկաների հեղաբեկման մասին է։ Հարկավոր է վերակառուցել ծրագրերը, նորից, թանկագին ընկերներ, նախապատրաստել նոր դասախոսություններ, նորացնել դասագրքերը։

Մի խոսքով, հարկավոր է նորից անդրադառնալ դիալեկտիկային, այս կամ այն առարկայի կամ երևույթի էության բացահայտման, մտքի զարգացման և հակասությունների միջոցով իմացության զարգացման նրա մեթոդին։ Այդ սկզբունքը պետք է դնել բուհական ծրագրերի և հասարակական գիտությունների դասավանդման մեթոդիկաների հիմքում, որոնցից պետք է նոր կյանքի շունչ զգացվի։ Այն պետք է հիմնականը դառնա սեմինար պարապմունքներում, որտեղ հարկավոր է ավելի շատ արմատավորել ինքնուրույն դատողության ունակությունը, գիտական վեճ վարելու կարողությունը, որտեղ էլ հենց, ինչպես հայտնի է, ծնվում է ճշմարտությունը։ Երկխոսություն և ոչ թե մենախոսություն՝ ահա թե ինչն է երիտասարդության կրթության ու դաստիարակության իրոք ստեղծագործական պրոցեսի անհրաժեշտ տարրը։

Մեզ հարկավոր է, որ երիտասարդության մարքս-լենինյան համոզմունքները լինեն խոր մտորումների, որոնումների ու բերկրալի հայտնությունների, եթե կուզեք, նաև հայտնագործությունների արդյունք՝ գոնե իրեն համար։ Միայն այդ ժամանակ համոզմունքները կդառնան ներքին, անձամբ ըմբռնված, տառապանքով ձեռք բերված, ուրեմն և՝ իրոք անսասան, կօգնեն ապրել և աշխատել։

Մեր ժամանակներում՝ բեկումնային ժամանակներում, ամբողջ հասակով հառնում է գիտական աշխարհայացքի ձևավորման գործում հասարակական գիտությունների դասավանդման նշանակության հարցը։ Կա՞ն արդյոք այստեղ նոր պրոբլեմներ, խնդիրներ։ Կարծում եմ, որ կան։

Մարդկության գիտական և տեխնիկական հզորության աճը, գլոբալ պրոբլեմների սրումը, մարդկային քաղաքակրթության և երկրագնդի բուն կյանքի գոյությանը ուժեղացող սպառնալիքը որպես միլիտարիզմի և ագրեսիայի իմպերիալիստական քաղաքականության հետևանք՝ այս ամենը աշխարհայեցողական նոր պրոբլեմներ է առաջադրում և պարտավորեցնում է վերաիմաստավորել հները։

Ներկա բարդ, հակասական, բայց փոխկախվածության մեջ գտնվող աշխարհում կողմնորոշվել կարողանալը բնության պարգև չէ։ Այն չի գալիս նաև



համընթաց, մասնագիտական առարկաների յուրացման հետ մեկտեղ։ Այդ ունակությունը հարկավոր է սովորեցնել ապագա մասնագետներին։ Չէ՞ որ աշխարհայացքը ոչ միայն աշխարհի մասին ընդհանուր տեղեկությունների հանրագումար է։ Դա միաժամանակ նաև գիտակցված դասակարգային շահեր ու իդեալներ, իրավական ու բարոյական նորմեր, սոցիալական գերակայություններ ու մարդասիրական արժեքներ է՝ այն ամենը, ինչը որոշում է մարդու վարքագծի ընտրությունը կյանքում, նրա պատասխանատու վերաբերմունքը հասարակության և հենց իր նկատմամբ։

Հասարակագիտությունը ոչ մի դեպքում չպետք է տեսադաշտից դուրս թողնի գլխավոր խնդիրը՝ պետք է ձևավորի սովետական մարդու հոգևոր հիմքերը, նրա ակտիվ քաղաքացիական դիրքորոշումը, որոշի նրա արարքները։

Գիտատեխնիկական առաջադիմությունը անչափ մեծացրել է մարդկության տեխնիկական հզորությունը։ Այդ հզորության մի մասնիկը ներկայումս վստահվում է ինժեներին, կոնստրուկտորին, գիտնականին։ Ինչպե՞ս նա կտնօրինի այն, ճիշտ ընտրություն կանի՞ արդյոք, երբ հանգամանքները պահանջեն դա։

Սա հարցերի հարցն է։ Եվ դա, անկասկած, կախված է մասնագետների աշխարհայեցողական կողմնորոշումից, ուրեմն և, շատ էական չափով՝ ձեր աշխատանքից, ընկերներ։

Մասնագետների պատրաստման գործում ինչպիսի՜ հսկայական պատասխանատվություն է ընկնում հասարակական գիտությունների դասախոսների ուսերին։

Ուսանողների հետ ձեր ուսումնական և դաստիարակչական աշխատանքից է մեծապես կախված, թե ապագա ինժեներներն ու գյուղատնտեսները, բժիշկներն ու ուսուցիչները ինչ չափով կկարողանան արդի գիտության բարձրագույն նվաճումների մակարդակի գիտելիքները, պրոֆեսիոնալ բանիմացությունը միավորել գաղափարական համոզվածության, քաղաքական հասունության, բարձր բարոյականության, սոցիալական ակտիվության հետ։

Թանկագին ընկերնե՛ր։

Մեր ժամանակը ոչ միայն բարձր, ես նույնիսկ կասեի, խիստ պահանջներ է ներկայացնում, այլև հիրավի աննախադեպ հնարավորություն է ընձեռում նաև ձիրքերի ի հայտ բերման, ընդունակությունների ու տաղանդների գործնական կիրառման համար։

Հարկավոր է ամենուրեք գործն այնպես տանել, որ պրպտող, ստեղծագործող, վերակառուցման ավանգարդում ընթացող մարդիկ ավելի հեշտ շնչեն, ավելի արգասավոր աշխատեն և ավելի լավ ապրեն։ Դա վերաբերում է թե՛ արտադրությանը, թե՛ գիտությանը, թե՛ արվեստին, հասարակական կենսագործունեության բոլոր ոլորտներին։

Գիտատեխնիկական սրընթաց առաջադիմության ընթացքում մտավոր, գիտական պոտենցիալը դառնում է հասարակության կարևորագույն, իր բնույթով անսպառ ռեսուրսը։ Եվ արագացման պատմական խնդիրների լուծումը մեծապես պայմանավորված է այդ պոտենցիալի ճիշտ, փութաջան և արդյունավետ օգտագործումով։ Նրա մոբիլիզացման գործում հսկայական դեր է կոչված խաղալու բուհական գիտությունը։

Բարձրագույն կրթության համակարգում զբաղված է գիտական աստիճաններ ու կոչումներ ունեցող բոլոր գիտնականների մոտ կեսը։ Կարելի՞ է արդյոք, սակայն, ասել, թե նրանք ժամանակի պահանջներին համապատասխանող ավանդ են մուծում գիտատեխնիկական և սոցիալական առաջընթացի գործում։ Անկեղծ ասած՝ ոչ։ Բուհական գիտությունը դեռ մեծ պարտք ունի հասարակությանը։

Ուզում եմ ձեզ հիշեցնել, որ մեր հասարակության սոցիալ-տնտեսական զարգացման կոմպլեքսային, խոշորամասշտաբ և երկարաժամկետ ծրագրերի լուծումն անհնար է առանց հասարակական, բնական և տեխնիկական գիտությունների ներկայացուցիչների համագործակցության ամրապնդման։ Անչափ, ծայրահեղորեն նեղ մասնագիտացումը, գիտելիքների մյուս բնագավառների

նվաճումների անտեսումը ներկայումս լուրջ արգելք են դառնում նաև բուն գիտության, այդ թվում և հասարակագիտության զարգացման համար։ Ինչպես էկոնոմիկայի մեջ, այնպես էլ գիտության ու կրթության ոլորտում պետք է վճռականորեն ոչնչացնել գերատեսչական արգելքները, ընդ որում ոչ միայն բուհական, ակադեմիական ու ճյուղային գիտությունների միջև, այլև բարձրագույն կրթության բուն ոլորտում, որը մասնատված է տասնյակ «դեպարտամենտների»։

Հարկավոր է այս բոլոր և մյուս հարցերը ավելի համարձակորեն առաջադրել ու լուծել՝ նախ և առաջ հոգ տանելով գործի շահերի մասին։ Այն ժամանակ հասարակագիտության վերակառուցումը ևս ավելի արագ կընթանա։ Այն ժամանակ հասարակական գիտությունները ավելի կմոտենան կյանքի պահանջմունքներին, պրակտիկային։ Այն ժամանակ ավելի արգասավոր ու արդյունավետ կդառնա հասարակագիտության դասավանդումը։

Կենտրոնական կոմիտեն հույսեր է կապում ձեզ հետ, հաջողություններ մաղթում ձեր ոչ դյուրին և հասարակությանն այնքան անհրաժեշտ աշխատանքում։ Բայց հարկավոր է վերակառուցվել, ընդ որում՝ հիմնովին, ժամանակի պահանջների մակարդակին լինելու համար։

Այսօր մեր առջև կանգնած բացառիկ բարդ մասշտաբային խնդիրներին մենք լավատեսորեն ենք նայում. մենք պետք է այս ամենն անենք, մենք դա չենք կարող չանել, մենք անպայման դա կանենք։

---

# ԻՆՖՈՐՄԱՑԻՈՆ ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆ

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ ՊԼԵՆՈՒՄԻ ՄԱՍԻՆ

**1986 թ. հոկտեմբերի 5-ին տեղի ունեցավ Հայաստանի կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի պլենումը։**

**Պլենումը քննարկեց ՍՄԿԿ XXVII համագումարի պահանջների լույսի ներքո գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքի հետագա կատարելագործման ուղղությամբ հանրապետության կուսակցական կազմակերպությունների խնդիրները։**

**Զեկուցումով հանդես եկավ Հայաստանի կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի առաջին քարտուղար ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը։**

**Զեկուցման շուրջը ծավալված մտքերի փոխանակությանը մասնակցեցին ՀԿԿ Երևանի քաղկոմի առաջին քարտուղար ընկ. Լ. Գ. Սահակյանը, «Հայէլեկտրամեքենա» արտադրական միավորման գործիքագործ-փականագործ ընկ. Ս. Ս. Ֆահրադյանը, ՀԿԿ Լենինականի քաղկոմի առաջին քարտուղար ընկ. Դ. Ա. Հարությունյանը, Հրազդանի շրջանային ագրոարդյունաբերական միավորման բրիգադավար ընկ. Վ. Ի. Ցուբինը, Հայաստանի գրողների միության վարչության նախագահ ընկ. Վ. Հ. Պետրոսյանը, ՀՍՍՀ գիտությունների ակադեմիայի փոխպրեզիդենտ ընկ. Գ. Ա. Գալոյանը, Հայկական ՍՍՀ հրատարակչությունների, պոլիգրաֆիայի և գրքի առևտրի գործերի պետական կոմիտեի նախագահ ընկ. Գ. Մ. Մուղնեցյանը, ՀԿԿ Մասիսի շրջկոմի առաջին քարտուղար ընկ. Պ. Գ. Սաֆյանը, արտասահմանյան երկրների հետ բարեկամության և մշակութային կապի հայկական ընկերության նախագահության նախագահ ընկ. Ն. Լ. Հակոբյանը, Արագածի շրջանի Ծաղկահովտի ավխոզի տրակտորիստ ընկ. Թ. Ջ. Թալոյանը, «Սովետական Հայաստան» թերթի խմբագիր ընկ. Է. Ա. Մանուկյանը, ժողովրդական դեպուտատների Կրասնոսելսկի շրջսովետի գործկոմի նախագահ ընկ. Մ. Յու. Ալիևը, Հայկական ՍՍՀ գերագույն դատարանի նախագահ ընկ. Ա. Ա. Գևորգյանը, ՀԼԿԵՄ Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Հ. Հ. Հակոբյանը։**

**Եզրափակման խոսքով պլենումում հանդես եկավ Հայաստանի կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի առաջին քարտուղար ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը։**

**Քննարկված հարցի առթիվ պլենումն ընդունեց համապատասխան որոշում։**

**Դրանով Կենտկոմի պլենումն ավարտեց աշխատանքը։**

**ՀԿԿ Կենտկոմի պլենումի աշխատանքին մասնակցում էր ՍՄԿԿ Կենտկոմի կազմակերպական-կուսակցական բաժնի հրահանգիչ ընկ. Վ. Ի. Պոլյակովը։**

# ԸՆԿԵՐ Կ. Ս. ԴԵՄԻՐՃՅԱՆԻ ԶԵԿՈՒՑՈՒՄԸ

## ՀԿԿ Կենտկոմի 1986 թ. հոկտեմբերի 5-ի պլենումում*

Ընկերնե՛ր։

Հանրապետության կոմունիստները, աշխատավորները, ինչպես բոլոր սովետական մարդիկ, ապրում և աշխատում են ՍՄԿԿ պատմական XXVII համագումարի գաղափարների ու որոշումների խոր ազդեցության ներքո, ավելի ու ավելի լայնորեն ծավալում պայքարը սոցիալ-տնտեսական զարգացումն արագացնելու, հասարակության կյանքի բոլոր կողմերը որակապես վերափոխելու՝ համագումարի մշակած կուրսի իրականացման համար։

Ժամանակը համոզիչ ցույց տվեց. այն նորը, որի սկիզբը դրվեց Կենտկոմի 1985 թվականի ապրիլյան պլենումում և իր համակողմանի զարգացումն ստացավ համագումարի որոշումներում, ջերմ պաշտպանություն է գտնում մասսաների կողմից։ Կուսակցության ղեկավարությամբ ամենուրեք անցկացվող վերակառուցումը դառնում է հիրավի համաժողովրդական գործ։ Վերակառուցումն ընդգրկում է ոչ միայն էկոնոմիկան, այլև հասարակական կյանքի մյուս բոլոր կողմերը, այդ թվում՝ հոգևոր, գաղափարախոսական ոլորտը։

Կուսակցության առաջադրած որակապես նոր, խոշորամասշտաբ խնդիրների իրագործումը պահանջում է արմատապես բարելավել գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքը, ակտիվացնել մարդկային գործոնը։

Վերջին տարիներս, հատկապես «Հայաստանի հանրապետական կուսակցական կազմակերպությունում ՍՄԿԿ Կենտկոմի 1983 թվականի հունիսյան պլենումի որոշումների կատարման ընթացքի մասին» ՍՄԿԿ Կենտկոմի հայտնի որոշման ընդունումից հետո, մեզանում առավել մեծ ուշադրություն է նվիրվում գաղափարախոսական ոլորտի, մասսաների կոմունիստական դաստիարակության բարելավման հարցերին։ Կուսակցական կոմիտեները ու կազմակերպությունները աշխատանք են տանում գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքը կյանքի հետ, կոնկրետ խնդիրների լուծման հետ ավելի սերտորեն շաղկապելու, այն ՍՄԿԿ Կենտկոմի 1985 թվականի ապրիլյան պլենումի, կուսակցության XXVII համագումարի որոշումների լույսի ներքո վերակառուցելու և կատարելագործելու, մեր աշխատանքի՝ որոշման մեջ նշված թերությունները վերացնելու նպատակով։

Այդ հարցերը քննարկվել են Կենտկոմի պլենումում, բյուրոյում ու քարտուղարությունում, հանրապետության կուսակցական ակտիվի ժողովում, քաղաքային ու շրջանային բոլոր կուսակցական կոմիտեներում, սկզբնական կուսակցական կազմակերպություններում։ Կադրերով ամրապնդվել են գաղափարախոսական մի շարք կարևոր տեղամասեր։ Դրական տեղաշարժեր կան պրակտիկ գործունեության մեջ։ Ավելի նպատակամետ և բովանդակալից են դարձել մարդկանց հետ կատարվող

* Տպագրվում է կրճատումներով։



աշխատանքի շատ ձևեր ու մեթոդներ։ Ակտիվացել է ղեկավար կադրերի մասնակցությունը աշխատավորների դաստիարակության գործին։ Վրաստանի և Ադրբեջանի կոմկուսների Կենտկոմների հետ համատեղ որոշում է ընդունվել Անդրկովկասի հանրապետությունների աշխատավորների ինտերնացիոնալ կապերի հետագա զարգացման մասին։ Հանրապետական մամուլում ավելի սրությամբ են դրվում չլուծված պրոբլեմները, ավելի կոնկրետ է խոսվում թերությունների մասին։ Կուտակվել է հարբեցողության դեմ, դեռահասների շրջանում իրավախախտումների կանխման համար մղվող պայքարի որոշակի փորձ։

Մեր հանրապետությունը հիմնականում հաջողությամբ ավարտեց տասնմեկերորդ հնգամյակի առաջադրանքների կատարումը։ Ժողովրդական տնտեսության զարգացման ասպարեզում դրական արդյունքներ կան նաև ընթացիկ տարում։ Ավելի է ամրապնդվել կարգուկանոնը արտադրության մեջ, կրճատվել են աշխատաժամանակի կորուստները, պակասել է կադրերի հոսունությունը։ Նախկինի համեմատ ավելի ակտիվորեն են ընթանում արտադրության վերազինումը, գիտատեխնիկական առաջադիմության արագացումը, միջոցներ են ձեռնարկվում ժողովրդական տնտեսության ինտենսիվացման ուղղությամբ։ Հետևողականորեն իրականացվում է սոցիալական զարգացման և ժողովրդի բարեկեցության բարձրացման ծրագիրը։

Բայց, ցավոք, մենք այսօր չենք կարող ասել, թե ապահովված է Կենտկոմի որոշման լրիվ կատարումը, թե մեր ամբողջ աշխատանքի, այդ թվում՝ գաղափարախոսական աշխատանքի վերակառուցման տեմպերը, մասշտաբները ու խորությունը համապատասխանում են ՍՄԿԿ Կենտկոմի 1985 թվականի ապրիլյան պլենումի, կուսակցական համագումարի ոգուն, ՍՄԿԿ Կենտկոմի նոր բարձր պահանջներին։

## I.

Ընկերնե՛ր։

Վերջերս ՍՄԿԿ Կենտկոմը քննության առավ հիշյալ որոշման կատարման ընթացքը, հանրապետական կուսակցական կազմակերպության գաղափարախոսական գործունեությունը։ Դրա խոր և պահանջկոտ վերլուծության հիման վրա տրվեց արվածի գնահատականը, բացահայտվեցին լուրջ թերություններ ու բացթողումներ, նշվեցին դրանց հաղթահարման ուղիները։

Նշվեց, որ կուսակցական կոմիտեները ու սկզբնական կուսկազմակերպությունները որոշակի աշխատանք են տանում ՍՄԿԿ Կենտկոմի 1984 թվականի հոկտեմբերի 17-ի որոշումը կատարելու համար, միջոցներ են ձեռնարկում բարձրացնելու քաղաքական-դաստիարակչական գործունեության արդյունավետությունը։

Դրա հետ մեկտեղ, իրավացիորեն նշվեց, որ կուսակցության XXVII համագումարի որոշումների լույսի ներքո գաղափարախոսական աշխատանքի վերակառուցումը բավարար եռանդով ու նպատակասլացությամբ չի կատարվում մեզանում։

Մի շարք էական վրիպումներ, որոնք քանիցս մատնանշվել են ՍՄԿԿ Կենտկոմի կողմից, մենք դեռևս չենք վերացրել։ Հայաստանի կոմկուսի Կենտկոմին, հանրապետության կուսակցական կոմիտեներին հաճախ պակասում են գործերի վիճակի ինքնաքննադատական խոր վերլուծությունը, որոշ բացասական երևույթների գնահատման քաղաքական սրությունը, սկզբնական կուսակցական կազմակերպություններին, գաղափարախոսական գերատեսչություններին, ղեկավար կադրերին ներկայացվող անհրաժեշտ պահանջկոտությունը գաղափարաքաղաքական աշխատանքի վիճակի համար։ Լուրջ բարելավում է պահանջում աթեիստական ու բարոյական դաստիարակությունը։ Դեռևս ամենուրեք չէ, որ անհանդուրժողության մթնոլորտ է ստեղծված սոցիալիստական հասարակությանը խորթ այնպիսի երևույթների նկատմամբ, ինչպիսիք են կաշառակերությունը, պորտաբուծությունը, սպեկուլյացիան, հափշտակումները, պաշտոնեական դիրքի չարաշահումը։ Անհրաժեշտ հաստատակամություն չի ցուցաբերվում բնակչության սոցիալ-կենցաղային պահանջմունքները ավելի լրիվ բավարարելու, սոցիալ-կուլտուրական ոլորտի նյութական բազան ամրապնդելու խնդիրների լուծման գործում։

Այս ամենից, ընկերներ, մենք պետք է ամենալուրջ հետևություններն անենք։

Դանդաղկոտությունը թերությունների և էական վրիպումների վերացման գործում, դրանց առկայությունը գաղափարախոսական աշխատանքում բացատրվում են նրանով, որ մեզանում պակասում են հետևողականությունն ու նպատակասլացությունը նախատեսված պլանների իրացման, գաղափարախոսական աշխատանքի կատարելագործման և վերակառուցման գործում։ Այստեղ հաճախ թույլ է տրվում ձևական մոտեցում։ Ամենուրեք չէ, որ հաստատված է կուսակցական խիստ վերահսկողություն, խստապահանջություն, և այնպես է ստացվել, որ միջոցառումներ եղել են շատ, իսկ արդյունքներ, կոնկրետ դրական փոփոխություններ, տեղաշարժեր՝ քիչ։ Գաղափարախոսական աշխատանքի առանձին ուղղություններում մենք չենք հասել դրա արդյունավետության բարձրացման, չենք կարողացել վերացնել վրիպումներն ու թերությունները։

Պատշաճ լուծում չեն գտնում մի շարք պրոբլեմներ, որոնք, նկատի ունենալով մեր հանրապետության յուրահատկությունը, առանձնակի ուշադրություն են պահանջում։

Թերությունների արագ վերացմանը խանգարող հանգամանք եղավ նաև այն, որ մեր հաշվետվության առթիվ ՍՄԿԿ Կենտկոմի ընդունած որոշումը քննարկելիս մի շարք կուսակցական կոմիտեներում ու կազմակերպություններում ուռճացվեցին որոշման մեջ մեր գործունեությանը տրված դրական գնահատականները և, ընդհակառակն, ստվերում թողնվեցին թերությունները։ Դրանց մասին խոսվեց կիսաձայն, ոչ քննադատաբար, ոչ այն սրությամբ, որպիսին պահանջում էր կուսակցական փաստաթղթի բուն ոգին։ Այս հարցում հաճախ մեղանչել են նաև մասսայական ինֆորմացիայի միջոցները։ Ոչ ինքնաքննադատական գնահատականը առանձին տեղերում ստեղծեց բարեհոգության ու ինքնահանգստացման մթնոլորտ։ Կենտկոմի տված ընդհանուր իրավացի գնահատականը հանրապետությունում տիրող բարոյաքաղաքական առողջ մթնոլորտի վերաբերյալ իրենց վերագրեցին նույնիսկ այնտեղ, ուր այդ մթնոլորտն իրականում պահանջում էր արմատական առողջացում։

Ոչ բոլոր սկզբնական կուսակցական կազմակերպություններն ակտիվորեն ձեռնամուխ եղան որոշման պահանջների կատարման գործին։ Որոշ տեղերում բարելավման ձգտումը չուղեկցվեց իրավիճակը վերափոխելու գործուն աշխատանքով, սահմանափակվեցին կիսամիջոցներով, անզիջում պայքար չմղվեց թերությունների դեմ։ Ասենք նաև, որ Կենտկոմի բյուրոն, քարտուղարությունը, բաժինները ժամանակին չկասեցրին հիշյալ երևույթները։

Վերոհիշյալ հարցի քննարկումը ՍՄԿԿ Կենտկոմում կոնկրետ օգնություն էր մեր կուսակցական կազմակերպությանը գաղափարախոսական աշխատանքի հետագա կատարելագործման ասպարեզում, նա նպատակամղում է մեզ նորովի նայել գործերի վիճակին, այն գնահատել՝ ելնելով կուսակցության համագումարի բարձր չափանիշներից։ Կենտկոմի պահանջները յուրաքանչյուր կոմունիստին հասցնելը, դրանց ժամանակին ու լրիվ կատարման ապահովումը առաջնահերթ և կարևոր խնդիր են մեր բոլոր կուսակցական, սովետական, արհմիութենական, կոմերիտական մարմինների ու կազմակերպությունների, մեր բոլոր գաղափարախոսական հիմնարկների համար։

Ներկա պլենումում քննարկելով գաղափարախոսական աշխատանքի կատարելագործման, նրա արդյունավետության և պրակտիկ ներգործունության բարձրացման, Կենտկոմի բարձր պահանջների իրացման հարցերը՝ մենք պետք է նախ և առաջ քննադատաբար իմաստավորենք արվածը, բացահայտենք նեղ տեղերը, միջոցառումներ մշակենք թերությունների վերացման համար, խորհենք այն մասին, թե ինչպես վերակառուցենք մեր գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական գործունեությունը, թե ինչպես սերտորեն շաղկապենք այն արագացման կոնցեպցիայի ու ստրատեգիայի հետ։ Ընդ որում պետք է ելնել համագումարի հետևյալ հիմնադրույթից. «Հասարակությունը շրջադարձել դեպի նոր խնդիրները, դրանց լուծմանը նպատակամղել ժողովրդի, յուրաքանչյուր աշխատավորական կոլեկտիվի ստեղծագործական պոտենցիալը՝ այսպիսին է երկրի սոցիալ-տնտեսական զարգացումն արագացնելու առաջնագույն պայմանը»։

Բոլորի համար պետք է բացարձակապես պարզ լինի, որ խոսքը վերաբերում է գաղափարադաստիարակչական աշխատանքի ոչ թե մակերեսային «բարվոքմանը»,



այլ գաղափարախոսական գործունեության արմատական, խորքային վերակառուց-
մանը, այդ աշխատանքի նոր ոճի հաստատմանը, նրա նպատակամղմանը, դժվարու-
թյունների հաղթահարմանը, շաղակրատանքից ու խրատականությունից ազատվե-
լուն, այն բանին, որ գաղափարադաստիարակչական աշխատանքը մոտեցվի կյան-
քին, մարդուն, որ այն մշտապես ծառայի սոցիալ-տնտեսական զարգացումն արա-
գացնելու պրոբլեմների լուծման նպատակով աշխատավորների համախմբման և մո-
բիլիզացման խնդրին։
Ուստի, արագացման ստրատեգիայի ապահովման արդյունավետության ըստ
ամենայնի բարձրացումը պետք է դիտել որպես կուսակցական կազմակերպություն-
ների գաղափարախոսական գործունեության վերակառուցման կարևորագույն խնդիր։
Գաղափարախոսական աշխատանքի արդյունավետությունը մեծապես բարձրա-
նում է, եթե այն սերտորեն շաղկապվում է քաղաքական, տնտեսական և սոցիալա-
կան ձեռնարկումների հետ։ Դա հնարավորություն է ընձեռում արմատախիլ անել
խրատականությունը, կյանքի կենդանի շնչով տոգորել կոչերն ու լոզունգները։ Մյուս
կողմից, կյանքն անհերքելիորեն ապացուցել է, որ այնտեղ, ուր լավ հիմքերի վրա
է դրված գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքը,
մշտապես հասնում են լավ արդյունքների սոցիալ-տնտեսական զարգացման հար-
ցերը լուծելիս։
Կուսակցական կոմիտեների ու կազմակերպությունների խնդիրն էլ հենց այն
է, որ հմտորեն զուգակցեն դրանք, հասնեն տնտեսական շինարարության գաղա-
փարախոսական ըստ ամենայնի ապահովման և սոցիալ-տնտեսական զարգացման
նաջողություններով ընդլայնեն գաղափարախոսական աշխատանքի բազան, հնարա-
վորությունները, բարձրացնեն նրա ներգործության արդյունավետությունը։
Արված առաջին քայլերը վկայում են, որ գնալով ծավալվում են էկոնոմիկայի
մեջ սկսված դրական տեղաշարժերը։ Սակայն այդպիսի տեղաշարժեր, ցավոք, տե-
ղի են ունեցել ոչ ամենուրեք։ Այնպիսի կոլեկտիվների կողքին, որտեղ վերակառուց-
վում են, տնտեսավարում նոր ձևով, ռացիոնալ, փութաջան, խելացի, որտեղ մշտա-
պես որոնում և ուղիներ են գտնում գործի բարելավման համար, մեզանում դեռևս
քիչ չեն նաև այնպիսիք, որտեղ ամենևին չի զգացվում նորի, վերակառուցման ոգին,
որտեղ մի կողմ են քաշվել տեղի ունեցող վերափոխումներից, գործում են հին ձևով,
չեն ապահովում առաջադրված խնդիրների կատարումը։
Ամեն անգամ, վերլուծելով այս կամ այն կարևոր խնդիրը չկատարելու պատ-
ճառը, ետ մնացող ձեռնարկությունում ու տնտեսությունում տիրող վիճակը, մշտա-
պես համոզվում ես, որ անհաջողությունների, աշխատանքի ձախողման հիմնական
պատճառներից մեկը մարդկային գործոնի թերագնահատումն է, կուսակցական կազ-
մակերպությունների դաստիարակչական գործունեության ցածր, այսօրվա պահանջ-
ներին բնավ չհամապատասխանող մակարդակը։
Վերցնենք մի այնպիսի կարևոր հարց, ինչպիսին է գիտատեխնիկական առա-
ջադիմությունը։ Եթե արագացման բախտը վճռող այդ գործի նկատմամբ վերաբեր-
մունքը արմատապես չփոխենք, ապա էկոնոմիկայի մեջ մենք բեկման չենք հասնի։
Այստեղ առաջին հերթին հարկավոր է եռանդագին ձեռնամուխ լինել մարդկանց
գիտակցության վերակառուցմանը, դեն շպրտել ստերեոտիպը աշխատանքում, քանի
որ էվոլյուցիոն ուղին այստեղ պիտանի չէ, հարկավոր է որակական ցատկ, ճեղ-
քում։ Իսկ մենք արդյոք հասե՞լ ենք դրան։ Ոչ, ընկերներ։ Մայրաքաղաքի Լենինյան
և 26 կոմիսարների շրջաններում կատարված ուսումնասիրությունները ցույց են
տալիս, որ գիտատեխնիկական առաջադիմության արագացման գործում արմա-
տական փոփոխություններ, տեղաշարժեր չեն կատարվել։ Շատ ձեռնարկություննե-
րում կուսակցական կազմակերպությունները խնդրի լուծմանը մոտեցել են հին մե-
թոդներով, չեն կարողացել մոբիլիզացնել մարդկանց, նպատակամղել խնդրի լուծ-
մանը, աշխատողները համապատասխանորեն չեն նախապատրաստվել, դա դեռևս
չի դարձել կոլեկտիվների կենսական գործը և, բնականաբար, բարձր արդյունքների
չեն հասել։ Եվ, որ մեզ մեծ մտահոգություն է պատճառում, առաջվա պես լիովին չեն
կատարվում նոր տեխնիկայի ու տեխնոլոգիայի ներդրման պլաններն ու միջոցա-
ռումները։ Իսկ չէ՞ որ այդ պլանները կազմում են հենց աշխատավորական կո-

լեկտիվները, ոչ ոքի դրանք չեն պարտադրվում։ Սա հայտնի է նշված կուսակցական կոմիտեների առաջին քարտուղարներ ընկ. ընկ. Ռ. Հակոբյանին և Ս. Հովհաննիսյանին, բայց նրանց վերաբերմունքը, ռեակցիան ամենևին չեն վկայում տվյալ հարցի լուծմանը կուսակցական կոմիտեների նոր մոտեցման մասին։ Մենք հատուկ շեշտում ենք այս շրջանները ահա թե ինչու. չէ որ նրանք մեր արդյունաբերության դրոշակակիրներից են։ Եվ, ելնելով նրանց հնարավորություններից, մենք իրավունք ունենք նրանց ներկայացնելու ամենաբարձր պահանջները։ Գիտատեխնիկական առաջադիմության արագացման պրոբլեմների նկատմամբ նորովի մոտեցման բացակայությունը, ցավոք, զգացվում է հանրապետության շատ կուսակցական կոմիտեներում։

Գաղափարախոսական թույլ աշխատանքով, դաստիարակության գործում եղած թերացումներով, մարդկային գործոնի անբավարար ակտիվացումով է առավելապես բացատրվում այն, որ առանձին մինիստրություններում ու գերատեսչություններում, մի ամբողջ շարք աշխատավորական կոլեկտիվներում թույլ են տրվում պետական կարգապահության խախտումներ, ձախողվում են պլանները, դեռևս պակաս նախաձեռնություն և ստեղծագործական վերաբերմունք է դրսևորվում որակապես նոր խնդիրների լուծմանը, անթույլատրելիորեն դանդաղ են վերակառուցման տեմպերը, անհետևողականորեն են լուծվում գիտատեխնիկական առաջադիմության արագացման, արտադրանքի որակի, աշխատանքի արտադրողականության բարձրացման, փութաջան տնտեսավարման հարցերը, ինչի մասին մենք հանգամանորեն խոսեցինք Կենտկոմի այս տարվա հուլիսին կայացած պլենումում։

Հաստատակամորեն հաղթահարելով անբարենպաստ միտումները, էկոնոմիկան էքստենսիվ հիման վրա զարգացնելու՝ որոշ տեղերում տակավին իրեն զգալ տվող իներցիան, տնտեսավարման իրենց դարն ապրած մեթոդների վերապրուկները, կուսակցական կազմակերպություններն ու կոմիտեները պետք է հասնեն այն բանին, որ մշտապես պաշտպանեն նորացման ստեղծագործական իմպուլսը, որ վերակառուցումը գործարար բնույթ կրի։ Հմտորեն իրականացվող գաղափարախոսական աշխատանքով նրանք պետք է հասնեն այն բանին, որ բոլորը խորապես գիտակցեն, որ տնտեսական մեխանիզմի ամեն մի վերակառուցում սկսվում է գիտակցության վերակառուցումից, մտածողության ու պրակտիկայի ստերեոտիպների մերժումից, նոր խնդիրների հստակ ըմբռնումից։ Այն ամենը, ինչ հնացել է, ապրել իր դարը, պետք է վճռականորեն վերակառուցել։ Անհրաժեշտ է հասնել այն բանին, որ միշտ և ամենուրեք սովորեն մտածել նորովի, համարձակորեն ձեռնամուխ լինեն էկոնոմիկայի զարգացման կոնկրետ խնդիրների լուծմանը, էկոնոմիկան որակապես նոր մակարդակի բարձրացնելուն։

Պետք է խորապես ըմբռնել, որ ամեն գործի հաջողությունը մեծապես կախված է նրանից, թե աշխատավորները ինչ շահագրգռությամբ, որքան նախաձեռնողաբար, ստեղծագործաբար կմասնակցեն դրան։ Եթե նոր գաղափարները, պլանները, ծրագրերը համակեն մասսաներին, ապա նրանց հետ, ինչպես ասում են, կարելի է սարեր շուռ տալ։ Եվ, ընդհակառակը, մեր ցանկացած պլանը օդից կախված կմնա, եթե անհաղորդ թողնի մարդկանց։

Հասկանալի է, որ նոր խնդիրների լուծմանը չի կարելի մոտենալ հին չափանիշներով, անհնար է ժամանակակից սովետական մարդու գիտակցության ու վարքագծի վրա ներազդել իրենց դարն ապրած ձևերով ու մեթոդներով, ցուցամոլությամբ, չափազանցված պաթոսով, այս կամ այն լոկալ հաջողության առթիվ անզուսպ շաղակրատանքով։

Որպեսզի բարդ խնդիրների լուծումը դրվի պրակտիկ ռելսերի վրա, կուսակցական կազմակերպություններն ու կոմիտեները իրենց ջանքերը նախ և առաջ պետք է նպատակամղեն կադրերի գաղափարատեսական վերազինմանը՝ ժամանակի պահանջների ոգով։ Վերակառուցումը պետք է հիմնվի «աշխատել մարդկանց հետ» լենինյան սկզբունքի վրա։ Այսօր առանձնապես կարևոր է ձևավորել ժամանակակից խնդիրների բնույթի խոր ըմբռնում, գիտական կայուն աշխարհայացք, սկզբունքայնություն, բարձր կուլտուրա, գործի նկատմամբ պատասխանատու վերաբերմունք ուզածդ տեղամասում։ Եվ սրանում կոչված է շատ ակտիվ դեր խաղալու կոմունիստների, աշխատավորական լայն զանգվածների մարքս-լենինյան կրթության հա-



մակարգը, կուսակցության գաղափարախոսական աշխատանքի կարևորագույն բաղկացուցիչ մասը։

Շատ կարևոր է, որ մեր բոլոր մարդիկ խորապես տոգորվեն համագումարի գաղափարներով ու հիմնադրույթներով, որ յուրաքանչյուր աշխատավոր ըմբռնի ներկա պահի սրությունը, նրա բեկումնային բնույթը, որ մարդկանց լիապես հաղորդվեն համագումարի մատուցած ճշմարտության դասերը։

Հասարակության սոցիալ-քաղաքական մթնոլորտում տեղի ունեցած արմատական փոփոխությունների հաշվով էլ պետք է կառուցվի նաև ուսուցումը մարքս-լենինյան կրթության համակարգում։ Այն պետք է մշտապես նպատակամղվի պայքարելու աշխատանքի ու մտածողության հնացած մեթոդների, այն ամենի դեմ, ինչն արգելակում և դանդաղեցնում է մեր հասարակական զարգացումը։ Դրան պետք է նպատակամղվի նաև մեր դասախոսական պրոպագանդան։

Բայց դասախոսական պրոպագանդան կարող է նպաստել վերակառուցմանը լոկ այն դեպքում, եթե ինքն էլ վերակառուցվի, ձերբազատվի ձևականությունից, երբ անցկացված միջոցառումների փքուն թվերի վարագույրով սքողվում է կոնկրետ մարդու հետ մտածված, կենդանի դաստիարակչական աշխատանք կատարելու անկարողությունը կամ ցանկության բացակայությունը։

Վերցնենք, օրինակ, «Գիտելիք» հանրապետական ընկերության աշխատանքը (ընկերության նախագահի առաջին տեղակալ՝ ընկ. Լ. Քալաշյան)։ Ըստ հաշվետվության, ավելի քան 18 հազար դասախոսներ տարեկան կարդում են 130 հազար դասախոսություն, դասախոսական պրոպագանդան ընդգրկել է 1,5 միլիոն մարդ։ Իսկ իրականում ի՞նչ է պահված հաշվետվությունների այս ռեկորդային թվերի ետևում։ Մինչև վերջերս հանրապետության աշխատավորական կոլեկտիվների շուրջ 30 տոկոսը, հատկապես սակավաթիվ կոլեկտիվները, դուրս են մնացել դասախոսական պրոպագանդայի ոլորտից։ Տրանսպորտի, առևտրի, կենցաղսպասարկման կազմակերպություններում, այսինքն այնտեղ, ուր հատկապես զգացվում է դասախոսական աշխատանքի ուժեղացման սուր անհրաժեշտությունը, 2,5 անգամ քիչ դասախոսություններ են կարդացվել, քան մյուս աշխատավորական կոլեկտիվներում։ Համախառն ցուցանիշների ետևից ընկնելը հաճախ ծնել է նաև հավելագրումներ։

Հարկ եղած վերահսկողություն չի իրականացվում դասախոսական աշխատանքի թեմատիկ ուղղվածության նկատմամբ։ Դրա համար էլ այսօր մեր հասարակությանը հուզող բազմաթիվ կարևոր պրոբլեմներ՝ գիտատեխնիկական առաջադիմություն, բարոյական և իրավական դաստիարակություն, անաշխատ եկամուտների դեմ մղվող պայքար և այլն, հաճախ դուրս են մնում դասախոսական պրոպագանդայի ոլորտից։

Այս ամենը հետևանք է «Գիտելիք» հանրապետական վարչության ղեկավարության կողմից ընկերության, նրա տեղական կազմակերպությունների գործունեության արդյունքների ինքնաքննադատական վերլուծության բացակայության, աշխատանքում տեղ գտած սովոր ստերեոտիպները հաղթահարելու և ստեղծագործական մոտեցում հանդես բերելու անկարողության, կադրերի նկատմամբ թույլ պահանջկոտության ու զիջողության։

Լուրջ բարելավման կարիք է զգում նաև կուսակցության քաղկոմ-շրջկոմների դասախոսական խմբերի աշխատանքը։

Բնական է, հաջողությունը գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքում կախված է այն մարդկանց մակարդակից, ովքեր կոչված են կուսակցության գաղափարները հասցնել մասսաներին։ Ուստի և նրանց ընտրությունը պետք է կատարել ամենայն բծախնդրությամբ և ուշիմությամբ։

Այս կարևոր գործին պարտավոր են ամենայն ակտիվությամբ մասնակցել ղեկավար կադրերը։ Վ. Ի. Լենինը ընդգծել է, որ «անձնական ներգործությունը և ժողովներում ելույթ ունենալը քաղաքականության մեջ չափազանց շատ բան է նշանակում։ Առանց դրանց չկա քաղաքական գործունեություն և նույնիսկ բուն գրվածքը նվազ քաղաքական է դառնում»։

Ավելի քան երկու հազար ղեկավար աշխատողներ են մասնակցում միասնական քաղօրերին։ Բայց դեռևս կան այնպիսի ղեկավար աշխատողներ, այդ թվում և

կենտկոմի, որոնք ինքնամեկուսացել են աշխատավորական կոլեկտիվների հետ հանդիպելուց, քիչ են հանդես գալիս թերթերի ու ամսագրերի էջերում, հեռուստատեսությամբ և ռադիոյով:

Իհարկե, կարևորը քաղաքական-դաստիարակչական աշխատանքի մասնակիցների ոչ թե թիվն է, այլ այդ աշխատանքի տված արդյունքը, սոցիալական հատույցը: Կարևոր է, որ այդ աշխատանքը իրոք նպաստի նախատեսված նպատակների նվաճմանը, յուրաքանչյուր մարդու անխախտ համոզմունքը դարձնի այն պարզ ճշմարտությունը, որ արագացված առաջընթացի այլ ուղի, քան լարված ու անձնվեր աշխատանքը, պարզապես գոյություն չունի:

Կուսակցության կողմից ձեռնարկվող միջոցները, վերակառուցման փորձը այժմ լավ պայմաններ են ստեղծում ազնիվ, շիտակ, ճշմարտացի գործելու, լիակատար համոզվածությամբ մարդկանց մոտ գնալու համար: Ներկայումս մեր պրոպագանդայի համար լավ հիմք է ստեղծված:

Կուսակցական կոմիտեները պարտավոր են անել ամեն ինչ, որպեսզի դաստիարակչական ջանքերի կենտրոնը ամենուրեք փոխադրվի աշխատավորական կոլեկտիվ, ինչի մասին շատ է ասվել, սակայն վճռական քայլ դեռևս չի արված: Իսկ սա շատ անհրաժեշտ է, որովհետև հենց աշխատավորական կոլեկտիվներում է մղվում արագացման ստրատեգիայի իրագործման պայքարը, հասարակության հենց այդ սոցիալական բջիջներում է գլխավորապես ձևավորվում սովետական աշխատավորի անձը:

Անհապաղ լուծում է պահանջում ամենուրեք դաստիարակության մի այնպիսի բացառիկ կարևոր ձևի հաստատումը, ինչպիսին է անհատական աշխատանքը: Մեզ հարկավոր է ոչ թե առհասարակ պրոպագանդա, այլ նպատակամետ պրոպագանդա: Պետք է գնալ նրանց մոտ, ովքեր մեր կարիքն ունեն, ոչ թե չխմելու խրատ տալ չխմողներին, չհավատալու խրատ՝ ոչ հավատացյալներին: Յուրաքանչյուր կոլեկտիվում, բնակության վայրում պետք է որոշել, թե ում հետ և ով պետք է աշխատանք կատարի: Խոսքը վերաբերում է ոչ թե ձևական «կցմանը», այլ մշտական ուշադրությանը մարդու, նրա կենսագործունեության բոլոր կողմերի նկատմամբ:

Համակողմանի կատարելագործման կարիք ունեն քաղաքական-մասսայական աշխատանքը, դիտողական ագիտացիան, որը, կարծում ենք, պետք է ավելի շատ շեշտը դնի այնպիսի օպերատիվ ձևերի վրա, որոնք թույլ են տալիս անմիջականորեն դիմել կոնկրետ մարդուն:

Մտնում ես մեր այս կամ այն ձեռնարկության տարածքը և առաջին բանը, որ աչքի է զարնում, գերծանրաբեռնվածությունն է վիթխարի, հաճախ անճաշակ և թանկ արժեցող ստենդներով ու տրանսպարանտներով, իսկ ահա թռուցիկներ, պլակատներ, «կայծակներ», երգիծական թողարկումներ, «սուր ահազանգեր», «փոտոֆաստեր» չես տեսնի: Այդ էքսպրես-ինֆորմացիան հարկավոր է թե՛ որևէ մեծ հաջողության, ռեկորդի, պլանը ժամկետից շուտ կատարելու մասին հաղորդելու և թե վատ աշխատողներին, կարգապահությունը խախտողներին, խոտանարարներին դատապարտելու, սուր քննադատության ենթարկելու համար:

Անհրաժեշտ է հասնել սոցիալիստական մրցության տնտեսական ու գաղափարաբարոյական դերի բարձրացմանը, բոլոր մրցողների գիտակցությանը հասցնել, որ այսօր այլ կերպ է դրվում կոլեկտիվի և առանձին աշխատողների աշխատանքի գնահատման չափանիշների հարցը, որ այդպիսի վերագնահատումը թելադրված է ստեղծարար ծրագրի խնդիրների վեհությամբ:

Իրագործելով գաղափարախոսական աշխատանքի վերակառուցումը՝ պետք է հասնել այն բանին, որ պրոպագանդայի հզոր ուժը ամենուրեք և մշտապես ակտիվորեն նպաստի ստեղծարար խնդիրների լուծմանը: Վ. Ի. Լենինը, խոսելով խաղաղ շինարարության պայմաններում պրոպագանդայի խնդիրների մասին, նշել է, որ «...հարկավոր է գործնականորեն ցույց տալ, թե ինչպես պետք է կառուցել սոցիալիզմ: Ամբողջ պրոպագանդան պետք է կառուցվի տնտեսական շինարարության քաղաքական փորձի վրա»:

Ահա այն իմաստուն ցուցումը, որով պետք է իրենց գործունեության մեջ առաջնորդվեն կուսակցական կոմիտեներն ու կազմակերպությունները գաղափարախոսական ճակատի այդ կարևորագույն ուղղությունում:



## II.

Ընկերնե՛ր:

Հանրապետության կուսակցական կազմակերպության ամբողջ գաղափարաքաղաքական գործունեության մշտական առանցքային ուղղությունը եղել ու մնում է աշխատավորների ինտերնացիոնալ և հայրենասիրական դաստիարակությունը: Այսօր ավելի, քան երբևէ, հասարակական կյանքի ինտերնացիոնալացման պրոցեսը ընդգրկում ու թափանցում է մեր կենսագործունեության բոլոր ոլորտները:

Այդ ամբողջ աշխատանքի հիմնական բովանդակությունը, ինչպես միշտ, մեր մեծ հայրենիքի հանդեպ անսահման սիրո ու նվիրվածության, սոցիալիզմի նվաճումները պաշտպանելու և բազմապատկելու պատրաստակամության զգացման դաստիարակումն է, հանրապետության աշխատավորների ու երիտասարդության մեջ ինտերնացիոնալիստական գիտակցականության ու հոգեբանության դաստիարակումը, մեր միասնական սովետական ընտանիքի բոլոր ժողովուրդների նկատմամբ տածած բարեկամության ու եղբայրության զգացումներին հավատարմության դաստիարակումը:

Հայրենասիրական և ինտերնացիոնալ դաստիարակության հարցերը կենտրոնական տեղ են գրավում գաղափարախոսական ներգործության միջոցների՝ կուսակցական լուսավորության, դասախոսական պրոպագանդայի, մամուլի, ռադիոյի, հեռուստատեսության, կուլտուրայի հիմնարկների աշխատանքում: Կոնկրետ օրինակներով ՍՄԿԿ-ի և սովետական պետության ազգային քաղաքականության նպատակամետ պրոպագանդա է մղվում, որն ուղղված է ՍՄՀՄ-ում բնակվող բոլոր ազգերի և ազգությունների էկոնոմիկայի ու կուլտուրայի համակողմանի վերելքին:

Հանրապետությունում համերաշխորեն, եղբայրաբար ապրում և աշխատում են հայեր, ռուսներ, ադրբեջանցիներ, քրդեր, այլ ազգերի և ազգությունների ներկայացուցիչներ: Մեր հանրապետության ժողովուրդը, աշխատավորները խորապես դաստիարակված են ինտերնացիոնալիզմի և սովետական հայրենասիրության ոգով, որ դրսևորվում է թե՛ արտադրության մեջ և թե կենցաղում, մեր կենսագործունեության բոլոր ոլորտներում: Տեսեք, թե նրանք, սովետական բոլոր մարդկանց նման, ինչպես են անձնվիրաբար աշխատում ի բարօրություն հայրենիքի, ինչպես են եղբորը օգնում դժբախտության մեջ, ինչպես դա եղավ Չեռնոբիլի առիթով, թե նրանք ինչպես են կատարում իրենց ինտերնացիոնալ պարտքը Աֆղանստանում: Նրանք, ընկերներ, կոմունիստական կուսակցության կողմից դաստիարակված իսկական հայրենասերներ և ինտերնացիոնալիստներ են: Դա մեր ժամանակների օբյեկտիվ իրողություններից մեկն է: Եվ դա մեր մեծագույն նվաճումներից է:

Ինտերնացիոնալիզմը, ռուս մեծ ժողովրդի, մեր սոցիալիստական հայրենիքի բոլոր ժողովուրդների հանդեպ սիրո, հարգանքի ու եղբայրության զգացումն այսօր հայ ժողովրդի ամենաբնորոշ գծերն են, նրա մտածելակերպը, գաղափարաբարոյական էությունը:

Այս ֆոնի վրա ոչ մի կերպ չի կարելի հաշտվել այն բանի հետ, երբ որոշ մարդկանց կողմից, առանձին ստեղծագործություններում թույլ են տրվում ազգային սնապարծության, ներփակվածության, կեղծ հայրենասիրության, ազգային զգացմունքների չարաշահման դրսևորումներ: Նման, նույնիսկ եզակի դրսևորումները, ում կողմից էլ որ թույլ տրվեն, ինչ պատմուճան էլ որ հագնեն, բացարձակապես անընդունելի են, խորթ՝ մեր ժողովրդի, սովետական մարդու բուն էությանը, և պետք է անհապաղ ու վճռական հակահարված ստանան յուրաքանչյուր կոմունիստի, յուրաքանչյուր քաղաքացու, յուրաքանչյուր կուսակցական կազմակերպության ու կոմիտեի կողմից:

Մեր ժողովրդի ուժը ինտերնացիոնալիզմն է, սովետական ժողովուրդների հետ եղբայրական բարեկամությունը: Եվ նա խորապես գիտակցում է, որ մեր հանրապետության բոլոր պատմական նվաճումները, դեպի սոցիալ-տնտեսական ու կուլտուրական զարգացման գագաթները նրա խոյանքը հնարավոր չէին լինի առանց սովետների երկրի եղբայր ժողովուրդների բարեկամության ու փոխօգնության:

Սոցիալիստական ազգերի և ազգությունների հետագա բարգավաճումն ու մեր-



2. «Լենինյան ուղիով», № 11, 1986 թ.



ձեցումը մեր կուսակցության ծրագրային նպատակն է: Կուսակցական կազմակերպությունները ու կոմիտեները պետք է այսուհետև էլ անդուլ աշխատեն, որպեսզի մեր մարդկանց հայրենասիրությունը միշտ օրգանապես միաձուլվի ինտերնացիոնալիզմի հետ, որ ամեն մարդու ներհատուկ լինեն ազգամիջյան հաղորդակցման բարձր կուլտուրան, անհաշտ վերաբերմունքը նացիոնալիզմի ու շովինիզմի, ազգային սահմանափակվածության ու ազգային եսամոլության ամեն կարգի դրսևորումների, կյանքի ու մարդու կոմունիստական նորացմանը խանգարող սովորույթների ու բարքերի նկատմամբ:

Կուսակցական կոմիտեները կադրային աշխատանքը միշտ պետք է տանեն՝ հաշվի առնելով հանրապետության բնակչության բազմազգ կազմը, հատուկ ուշադրություն նվիրեն մեզանում ապրող բոլոր ազգերի ու ազգությունների համապատասխան ներկայացուցչության ապահովմանը կուսակցական, սովետական, տնտեսական մարմիններում, հասարակական կազմակերպություններում:

Անհրաժեշտ է գաղափարախոսական աշխատանքը այսուհետև էլ մշտապես նպատակամղել այն բանին, որ դաստիարակության պրոցեսում հայրենասիրական և ինտերնացիոնալիստական համոզմունքներն ու զգացմունքները դառնան բարոյական ու հոգեբանական նորմ, որոշեն հանրապետությունում ապրող և աշխատող յուրաքանչյուր մարդու ամենօրյա վարքագիծը:

Այդ աշխատանքը իրականացնելիս հարկավոր է ավելի ակտիվորեն օգտագործել դրական օրինակի ուժը:

Բուրժուական պրոպագանդան ջանք չի խնայում, որպեսզի սեպ խրի ՍՍՀՄ ժողովուրդների միջև, սասանի մեր միասնությունը, բորբոքի ազգայնամոլական տրամադրություններ, սոցիալիստական ինտերնացիոնալիզմին հակադրի բուրժուական նացիոնալիզմը, զանազան հակասոցիալիստական կոնցեպցիաներ: Դա մեզ պարտավորեցնում է այսուհետև էլ հետևողական և անզիջում պայքար մղել բուրժուական գաղափարախոսության դեմ, մերկացնել հակակոմունիզմի գաղափարախոսական դիվերսիաները, սովետական ապրելակերպի, մեր ազգամիջյան հարաբերությունների հասցեին արվող զրպարտությունը:

Պետք է ակտիվորեն ու հետևողականորեն մերկացնել դաշնակցության գաղափարախոսության հետադիմական էությունը, նրա պարագլուխների հակաժողովրդական քաղաքականությունը, արկածախնդրությունը, հակասովետիզմը, վճռական հակահարված տալ նրանց հերյուրանքներին Սովետական Հայաստանի, մեր մեծ հայրենիքի հասցեին:

Անհրաժեշտ է ապահովել մեր ամբողջ հակապրոպագանդայի հարձակողականության և օպերատիվության բարձրացումը:

Հարկավոր է ուժեղացնել արտասահմանի համար նախատեսված հրապարակումների ու ռադիոհաղորդումների ներգործունությունը, բարձրացնել դրանց ինֆորմացիոն-պրոպագանդիստական արդյունավետությունը:

Պետք է վերակառուցել նաև սփյուռքահայության հետ մշակութային կապի կոմիտեի աշխատանքը (ընկ. Կ. Դալլաքյան): Անհրաժեշտ է բարձրացնել պահանջկոտությունը կադրերի նկատմամբ, զարգացնել նրանց ստեղծագործական նախաձեռնությունը, մշտապես հոգալ նրանց գաղափարատեսական մակարդակի բարձրացման մասին: Կոմիտեն պետք է ակտիվացնի իր աշխատանքը, ուսումնասիրի և լավ իմանա տարբեր երկրների հայ համայնքների կյանքը, ուժեղացնի հայկական առաջադիմական կազմակերպություններին ցույց տրվող օգնությունը նրանց հայրենասիրական ձեռնարկումներում, հետադեմ շրջանների դեմ մղվող պայքարում, բարելավի արտասահման մեկնող գեղարվեստական կոլեկտիվների, կուլտուրայի և գիտության աշխատողների խմբերի որակական կազմը: Սփյուռքահայության հետ մշակութային կապերն ու կոնտակտները իրականացնելիս, ինչպես նաև հանրապետության բուհերում ուսանելու համար ուսանողներ ընտրելիս պետք է մշտապես հաշվի առնել սփյուռքում եղած դասակարգային տարբերությունները:

Լուրջ թերություններ կան նաև օտարերկրացի տուրիստների հետ տարվող աշխատանքում: Հանրապետության արտասահմանյան տուրիզմի գլխավոր վարչությունը պետք է արմատապես բարելավի իր աշխատանքը: Չի կարելի հաշտվել այն բանի հետ, որ հանրապետությունում օտարերկրացի տուրիստների գտնվելու ծրագրերը



կողմնորոշված են ամենից առաջ հին հուշարձաններին ծանոթանալուն, որ «Ինտուրիստի» տեղեկատու-ինֆորմացիոն նյութերում անբավարար են արտացոլված հանրապետության ժամանակակից կյանքը, մեր ժողովրդի նվաճումները:

Անցած տարի կապիտալիստական երկրների տուրիստների համար կազմակերպված էքսկուրսիաների սոսկ փոքր մասն է ընդգրկել ժամանակակից օբյեկտներ: Պատմահեղափոխական թանգարաններն ու հուշարձանները, արդյունաբերական ձեռնարկությունները, կոլտնտեսություններն ու սովխոզները, ուսումնական հաստատությունները, դպրոցական հիմնարկները՝ այն ամենը, ինչ բնորոշում է հանրապետության այսօրը, մեծ մասամբ մնում են օտարերկրյա տուրիզմի կազմակերպիչների ուշադրության շրջանակներից դուրս:

Դրան պետք է ավելացնել, որ «Ինտուրիստում» փաստորեն ծախողված է էքսկուրսավարների քաղուսուցումը, իսկ նրանց հետ տարվող գաղափարախոսական, քաղդաստիարակչական աշխատանքի հաստատված ծրագիրը ձևական բնույթ է կրում:

Արտասահմանյան տուրիզմի գլխավոր վարչության ղեկավարությունը (ընկ. Հ. Լիլոյան), կուսակցական կազմակերպությունը հաշտվում են տարբեր ստորաբաժանումներում տեղ գտած թերությունների հետ, խուսափում կոնկրետ, անհատապես քննադատել նրանց, ովքեր ինչպես հարկն է չեն կատարում իրենց պարտականությունները, թույլ են տալիս խախտումներ:

Արդի պահանջների ոգով պետք է վերակառուցվի նաև արտասահմանյան երկրների հետ բարեկամության ու մշակութային կապի հայկական ընկերության աշխատանքը (ընկ. Ն. Հակոբյան):

Պետք է բարելավել նաև հայրենիք վերադարձած մեր հանրապետության նոր քաղաքացիների հետ տարվող աշխատանքը: Գաղտնիք չէ, որ նոր կենսապայմաններին այդ քաղաքացիների որոշ մասի ընտելացումն ընթանում է դժվար, երբեմն հիվանդագին, նրանցից ոմանք դրսևորում են անառողջ տրամադրություններ, մեր երկրից մեկնելու ցանկություն: Հայրենադարձության պրոցեսի անընդհատությունը պահանջում է բարելավել դրա կազմակերպումը: Անհրաժեշտ է անդուլ կերպով քաղդաստիարակչական աշխատանք տանել մեր երկրի նոր քաղաքացիների հետ, մշտապես հոգալ նրանց սոցիալ-կենցաղային կարիքների մասին: Իսկ արտասահմանից վերադարձող հայերի ընդունման ու տեղավորման կոմիտեում (ընկ. Հ. Ազատյան), կուսակցության մի շարք քաղկոմներում ու շրջկոմներում, սովետական և կոմերիտական մարմիններում թույլ է դրված ինֆորմացիան նրանց կարիքների, աշխատանքի ու կենցաղի պայմանների մասին, բավարար դաստիարակչական աշխատանք չի տարվում նրանց շրջանում: Պետք է վճռականորեն վերացնել այդ թերությունները, բարձրացնել համապատասխան աշխատողների պատասխանատվությունն այդ գործում:

Կենտկոմի ինֆորմացիայի և արտասահմանյան կապերի բաժինը (ընկ. Ա. Ստեփանյան) պետք է բարձրացնի պահանջկոտությունը վերը նշված կազմակերպությունների նկատմամբ, օպերատիվորեն լուծի դրանց գործունեությանը առնչվող հարցերը, օգնի ավելի ակտիվորեն վերակառուցելու այն:

Հայաստանի կոմկուսի Կենտկոմի անցած տարվա հունվարին տեղի ունեցած պլենումում խստապահանջ, քննադատական խոսակցություն գնաց աթեիստական պրոպագանդայի բարելավման անհրաժեշտության մասին: Անցած ժամանակաշրջանում որոշակի աշխատանք, իհարկե, կատարված է: Բայց գաղափարախոսական գործունեության այդ կարևոր բնագավառում որակական տեղաշարժեր դեռ չկան: Աթեիստական պրոպագանդան ու դաստիարակությունը լուրջ բարելավում են պահանջում: Պատմական թեմայով որոշ հրապարակումներում, առանձին գրքերում չափազանցվում է եկեղեցու դերը հայ ժողովրդի պատմական ճակատագրում, ինչը չի նպաստում աթեիստական աշխարհայացքի ձևավորմանը: Ուսումնասիրությունները ցույց են տվել, որ այսօր էլ ամեն կուսակցական կոմիտեում և կազմակերպությունում չէ, որ հստակ պատկերացում ունեն կրոնական իրադրության մասին և դրանից ելնելով, անհրաժեշտ միջոցներ են ձեռնարկում:

Այսպես, կուսակցության Կիրովականի քաղկոմում (քարտուղար՝ ընկ. Հ. Օհանյան) գտնում են, որ քաղաքում 120 հավատացյալներ կան, այնինչ միայն հոգեգա-

լըստյանների ի դեպ չգրանցված աղանդը միավորում է գրեթե 200 մարդ: Իսկ քաղաքային սովետի գործկոմում (նախագահ՝ ընկ. Լ. Խաչատրյան), որի՝ իբրև տեղական իշխանության անմիջական իրավասության մեջ է գտնվում այդ հարցը, դա էլ չգիտեն: Աշխատավորների աթեիստական դաստիարակության աշխատանքում էական թերություններ կան նաև Արտաշատի, Հոկտեմբերյանի, Ամասիայի, Մեղրու և մի քանի այլ շրջաններում: Վերը նշված կուսկոմիտեների ղեկավարներ ընկ. ընկ. Կ. Հովհաննիսյանը, Ա. Վարդանյանը, Ի. Բաղիրովը, Ա. Հարությունյանը և շրջսովետների գործկոմների նախագահներ ընկ. ընկ. Վ. Ասատրյանը, Մ. Վարդանյանը, Մ. Հակոբյանը, Ժ. Սարգսյանը պետք է ամենալուրջ հետևություններն անեն և վերակառուցեն աշխատանքը:

Հարկավոր է աթեիստական աշխատանքը կազմակերպել բնակչության զանազան կատեգորիաների ու տարիքային խմբերի նկատմամբ տարբերակված մոտեցման հիման վրա: Հատուկ ուշադրություն պետք է նվիրվի անհատական դաստիարակությանը: Անհրաժեշտ է լիովին հաշվի առնել հանրապետության ազգաբնակչության մեջ տարբեր դավանանքների առկայությունը, նպատակ ունենալով էապես բարելավել ամբողջ բնակչության աթեիստական դաստիարակության կազմակերպումը:

Պետք է ապահովվել աթեիստական պրոպագանդայի հարձակողականությունը, ավելի ակտիվորեն արմատավորել նոր սոցիալիստական տոներն ու ծեսերը:

Ընկերնե՛ր: Մեծ է հասարակական գիտությունների դերը մասսաների գիտական աշխարհայացքի ձևավորման գործում: Եվ պետք է ասել, որ մեր հասարակական գիտությունը ամբողջությամբ վերցրած հաջող է կատարում իր այդ դերը, մշտապես զարգանալով հասել է ծանրակշիռ արդյունքների: Բայց ժամանակը առաջադրում է պրակտիկայի կոնկրետ կարիքներին հասարակական գիտության լայն անդրադարձի հարցը, պահանջում է, որ հասարակագետ գիտնականները զգայուն արձագանքեն կյանքում տեղի ունեցող փոփոխություններին, իրենց տեսադաշտում պահեն նոր երևույթները, անեն այնպիսի հետևություններ, որոնք կարողանան ճիշտ կողմնորոշել պրակտիկան:

«Այսօր հասարակագետների առջև դրված է կյանքի պահանջներից եղած հեռավորության հաղթահարման խնդիրը,— ասաց ընկ. Մ. Ս. Գորբաչովը հասարակական գիտությունների ամբիոնների վարիչների համամիութենական խորհրդակցությունում:— Մեզ կենսականորեն անհրաժեշտ է հասարագիտության ամբողջ ճակատի վճռական շրջադարձ՝ դեմքով դեպի պրակտիկան»:

ՍՄԿԿ XXVII համագումարի պահանջների լույսի ներքո քննադատաբար դիտելով կատարված աշխատանքը, հարկ կա նշել, որ հասարակագիտությունը դանդաղ է վերակառուցվում, այն առաջվա պես ընդհանուր առմամբ գտնվում է կյանքի պահանջմունքներից հայտնապես հեռու վիճակում:

Հայկական ՍՍՀ գիտությունների ակադեմիայի առանձին ինստիտուտներում և բուհերի հասարակական գիտությունների որոշ ամբիոններում դեռևս ձևական մոտեցում է ցուցաբերվում գիտահետազոտական աշխատանքների պլանավորմանը, ծանրակշիռ տեղ չի հատկացվում մարքս-լենինյան տեսության, նոր մարդու ձևավորման, նրա կոմունիստական դաստիարակության պրոբլեմների մշակմանը: Մի շարք գիտական հիմնարկներում և հասարակական գիտությունների ամբիոններում գերակշռում է պատմական թեմատիկան, այնինչ հանրապետության սոցիալական և հոգևոր կյանքի հրատապ շատ հարցեր տարիներ շարունակ գիտական հետազոտության, գործնական հանձնարարականների մշակման կարիք են զգում: Անբավարար ուշադրություն է նվիրվում սոցիալիստական ապրելակերպի հարցերին, գյուղի սոցիալական երևույթներին, հասարակական կարծիքի ձևավորմանը, կրոնի պատմաքննադատական վերլուծությանը, բուրժուական գաղափարախոսության, մեր հակառակորդների կոնցեպցիաների քննադատությանը:

Իսպառ չի վերացվել մանրաթեմայնությունը: Արդի պահանջներին չի համապատասխանում մի շարք հետազոտությունների տեսական մակարդակը, դրանցում հաճախ չկան նոր դրույթներ ու հետևություններ, գործնական հանձնարարականներ և հիմնավորված կանխատեսումներ: Հասարակագետների աշխատություններում հա-



ճախ զգացվում է նոր գաղափարների, նոր մոտեցումների, համարձակ հարցադրումների պակաս:

Առանձին գիտաշխատողներ մեթոդաբանական թույլ պատրաստվածության պատճառով խորապես ու բազմակողմանիորեն չեն քննում թեման, միշտ չէ, որ հանդես են բերում խիստ գիտական, դասակարգային մոտեցում: Այս սկզբունքները չկիրառելը հասցնում է սխալների, չհիմնավորված եզրակացությունների, որոնք հաճախ աղավաղում են գիտության կողմից արդեն սահմանված կոնցեպցիաները: Եվ մտահոգություն է պատճառում այն, որ գաղափարապես խոցելի աշխատությունները ոչ միշտ են սկզբունքային քննադատության ենթարկվում գիտական պարբերականներում, գիտական հիմնարկների կոլեկտիվներում: Այստեղ հաճախ պասիվ դիրք են գրավում նաև այդ հիմնարկների կուսակցական կազմակերպությունները: Դա չի նպաստում ոչ ճիշտ հայացքների իսպառ վերացմանը: Դա է թերությունների հարատևման, այն բանի պատճառներից մեկը, որ առանձին հեղինակներ չեն հրաժարվում ոչ գիտական դիրքերից գրված, հում աշխատությունները հրապարակելու փորձերից:

Սա մեկ անգամ ևս ապացուցում է, որ կուսակցական կոմիտեները և կազմակերպությունները անհրաժեշտաբար պետք է բարելավեն յուրաքանչյուր գիտաշխատողի գաղափարաքաղաքական կոփման, նրա մեթոդաբանական զինվածության բարձրացման աշխատանքը:

Յուրաքանչյուր գիտական կոլեկտիվում, մանավանդ հասարակագիտական կոլեկտիվում ստեղծելով ստեղծագործական որոնման և ընկերական բանավեճերի մթնոլորտ, անհրաժեշտ է մտքի նորությունն ու ճկունությունը մշտապես զուգակցել դասակարգային դիրքերի հստակության, աշխարհայացքային և մեթոդաբանական սկզբունքայնության հետ:

Հանրապետության գիտությունների ակադեմիայի ղեկավարությունը (ընկ. ընկ. Վ. Համբարձումյան, Գ. Գալոյան), Երևանի պետական համալսարանի (ընկ. Ս. Համբարձումյան), հանրապետության մյուս բուհերի ռեկտորատները, կուսակցական կազմակերպությունները պետք է ինստիտուտների դիրեկտորներից և ամբիոնների վարիչներից ավելի խիստ պատասխան պահանջեն կատարվող հետազոտությունների գաղափարական մակարդակի և որակի համար, ամենալուրջ ուշադրություն դարձնեն հասարակագետների պատրաստմանն ու դաստիարակությանը:

Անհրաժեշտ է բարձրացնել գիտական և ստեղծագործական պրոբլեմների ու հարցերի քննարկման արդյունավետությունն ու կուլտուրան: Բանավեճերն ու քննարկումները պետք է այնպես անցկացնել, որ դրանք ապահովեն գիտելիքների իսկական աճ և լուրջ հանձնարարականների մշակում և ոչ թե վերածվեն վիճաբանողների ամբիցիաները բավարարող պարապ խոսարանների․ Պետք է լրիվ բացառել նաև հրատապ և սուր կենսական պրոբլեմների քննարկման փոխարինումը կեղծ գիտական բանավեճերով, իսկ խոշոր տեսական հարցերինը՝ սխոլաստիկ, իրականությունից կտրված իմաստակություններով:

Քննադատությանը, քննադատական հրապարակումներին պետք է ներհատուկ լինեն կուսակցական սկզբունքայնությունը, գիտական բարձր չափանիշները, օբյեկտիվությունն ու պահանջկոտությունը, որոնք բացառեն խմբակային ու անձնական հաշիվներ մաքրելու բոլոր փորձերը, ճաշակամոլությունն ու սուբյեկտիվիստական հակումները, պիտակներ փակցնելը:

Թերթեցեք հանրապետության լրագրերն ու հանդեսները և դրանցում համարյա չեք գտնի հրապարակված գիտական աշխատությունների խորիմաստ, սկզբունքային գրախոսականներ: Որպես կանոն, դրանք անոտացիայի բնույթ են կրում, լռության են մատնում թերություններն ու սխալները, իսկ եթե դրանց մասին խոսվում էլ է, ապա, որպես կանոն, թռուցիկ, մակերեսորեն: Սակավ չեն նաև այն դեպքերը, երբ չհաջողված գիրքը գովաբանվում է, համարվում արժեքավոր հետազոտություն: Դա ոչ միայն գրախոսների անբարեխղճության, այլև հենց մամուլի օրգանների անխտրականության, ցածր պահանջկոտության դրսևորումն է:

Կատարելագործում են պահանջում հասարակական գիտությունների դասավանդման դրվածքը, ձևերն ու մեթոդները: Ինչպես նշվեց համամիութենական խորհրդակցությունում, «տարրական ճշմարտություններում» այնպիսի դեղատոմսեր

գտնելու հակումը, որոնք պիտանի լինեն կյանքի բոլոր դեպքերի համար, ծնունդ է առնում պարզունակությունից, ոչ թե մտքի ստեղծագործական աշխատանքից, այլ ընդհանուր դրույթների անմիտ սերտման ելակետից:

Անհրաժեշտ է նոր ձևով կառուցել ուսուցման և դաստիարակության պրոցեսը: Ամենից առաջ խոսքը վերաբերում է ստեղծագործական մոտեցմանը, հասարակական գիտությունների դասավանդման դոգմատիկ մեթոդներն ու մեթոդիկաները կտրականապես մերժելու անհրաժեշտությանը: Պետք է նախապատրաստել նոր դասախոսություններ, նորացնել դասագրքերը:

Այսօր չի գոհացնում հասարակական գիտությունների դասավանդման մակարդակը Հայաստանի ֆիզկուլտուրայի պետական ինստիտուտում (ռեկտոր՝ ընկ. Հ. Թոփալյան, կուսկոմիտեի քարտուղար՝ ընկ. Գ. Ազիզյան), Երևանի անասնաբուծական-անասնաբուժական ինստիտուտում (ռեկտոր՝ ընկ. Մ. Մելքոնյան, կուսկոմիտեի քարտուղար՝ ընկ. Ռ. Քամալյան), Խ. Աբովյանի անվան հայկական մանկավարժական ինստիտուտում (ռեկտոր՝ ընկ. Լ. Վալեսյան, կուսկոմիտեի քարտուղար՝ ընկ. Ռ. Ծահինյան), Կ. Մարքսի անվան պոլիտեխնիկական ինստիտուտի Լենինականի ու Կիրովականի մասնաճյուղերում (դիրեկտորներ՝ ընկ. ընկ. Ս. Մարկոսյան, Դ. Սահակյան, կուսկոմիտեների քարտուղարներ՝ ընկ. ընկ. Ա. Պետրոսյան, Լ. Ջիլավյան):

Համապատասխան կուսակցական կոմիտեները պետք է այդ գործում բարձրացնեն պահանջկոտությունը բուհերի ղեկավարության նկատմամբ, մշտապես հիշելով, որ ապագա մասնագետների գաղափարաքաղաքական բարձր պատրաստվածության, աշխարհայեցողական ճիշտ կողմնորոշման, ակտիվ քաղաքացիական դիրքավորման ապահովումը ամենակարևոր խնդիրներից մեկն է:

Մեր հասարակագետների խնդիրն է ակտիվորեն ընդհանրացնել մասսաների սոցիալական փորձը, խորապես բացահայտել վերակառուցման անհետաձգելի, հեղափոխական բնույթը, ապահովել գիտական հետազոտությունների վճռական շրջադարձ դեպի պրակտիկայի պահանջմունքները, ստեղծել այնպիսի աշխատություններ, որոնք կադրերին օգնեն զարգացնել նորովի մտածելու և գործելու կարողությունը:

Պետք է հատուկ ուշադրություն նվիրվի փիլիսոփայության և գիտական կոմունիզմի բնագավառում կատարվող հետազոտությունների և գիտական աշխատանքի արդյունավետության ու որակի հետագա բարձրացմանը:

Հասարակական գիտությունների գործունեության կարևորագույն ուղղությունը մասսաների կոմունիստական դաստիարակության աշխատանքին ակտիվորեն մասնակցելն է: Գիտությունը կոչված է նպաստելու մարդու աշխարհայացքի, բարոյական հատկանիշների ձևավորման, աշխատանքի նկատմամբ գիտակցական վերաբերմունքի, ինքնակարգապահության, պատասխանատվության զգացման, կոլեկտիվիզմի աճին: Հարկավոր է ըստ ամենայնի հաստատել սովետական հայրենասիրության և սոցիալիստական ինտերնացիոնալիզմի վեհ գաղափարները, սոցիալիզմի սոցիալական ու բարոյական սկզբունքները, հարձակողական պայքար մղել քաղքենիության մերօրյա տարատեսակների ու հոգևոր աղքատության, խնամառուականության և սպառողականության դեմ:

Էկոնոմիկայի վերակառուցումը, տնտեսական մեխանիզմի արմատական ռեֆորմը, կառավարման կատարելագործումը տնտեսագիտության խոր զարգացում են պահանջում: Պետք է խորապես բացահայտել տնտեսական ու սոցիալական գործոնների փոխադարձ կապը, ժողովրդական տնտեսության վերակառուցման, աշխատանքի արտադրողականության բարձրացման, ռեսուրսախնայման, արտադրանքի որակի բարելավման, սոցիալական, կառուցվածքային, ինվեստիցիոն, գիտատեխնիկական, ագրարային նոր քաղաքականության իրականացման ուղիները:

Մեր հասարակագետները պետք է համակողմանիորեն լուսաբանեն ամբողջական, ուժեղ սոցիալական քաղաքականության, սոցիալական ոլորտի նկատմամբ նոր մոտեցումների ակտիվացման գաղափարները, նյութական ու հոգևոր կյանքի բարելավման ուղիներն ու միջոցները, սոցիալիզմի օրոք սոցիալական արդարության սկզբունքի էությունն ու բնույթը:

Մեր կուսակցական կազմակերպության անցած հերոսական ուղու, նրա պայքա-



րի ու աշխատանքի հարուստ փորձի, եղբայրական կուսակցությունների հետ բեղմնավոր, գործարար ինտերնացիոնալիստական կապերի, ՍՄԿԿ XXVII համագումարի պահանջների լույսի ներքո հանրապետության սոցիալ-տնտեսական զարգացման, արդի փուլում քաղաքական, գաղափարախոսական աշխատանքի հրատապ պրոբլեմներն ու պրոցեսներն ուսումնասիրելու և խորապես իմաստավորելու ուղղությամբ լուրջ անելիքներ ունի ՀԿԿ Կենտկոմի կուսակցության պատմության ինստիտուտի կոլեկտիվը:

Այժմ դպրոցական ռեֆորմի մասին:

Ռեֆորմի գաղափարների լայն պրոպագանդումից, դրա իրականացման ուղղությամբ կատարված որոշակի քայլերից հետո կուսակցական, սովետական, տնտեսական մարմինների աշխատանքի ակտիվությունը պակասել է: Ամենուրեք չէ, որ ապահոված են պատշաճ կոմպլեքսայնություն, սիստեմայնություն և նպատակասլացություն ռեֆորմի պահանջների կատարման գործում: Չի ապահովվել նաև այդ պահանջներին համապատասխանող վերակառուցումը ժողովրդական կրթության մարմինների, դպրոցների և պրոֆտեխուսումնարանների մանկավարժական կոլեկտիվների, բազային ձեռնարկությունների աշխատանքում: Նրանք շարունակում են աշխատել հին ձևով:

Դպրոցական ռեֆորմի իրականացման թույլ ընթացքը նշանակալի չափով բացատրվում է հանրապետության լուսավորության մինիստրության, պրոֆտեխկրթության պետկոմիտեի, ժողովրդական կրթության տեղական մարմինների աշխատանքի ոճի ու մեթոդների դանդաղ վերակառուցումով: Լուսավորության մինիստրությունը դեռևս չի դարձել ռեֆորմի անցկացման իսկական շտաբ, չի ստեղծել հանձնարարված գործի համար կադրերի նկատմամբ բարձր պահանջկոտության, թերությունների նկատմամբ անհանդուրժողության մթնոլորտ, հարկ եղած միջոցները չի ձեռնարկում մանկավարժների որակավորման բարձրացման, նրանց ատեստավորման, մանկավարժական գիտությունների գիտահետազոտական ինստիտուտի, ուսուցիչների կատարելագործման ինստիտուտի աշխատանքի արդյունավետության խթանման համար:

Աշակերտների և սովորողների գաղափարաքաղաքական դաստիարակության աշխատանքը գնահատելով ՍՄԿԿ XXVII համագումարի պահանջների լույսի ներքո՝ պետք է նշել, որ դաստիարակչական աշխատանքը անբավարար է նպատակամղված արժույթային կողմնորոշիչների, բարոյական անբասիր վարքի, սպառողական հոգեբանության մերժման ձևավորմանը: Մեծապես դրանով է բացատրվում այն հանգամանքը, որ հանրապետության դպրոցների 1.700 շրջանավարտներ (4,6 տոկոսը) չեն աշխատում ու չեն սովորում: Իսկ Կալինինոյի, Եղեգնաձորի, Արթիկի, Ստեփանավանի, Արտաշատի շրջաններում նրանց թիվը հասնում է 15—20 տոկոսի: Պրոֆտեխկրթության ուսումնարաններն ավարտողներից շատերը չեն աշխատում ըստ ստացած մասնագիտության:

Առանձնահատուկ ուշադրություն պետք է նվիրվի հումանիտար առարկաների դասավանդման մակարդակի, դրա արդյունավետության բարձրացմանը՝ սովորողների մեջ բարձր քաղաքացիականության, հայրենասիրության, ինտերնացիոնալիզմի, ՍՍՀՄ ժողովուրդների բարեկամության զգացումներ ձևավորելու, հասարակական երևույթների, պատմական իրադարձությունների նկատմամբ դասակարգային մոտեցում ձևավորելու գործում:

Անհրաժեշտ է ըստ ամենայնի բարելավել հումանիտար առարկաների դասագրքերի գիտական մակարդակն ու գաղափարաքաղաքական բովանդակությունը, ապահովել դրանց մեթոդաբանական հստակությունը, բարձրացնել այդ գործում դասագրքերի հեղինակների ու դրանք կազմողների պատասխանատվությունը:

Այս մասին խոսվում է նաև այն պատճառով, որ առանձին դասագրքերում, մեթոդական ձեռնարկներում թույլ են տրված հեղինակների սուբյեկտիվ հայացքների ներթափանցման փաստեր, մեթոդաբանական սխալներ, որոնք վնաս են հասցնում մեր երեխաների դաստիարակությանը: Դա հետևանք է այն բանի, որ լուսավորության մինիստր ընկ. Ս. Հախումյանը, մինիստրության կոլեգիան խորամուխ չեն լինում, թե ինչ են հաստատում, անպատասխանատու վերաբերմունք են դրսևորում այդ կարևոր գործում:

Թեև դրական տեղաշարժեր կան ռուսաց լեզվի դասավանդումը բարելավելու աշխատանքում, բայց շատ դպրոցներում, պրոֆտեխուսումնարաններում և տեխնիկումներում դրա դասավանդման մակարդակը այնուամենայնիվ դեռևս չի համապատասխանում դպրոցական ռեֆորմի պահանջներին: Որոշ, առանձնապես գյուղական ուսումնական հաստատություններում, ցածր է ուսուցման արդյունավետությունը, պատշաճ ուշադրություն չի նվիրվում ուսումնական պրոցեսի ինտենսիվացմանը և դրա գործնական ուղղվածության ուժեղացմանը:

Անհրաժեշտ է շրջկոմներում, քաղկոմներում քննության առնել հանրակրթական ու պրոֆեսիոնալ դպրոցի ռեֆորմի իրականացման ընթացքը և լրացուցիչ միջոցառումներ մշակել կուսակցության XXVII համագումարի, ՍՄԿԿ Կենտկոմի 1986 թվականի հունիսյան պլենումի հիմնադրույթների լույսի ներքո այդ աշխատանքը վճռականորեն բարելավելու համար:

ՀԼԿԵՄ Կենտկոմը պետք է հատուկ ուշադրություն նվիրի սովորողների հասարակական և աշխատանքային ակտիվության հետագա զարգացմանը, դպրոցների և պրոֆտեխուսումնարանների կոմերիտական կազմակերպությունների աշխատանքում ստեղծագործական հիմունքների զարգացմանը, ուսման և աշխատանքի արդյունքների համար դպրոցականների մեջ պատասխանատվության դաստիարակմանը, ինչպես նաև արտադրական կոմերիտական կազմակերպությունների կողմից դպրոցներին, պրոֆտեխուսումնարաններին, նրանց հասարակական կազմակերպություններին ցույց տրվող օգնության զգալի ուժեղացմանը:

Անհետաձգելի խնդիր է բարձրագույն ու միջնակարգ մասնագիտական կրթության վերակառուցումը: Խոսքը վերաբերում է կադրերի պատրաստման համակարգի արմատական վերակառուցմանը, որի ընթացքում պետք է հասնել մասնագետների պրոֆեսիոնալ և ընդհանուր աշխարհայացքային պատրաստման արմատական բարելավմանը: Բարձրագույն ու միջնակարգ մասնագիտական կրթության մինիստրությունը (ընկ. Լ. Ղարիբջանյան), ճյուղային մինիստրություններն ու գերատեսչությունները, բուհերի և տեխնիկումների ռեկտորները, դիրեկտորները, կուսակցական կազմակերպությունները պետք է արդեն այս ուսումնական տարում աշխատանք ծավալեն «Երկրում բարձրագույն ու միջնակարգ մասնագիտական կրթության վերակառուցման հիմնական ուղղությունների» իրացման համար:

Հայաստանի կոմկուսի Կենտկոմի գիտության և ուսումնական հաստատությունների բաժինը (ընկ. Ա. Մելքոնյան) պատշաճ վերահսկողություն չի ապահովել լուսավորության մինիստրության, պրոֆտեխկրթության պետական կոմիտեի, բարձրագույն ու միջնակարգ մասնագիտական կրթության մինիստրության աշխատանքի վերակառուցման ընթացքի նկատմամբ, չի հասել այն բանին, որ դպրոցական ռեֆորմի հարցերի առթիվ Կենտկոմի ընդունած որոշումները կատարվեն լրիվ և սահմանված ժամկետներում:

Կուսակցության քաղկոմները, շրջկոմները, սկզբնական կուսակցական կազմակերպությունները պետք է հասնեն այն բանին, որ կուսակցության որոշումների շնորհիվ առաջացած նորարարության ու ստեղծագործական շիկացման ոգին տոգորի ուսումնական հաստատությունների կոլեկտիվներին, նրանց նպատակամղի դեպի վերակառուցում, ամբողջ ժողովրդական տնտեսության կատարելագործում:

## III.

Ընկերնե՛ր: Հետհամագումարյան ժամանակաշրջանում հանրապետական մամուլը և հեռուստատեսությունը ակտիվացրել են իրենց գործունեությունը: Նրանց ելույթներում հիմա ավելի շատ են նպատակասլացությունը, կյանքի երևույթների ռեալիստական գնահատականը:

Սակայն անհրաժեշտ է կայուն ու տևական հիմքի վրա մասսայական ինֆորմացիայի միջոցների աշխատանքը բարձրացնել որակապես նոր մակարդակի: Նրանք պետք է զարգացող հասարակական մտքի, մասսաների սոցիալական փորձի ընդհանրացման ամբիոն լինեն, պաշտպանեն վերակառուցման ընթացքում ծնունդ առնող ամեն նորը, առաջավորը, անհաշտ կերպով հանդես գան քարացածության ու



ինամոլության, իրենց դարն ապրած պատկերացումների, նախապաշարումների դեմ և այլն: Նրանք պարտավոր են վառ ու համոզիչ կերպով ցույց տալ լենինյան գաղափարների ամբողջ հարստությունն ու անանց նշանակությունը, արդիականության հետ դրանց սերտ կապը, ըստ ամենայնի նպաստել քաղաքական, կազմակերպչական, տնտեսական և գաղափարադաստիարակչական գործունեության մեջ նոր մտածողության, ժամանակի պահանջներին համապատասխանող նոր մոտեցումների զարգացմանը:

Պետք է վճռականորեն ազատվել նյութերի մատուցման գորշությունից ու շաբլոնից, առանձին ծայրահեղություններից, որոնք դեռևս տեղ են գտնում թերթերի էջերում, հեռուստատեսության և ռադիոյի հաղորդումներում:

Նկատվում է հետևյալը: Լուսաբանելով վերակառուցման և արագացման մեր ժամանակի գլխավոր կոչերի իրականացման ընթացքը, թե՛ «Սովետական Հայաստան» ու «Կոմունիստ» թերթերը, թե՛ հեռուստատեսությունն ու ռադիոն խորապես և համակողմանի չեն վերլուծում նոր պրոցեսները, արագացման ու վերակառուցման փորձը, երբեմն պլանների սոսկ գերակատարումը, առանձին հաջողություններ պարզունակորեն մատուցում են որպես արագացման արգասիք: Պետք է ուրախանալ յուրաքանչյուր հաջողության համար, բայց վերակառուցումը հանգեցնել միայն դրան չի կարելի, ճիշտ չէ: Այո՛, արագացումը և վերակառուցումը իրոք կհասցնեն հաջողության, բայց ամեն գերակատարում ու հաջողություն դեռևս վերակառուցում չէ: Վերակառուցումը խոր պրոցես է, և պետք է դրա լուսաբանմանը մոտենալ լրջորեն, խելամտորեն, պրոբլեմը արծարծել բազմակողմանիորեն:

Ասվածը հաշվի առնելով ընկ. ընկ. Է. Մանուկյանը, Բ. Մկրտչյանը, Զ. Կուրբանովը, Մ. Մատոյանը, Ս. Պողոսյանը, Մ. Խաչատրյանը պետք է վերակառուցեն հանրապետական թերթերի, հեռուստատեսության և ռադիոյի, Արմենպրեսի խմբագրությունների աշխատանքը, վերացնեն թերությունները:

Մեզ հուզում են շրջանային թերթերը: Դրանք հեռու են տեղական կյանքի ամբիոն, հրապարակայնության ամբիոն դառնալուց: Նրանց էջերում հազվադեպ են երևում քննադատական հոդվածներ, մանավանդ ղեկավար աշխատողների հասցեին, մինչդեռ տեղական կուսակցական, սովետական, տնտեսական մարմինների գործունեության մեջ կան լուրջ թերություններ: Առանձնապես թերանում են «Անի» (խմբագիր՝ Լ. Մելիքյան), Գորիսի շրջանի «Զանգեզուր» (խմբագիր՝ Ս. Ղազարյան), Ամասիայի շրջանի «Աշխատանք» (խմբագիր՝ Կ. Ասկյարով), Կրասնոսելսկի շրջանի «Բարեկամություն» (խմբագիր՝ Գ. Գյուլումյան) թերթերը:

Մյուս կողմից, անհրաժեշտ է ավելի խստորեն հաշիվ պահանջել նրանցից, ովքեր փորձում են լռության մատնել մամուլի քննադատական ելույթները, դիմել խուսագրություններին: Հրազդանի, Ազիզբեկովի, Արագածի, Մասիսի և մի շարք այլ կուսակցական կոմիտեներ, հանրապետության պետագրոարդը, պետմատը, թեթև արդյունաբերության մինիստրությունը ժամանակին չեն պատասխանում մամուլի, հեռուստատեսության ու ռադիոյի քննադատությանը:

Իսկ բնակչության կենցաղային սպասարկման մինիստր Ս. Թումանյանը «Կոմունիստ» թերթի խմբագրության ուղարկած պատասխանի մեջ փորձում է արդարացնել վարսավիրանոցների կոմբինատի դիրեկտորի գործունեությունը, որն իրավացիորեն քննադատվել էր՝ խմբագրությանը մեղադրելով միտումնավորության մեջ: Մինիստրը ճիշտ վերաբերմունք չի հանդես բերել նաև հեռուստատեսության նկատմամբ: Նա ոչ միայն հրաժարվել է մասնակցել հաղորդմանը, պատասխանել հեռուստադիտողների հարցերին և նրանց պարզաբանել կենցաղային սպասարկման բոլոր ծառայությունների կենտրոնացման իմաստը, այլև հարկ չի համարել պատասխանել հեռուստատեսության կողմից մինիստրություն ուղարկված քննադատական նյութերին:

Մենք, ընկերներ, միշտ ասել ենք և այսօր էլ կրկնում ենք, որ դեմ ենք հախուռն, դեստրուկտիվ քննադատությանը, բայց երբ քննադատությունը ազնիվ է, ճշմարտացի, կոնստրուկտիվ, ապա այն պետք է ըստ ամենայնի պաշտպանել: Վատի մասին, ասել է Լենինը, պետք է գրել ցասումով: Այսուհետև էլ պետք է հրապարակավ խոսել բոլոր թերությունների մասին, բացահայտել կյանքի ստվերոտ կողմերը: Եվ բոլոր ընկերները, առաջին հերթին ղեկավար աշխատողները պետք է

ձգտեն վերացնել թերությունները և ոչ թե աշխատեն թերթերի էջերից և հեռուստացույցի էկրանից վերացնել քննադատական նյութերը: Այդպիսի վերաբերմունքի համար շատ խիստ հաշիվ կպահանջվի:

Կուսակցական, սովետական, հասարակական կազմակերպությունները, թերթերի ու ամսագրերի, հեռուստատեսության ու ռադիոյի խմբագրությունները պետք է ըստ ամենայնի զարգացնեն մարդկանց ստեղծագործական ակտիվությունը, է՛լ ավելի բարձրացնեն թերությունների քննադատության մակարդակը, չշրջանցեն թույլ աշխատանքի կոնկրետ մեղավորներին, վճռականորեն պաշտպանեն նորը, առաջավորը, ավելի խոր ուսումնասիրեն վերակառուցման փորձը, ավելի լրիվ ցույց տան դրականն այդ պրոցեսում:

Լուրջ թերություններ կան մեր գրահրատարակչական գործում: Պետք է բարձրացնել տպագրվող գրականության գաղափարական, տեսական ու գեղարվեստական մակարդակը, քաղաքական նպատակասլացությունը, կասեցնել ցածրորակ ստեղծագործություններ տպագրելու փորձերը: Անհրաժեշտ է հրատարակչությունների կոլեկտիվներում, նրանց կուսակցական կազմակերպություններում ստեղծել թերությունների նկատմամբ խստապահանջության, գաղափարական ու գեղարվեստական խոտանի նկատմամբ անհանդուրժողության մթնոլորտ: Եթե իսկապես ստեղծվի այդպիսի մթնոլորտ, իսկ դա սկզբնական կուսկազմակերպությունների առաջնահերթ գործն է, խոտան կամ սխալ պարունակող ոչ մի գիրք լույս չի տեսնի:

Հանրապետության հրատպետկոմը (ընկ. Գ. Մուղնեցյան) պետք է ուժեղացնի հրատարակչությունների թեմատիկ պլանավորման վերահսկողությունը:

Հրատարակչական պլանների կազմավորման նկատմամբ հարկ եղած պահանջկոտության բացակայության հետևանքով հաճախ տպագրվում են գրքեր, որոնք աչքի չեն ընկնում թեմայի հրատապությամբ: Իրենց պրոբլեմատիկայով դրանք լավագույն դեպքում հազիվ տեղավորվում են սովորական ամսագրային հոդվածների շրջանակներում:

Քննադատության չի դիմանում նաև թարգմանական գրականության հրատարակման գոյություն ունեցող պրակտիկան: Հրատպետկոմը երկար ժամանակ չի կարողանում լուծել թարգմանական գրականության տպագրման հեռանկարային պլաններ կազմելու հարցը: Դրա հետևանքով հրատարակչական պլանների թարգմանական բաժինները կազմավորվում են ոչ բավականաչափ մտածված, հաճախ ելնելով հրատարակչությունների ֆինանսական շահերից միայն, իսկ երբեմն էլ՝ հենց թարգմանիչների ճաշակից ու հակումներից:

Հրատպետկոմի կոլեգիան և կուսակցական կազմակերպությունը պետք է լուրջ հետևություններ անեն քննադատությունից և եռանդագին շտկեն գործերը:

Հրատարակվող ստեղծագործությունների ընտրությունը և դրանց գաղափարաքաղաքական բովանդակության համար պատասխանատվությունը դրված են մամուլի օրգանների, ռադիոյի ու հեռուստատեսության, մշակույթի ու արվեստի հիմնարկների ղեկավարների վրա: Եվ նրանք պետք է կուսակցական սկզբունքայնություն հանդես բերեն այս գործում, կանխեն թույլ, ցածր մակարդակի նյութերի լույս ընծայումը:

Մասսայական ինֆորմացիայի և պրոպագանդայի օրգաններում գաղափարախոսական քաղդաստիարակչական աշխատանքների վերակառուցման խնդիրները պահանջում են, որպեսզի ՀԿԿ Կենտկոմի պրոպագանդայի և ագիտացիայի բաժինը (ընկ. Գ. Ասատրյան) վերանայի կազմակերպությունների հետ տարվող աշխատանքի ոճը, բարձրացնի պահանջկոտությունը ղեկավար կադրերի նկատմամբ, հետևողականություն հանդես բերի կուսակցության Կենտկոմի պահանջները մինչև վերջ իրականացնելու հարցում:

Ընկերնե՛ր: Երկրի սոցիալ-տնտեսական զարգացումն արագացնելու կուսակցության կուրսը, մշակութային շինարարության բնագավառում ՍՄԿԿ XXVII համագումարի առաջադրած ծրագրային նպատակները պահանջում են որակապես նոր մոտեցում հանդես բերել գեղարվեստական պրոցեսի նկատմամբ: Դրանք լայն ասպարեզ են բացում գրականության ու արվեստի գործիչների առջև: Իրենց հզոր ազդեցության ամբողջ ուժով ծառայել կուսակցության ու ժողովրդի գործին, զգալ իրենց անձնվեր մասնակցությունը հասարակության սոցիալ-տնտեսական կյանքի նորաց-



մանը, մարդկանց դաստիարակել որպես ազնիվ, ուժեղ անհատների, որոնք ընդունակ լինեն կրելու իրենց ժամանակի ողջ բեռը՝ ահա գրողների, նկարիչների, կոմպոզիտորների, կինեմատոգրաֆիստների, գրականության և արվեստի բոլոր գործիչների վսեմ պարտքը:

Բուն ժամանակն է պահանջում ստեղծել հասարակական-քաղաքական մեծ հնչողության և գեղագիտորեն նշանակալի այնպիսի խոշորամասշտաբ ստեղծագործություններ, որոնք պատկերեն վերակառուցումը, նորի պայքարը հնի դեմ, առաջին պլան բերեն վսեմ քաղաքացիականությամբ օժտված, սոցիալապես ակտիվ հերոսի կերպարը, որը պայքար է մղում գաղափարաբարոյական վեհ իդեալների հաստատման համար:

Ծավալված վերակառուցումը շատ պատասխանատու սոցիալական պատվեր է տալիս մեր արվեստագետներին, և նրանք պետք է անդուլ աշխատեն, որպեսզի կատարեն այդ պատվերը: Հասարակության առաջընթաց շարժման, նրա բարոյական առողջության համար կարևոր է, որ բացասական երևույթների քննադատությունը, իր ողջ սրությամբ հանդերձ, ստեղծարար, կոնստրուկտիվ բնույթ կրի, տոգորված լինի սոցիալական լավատեսությամբ:

Մեր գրականության և արվեստի զարգացման բոլոր փուլերում մշակույթի գործիչների համար ուժի և ոգեշնչման աղբյուր է եղել անդրադարձը ռուս մեծ ժողովրդի, մեր երկրի բոլոր ժողովուրդների հետ բարեկամության ու եղբայրության թեմային: Այդ բարի ավանդույթը անհրաժեշտ է խորացնել ու զարգացնել, ստեղծել այնպիսի գործեր, որոնք ակտիվորեն նպատակամիտված լինեն աշխատավորության, մատաղ սերնդի մեջ հայրենասիրության, ինտերնացիոնալիստական վսեմ համոզմունքների և զգացմունքների ձևավորմանը:

Մեր գեղարվեստական մշակույթի զարգացման, մարդկանց դաստիարակության շահերը թելադրում են խստապահանջ, բարձր չափանիշներով գնահատել բոլոր ստեղծված երկերը: Վառ, տաղանդավոր գործերը, որոնք համընդհանուր և արժանի ճանաչում են ստացել, չպետք է սքողեն գեղարվեստական խոտանը, սոցիալական տեսակետից պասսիվ, նվազ արտահայտիչ, իսկ երբեմն էլ բացահայտ անորակ գրքերի, ներկայացումների, ֆիլմերի, գեղանկարչական գործերի առկայությունը, որոնց մեջ ժամանակակից կյանքը ներկայացվում է սխեմատիկ, միակողմանի, չեն արծարծվում խոշոր սոցիալական կարևորության պրոբլեմներ: Ավելին, առանձին գեղարվեստական ստեղծագործություններում, բեմադրություններում թույլ են տրվում մեր իրականության ոչ ճիշտ արտացոլման, պատմական անցյալի առանձին իրադարձությունների և գործիչների նկատմամբ սխալ մոտեցման փաստեր: Երբեմն տեղ է գտնում ավելորդ դրամատիզացում, իդեալականացվում են որոշ անհատներ, որոնք քիչ թե շատ նշանակալից պատմական դեր չեն խաղացել, չափազանցվում են աննշան արժեքներ:

Մեր ստեղծագործական միությունները, նրանց կուսակցական կազմակերպությունները չպետք է անցնեն այդպիսի փաստերի կողքով, անսկզբունքայնություն թույլ տան պատմականորեն անհավաստի, գաղափարախոսական առումով թերի ստեղծագործությունները գնահատելիս: Դա վնասում է թե՛ արվեստագետին և թե մարդկանց մեջ իսկական հայրենասիրության, ազգային հպարտության ճիշտ դաստիարակմանը:

Գրականության ու արվեստի գործիչների առջև ծառացած կարևոր, պատասխանատու խնդիրները հանրապետության կուլտուրայի մինիստրությունից, պետկինոյից, ստեղծագործական միություններից, նրանց կուսակցական կազմակերպություններից պահանջում են նոր մոտեցումներ գեղարվեստական պրոցեսի կառավարմանը: Անհրաժեշտ է վճռականորեն ձերբազատվել խրատականությունից, այն ամեն քարացածից ու լճացածից, ինչն առաջացել է ղեկավարման բյուրոկրատական մեթոդների հետևանքով, կաշկանդում է ստեղծագործական աշխատողների նախաձեռնությունը, խանգարում մեր արվեստի գաղափարագեղագիտական պոտենցիալի լիակատար դրսևորմանը:

Աշխատանքի խոտելի, կաբինետային ոճ էր հաստատվել հանրապետության կուլտուրայի մինիստրությունում, որի ապարատի շատ աշխատողներ կտրվել էին ստեղծագործական կոլեկտիվներից:

Մինիստրության կուսակցական ժողովներում (կուսբյուրոյի քարտուղար՝ ընկ. Լ. Հակոբյան) չեն անցկացվել հասունացած պրոբլեմների շահագրգիռ քննարկումներ, չեն արվել գործարար առաջարկություններ, չի հնչել քննադատության ձայնը:

Վերցնենք կուլտուրայի մինիստրության գործունեության թեկուզ այն կողմը, որ վերաբերում է թատերական կոլեկտիվների ղեկավարմանը: Վերջիններիս գործունեությունը ուղղություն չէր ստանում մինիստրության կողմից, նրանք մնում էին իրենք իրենց հոգսերի հետ: Բարձիթողի էր արվել խաղացանկային քաղաքականությունը:

Կուլտուրայի մինիստրությունը ինչպես հարկն է չի վերահսկել նույնիսկ իր ընդունած պիեսների բեմադրության իրականացումը: Մինիստրության խաղացանկային-խմբագրական կոլեգիան վերջին չորս տարում ձեռք է բերել 260 պիես, իսկ թատրոնների խաղացանկերում ընդգրկվել է դրանցից միայն 107-ը: Մինիստրությունը քիչ միջոցներ չի ծախսել պիեսների թարգմանության վրա, որոնց գրեթե կեսը ամենևին չի բեմադրվել: Իսկ ովքե՞ր են եղել թարգմանիչները: Պարզվում է՝ հաճախ հենց մինիստրության աշխատողները: Ինչպես ասում են՝ մեկնաբանություններն այստեղ ավելորդ են:

Օրերս Հայաստանի կոմկուսի Կենտկոմը քննարկեց Գ. Սունդուկյանի անվան պետական ակադեմիական դրամատիկական թատրոնի՝ հանրապետության թատերական արվեստի դրոշակակիրը լինելու կոչված այդ կոլեկտիվի աշխատանքի հարցը: Ի հայտ բերվեցին գեղարվեստական, ստեղծագործական, դաստիարակչական և կազմակերպական բնույթի լուրջ թերություններ: Չեն լուծվել գեղարվեստական կոլեկտիվի կյանքին ու գործունեությանը վերաբերող ամենահրատապ հարցերը, օգնություն ցույց չի տրվել կոլեկտիվին: Բարոյահոգեբանական առողջ մթնոլորտի բացակայությունը այստեղ հանգեցրել է թատրոնի ստեղծագործական լճացման:

Իսկ կուլտուրայի մինիստրությունը և առաջին հերթին մինիստրի առաջին տեղակալ ընկ. Մ. Խարազյանը, որը տնօրինում է թատրոնի բնագավառը, հաշտվել են նման վիճակի հետ, պատշաճ հետևություններ չեն արել կուսակցության Կենտրոնական կոմիտեի քննադատությունից:

Կուլտուրայի մինիստր ընկ. Յու. Մելիք-Օհանջանյանը պետք է ամենաեռանդուն միջոցները ձեռնարկի մինիստրության գործունեությունը կուսակցության XXVII համագումարի պահանջների լույսի ներքո արմատապես վերակառուցելու համար:

Էական բարելավում է պահանջում նաև հանրապետության պետկինոյի աշխատանքը:

Հայաստանի կոմկուսի Կենտկոմի բյուրոն, վերջերս քննարկելով բնակչության կինոսպասարկման աշխատանքը, նշեց, որ կոմիտեն, կինոպրոկատի հանրապետական գրասենյակը ինչպես հարկն է չեն վերահսկում ֆիլմացանկի կազմավորումը, վատ են կոորդինացնում կինոպրոկատի և կինոցանցի տեղական բաժանմունքների աշխատանքը: Դրա հետևանքով մի շարք բաժանմունքներում կատարվել են զանազան չարաշահումներ, հավելագրումներ, ֆինանսական խախտումներ, հաշվետվության խեղաթյուրումներ, ցուցադրվել են գաղափարագեղարվեստական արժեքից զուրկ արտասահմանյան ֆիլմեր: Լուրջ թերություններ են տեղ գտել կադրերի ընտրության, տեղաբաշխման և դաստիարակության գործում:

Այս ամենի համար Հայկական ՍՍՀ պետկինոյի նախագահ ընկ. Ռ. Սամսոնովը և կինոպրոկատի հանրապետական գրասենյակի դիրեկտոր ընկ. Ա. Դավթյանը ստացել են կուսակցական տույժեր: Վերջինս ազատվել է զբաղեցրած պաշտոնից: Այս մասին հաղորդվել է մամուլում: Կուսակցական պատասխանատվության է ենթարկվել նաև նախագահի տեղակալ ընկ. Զ. Ավագյանը: Կինոպրոկատի և կինոցանցի գործունեության ղեկավարման գործում լուրջ թերությունների, չարաշահումների, հավելագրումների և հաշվետվության խեղաթյուրումների փաստերը չկանխելու համար նրան հայտարարվել է խիստ նկատողություն՝ գրանցելով հաշվառման քարտում:

Հայաստանի կոմկուսի Կենտկոմի կուլտուրայի բաժինը պետք է բարձրացնի պահանջկոտությունը հանրապետության կուլտուրայի մինիստրության և պետկինոյի



նկատմամբ, հասնի նրանց գործունեության վերակառուցմանը, ապարատների կուսակցական կազմակերպությունների մարտունակության բարձրացմանը:

Անհրաժեշտ է կատարելագործել հանրապետության ստեղծագործական միությունների և ընկերությունների աշխատանքի ոճը, ձևերն ու մեթոդները:

Պետք է ասել, ընկերներ, որ նրանք դեռևս ակտիվորեն չեն վերակառուցվում: Գեղարվեստական պրոցեսում տեղ գտած այն թերությունները, որոնց մասին խոսվեց վերը, մեծապես պայմանավորված են նրանց աշխատանքի նպատակասլացության պակասով:

Ստեղծագործական միությունների ու ընկերությունների ղեկավարները (ընկ. ընկ. Վ. Պետրոսյան, Ս. Մուրադյան, Էդ. Միրզոյան, Կ. Քալանթար, Հ. Ղափլանյան, Է. Ծատուրյան) և կուսակցական կազմակերպությունները պարտավոր են այդտեղ ստեղծել սկզբունքային քննադատության, թերությունների նկատմամբ խստապահանջության մթնոլորտ, իսպառ հրաժարվել բարեհոգությունից, հաճոյաբանությունից, ստեղծագործությունները գնահատել ըստ իրենց գեղարվեստական և գաղափարական արժանիքների, հասնել այն բանին, որ ստեղծագործական միությունները դառնան գեղարվեստական պրոցեսի կազմակերպման ու կառավարման իսկական կենտրոններ, ստեղծագործական մտավորականության և հատկապես երիտասարդների մասնագիտական աճի օջախներ: Նրանք պարտավոր են մշտապես հոգ տանել մեր գրականության և արվեստի յուրաքանչյուր գործչի գաղափարաքաղաքական կոփման մասին: Այս հարցերում նրանց պետք է գործնական օգնություն ցույց տան կուսակցության քաղկոմ-շրջկոմները, ՀԿԿ Կենտկոմի բաժինները:

Անհրաժեշտ է ամենուրեք, և հատկապես գյուղական վայրերում, արմատապես բարելավել կուլտուր-լուսավորական հիմնարկների աշխատանքը:

Այս հարցը վերջին տարիներս բազմիցս արծարծվել է պլենումներում, կուսակցական ակտիվի ժողովներում, դարձել հատուկ քննարկման առարկա: Սակայն շոշափելի դրական տեղաշարժեր առայժմ չկան: Կուլտուր-լուսավորական շատ հիմնարկներ առաջվա պես գտնվում են բարձիթողի վիճակում: Ցածր է ակումբային հիմնարկներում կատարվող աշխատանքի մակարդակը: Մտածողության իներտությունը, ակումբային աշխատանքի վառ, արտահայտիչ, մարդկանց, հատկապես երիտասարդությանը գրավող ձևեր որոնելու պասսիվությունը, ստեղծագործական մոտեցման բացակայությունը, ակումբների ու մշակույթի պալատների շատ ղեկավարների և աշխատողների անտնտեսվարությունը խանգարում են դրանք դարձնելու հանգստի կազմակերպման և դաստիարակության գործուն օղակներ:

Մի շարք կուսշրջկոմներ և շրջսովետների գործկոմներ անպատասխանատվություն են թույլ տալիս ՀԿԿ Կենտկոմի ու հանրապետության Մինիստրների խորհրդի այն որոշումների կատարման գործում, որոնք վերաբերում են կուլտուրայի հիմնարկների աշխատանքի բարելավմանը, նրանց նյութատեխնիկական բազայի ամրապնդմանը: Դա անթույլատրելի է: Կենտկոմի քարտուղար ընկ. Ռ. Արզումանյանը, կառավարության նախագահի տեղակալ ընկ. Ս. Ավետիսյանը պետք է անձնական վերահսկողություն հաստատեն այդ որոշումների կատարման նկատմամբ և շտկեն վիճակը: Նրանք պետք է հատուկ ուշադրություն նվիրեն նաև կուլտուրայի ոլորտի օբյեկտների շինարարությանը:

## IV.

Ընկերնե՛ր:

Սովետական մարդու բարձր գաղափարայնությունն անբաժանելի է բարձր բարոյականությունից, ազնվությունից, խղճմտությունից, օրինավորությունից: Բնավ չի կարելի թուլացնել ուշադրությունը բարոյական դաստիարակության հարցերի նկատմամբ, անտարբեր վերաբերվել գաղափարաբարոյական առաքինությունների՝ որոշ մարդկանց գիտակցության մեջ տեղի ունեցած արժեզրկմանը: Այսօր կարևորագույն խնդիր է սոցիալիստական բարոյականության նորմերից ու սկզբունքներից կատարվող ամեն տեսակ շեղումների նկատմամբ անհաշտ վերաբերմունքի մթնոլորտի ստեղծումը անխտիր բոլոր աշխատավորական կոլեկտիվներում:

Չէ՞ որ վերակառուցումը նաև անհաշտ պայքար է այն ամենի դեմ, ինչը հակասում է սովետական ապրելակերպին, սնուցող միջավայր ստեղծում սոցիալիստական կարգերին խորթ հայացքների ու տրամադրությունների համար, ինչը անբարո է, չարիք է ծնում: Դա պայքար է ընդդեմ իրենց դարն ապրած, պահպանողական հայացքների, քարացած սովորույթների, մանրբուրժուական հոգեբանության ամեն դրսևորման, շահախնդրության, ընչաքաղցության, գռփողականության, անաշխատ եկամուտների, ընդդեմ հարմարվողական, սպառողական փիլիսոփայության, պայքար է հանուն ճշմարտության, հանուն բարու հաղթանակի: Ահա թե ինչու այն ամենը, ինչ արժանի է պատժի, չպետք է անպատիժ մնա, այն, ինչ հակաբարոյական է, պետք է դատապարտվի:

Հարկավոր է, որ մենք արմատապես բարելավենք մարդկանց բարոյական դաստիարակությունը, անխնա պայքար մղենք սոցիալիստական բարոյականության սկզբունքների խախտումների դեմ:

Բացասական երևույթների դեմ մեր մղած պայքարը, ուղղակի ասենք, միշտ և ամենուրեք չէ, որ ունեցել է պատշաճ սրություն, հաստատակամություն, անզիջողություն: Դեռևս ամենուրեք չէ, որ անհանդուրժողության մթնոլորտ է ստեղծված սոցիալիստական հասարակությանը խորթ երևույթների նկատմամբ: Սրա հիմնական պատճառը առանձին կոլեկտիվներում առայժմ տիրող հասարակական պասիվությունն է, անսկզբունքայնությունն ու անտարբերությունը, հաշտվողական վերաբերմունքն այն անձանց նկատմամբ, ովքեր ապրում են անաշխատ միջոցներով, իրենց վարքագծով, ապրելակերպով մարտահրավեր են նետում ազնիվ աշխատավորներին: Չէ՞ որ այդ գործամոլները, խարդախները, կաշառակերները, ժողովրդական բարիքը հափշտակողները գործում են ոչ թե անօդ տարածության մեջ, այլ ձեռնարկություններում, տնտեսություններում, հիմնարկներում, հաճախ նույնիսկ՝ բացեիբաց, լկտի: Եվ այդպես են գործում այնտեղ, ուր տիրում են «լռության» մթնոլորտը, կողմնակի դիտողի դիրքորոշումը: Ակտիվացնելով գաղափարաբարոյական դաստիարակության գործը՝ կուսակցական կազմակերպությունները պետք է վճռականորեն փոխեն նման մթնոլորտը, ամենքին ոտքի հանեն բացասական երևույթներն արմատախիլ անելու համար:

Բարոյական և իրավական դաստիարակությունն ուժեղացնելու հետ մեկտեղ պետք է այդ չարիքի դեմ օգտագործել վարչական ներգործության ողջ ուժը: Մինչդեռ իրավապահպան մարմինների աշխատանքի արդյունավետությունը դեռևս ցածր է, իսկ որոշակի ուղղություններում էլ այսօր մեզ չի բավարարում:

Ներքին գործերի, դատախազության, դատարանի քաղաքային ու շրջանային շատ մարմիններ դեռևս աշխատում են առանց հարկ եղած լարման, պասիվություն, հանդուրժողություն են հանդես բերում հակահասարակական երևույթների դեմ պայքարում, պետության շահերի և քաղաքացիների իրավունքների դեմ կատարվող ոտնձգությունները կասեցնելու գործում: Մեծանում է միլիցիայի աշխատանքի թերությունների վերաբերյալ քաղաքացիներից ստացվող գանգատների թիվը, որոնց մի մասը հաստատվում է: Իսկ կուսակցական կոմիտեները հանդուրժում են այդ վիճակը, ինչպես հարկն է պատասխան չեն պահանջում:

Իրավապահպան մարմինները դեռևս ակտիվ և հարձակողական պայքար չեն մղում սոցիալիստական սեփականության պահպանության համար: Բավական է ասել, որ փչանալու, պակասորդի և հափշտակումների պատճառով հանրապետության ժողովրդական տնտեսությանը պատճառված վնասը վերջին տարիներս ավելացել է:

Հաճախ, մինչ ժողովրդական բարիքի խոշոր հափշտակողները շարունակում են իրենց սև գործը, իրավապահպան մարմինները, հատկապես ԲԽՍՍ բաժինները հայտնաբերում են հասարակական լուրջ վտանգ չներկայացնող փոքրանշանակ փաստեր և գրանցում դրանք՝ հաշվետվության բարձր ցուցանիշներ ունենալու և «բուռն գործունեության» պատրանք ստեղծելու համար:

Ո՞ւմ հասկանալի չէ, որ գործի նկատմամբ այդպիսի անլուրջ, իսկ երբեմն անպատասխանատու մոտեցումը հարվածում է իրավապահպան մարմինների հեղինակությանը:

Օրինակ, ինչո՞ւ ժողովուրդը տեսնում է, իսկ մեր իրավապահպան մարմինները



չեն նկատում տասնյակ, նույնիսկ հարյուր հազարավոր ռուբլիներ գնահատվող առանձին հսկա շինություններ, չեն պարզում, թե դրանք ինչ միջոցներով են կառուցվել: Կամ թե՝ ինչո՞ւ ժողովուրդը գիտե, խոսում է իրենց հակասոցիալական վարքագծով հայտնի դարձած, հատուկ մականուններ ունեցող, զարտուղի միջոցներով ապրող սուբյեկտների մասին, իսկ իրավապահպան մարմինները չգիտեն ու չեն լսել նրանց մասին:

Առաջներում նրանք հաճախ արդարանում էին, թե իբր գիտենք, բայց գործ չենք կարող հարուցել՝ բացահայտ հանցանշաններ չկան: Բայց չէ որ հիմա նրանք զինված են անաշխատ եկամուտների մասին օրենքով: Ուրեմն ինչո՞ւ այդ օրենքը ակտիվորեն չեն կիրառում:

Կենտկոմը իրավապահպան մարմինների ղեկավարներից՝ ընկ. ընկ. Ս. Օսիպյանից, Հ. Ծահինյանից, Ա. Գևորգյանից, Ա. Դանդայանից պահանջում է ամենաեռանդուն ու գործուն միջոցներ ձեռնարկել՝ ակտիվացնելու պայքարը կաշառակերության, հափշտակումների, պաշտոնեական դիրքի չարաշահումների և մյուս բացասական երևույթների դեմ, անշեղորեն իրագործել անաշխատ եկամուտների դեմ պայքարի կուսակցության հիմնադրույթները:

Մյուս կողմից, անհրաժեշտ է բարձրացնել մինիստրությունների ու գերատեսչությունների, ձեռնարկությունների ու կազմակերպությունների ղեկավարներին ներկայացվող պահանջկոտությունը սոցիալիստական սեփականության պահպանության վիճակի համար: Նրանք հաճախ չեն կատարում իրավապահպան մարմինների միջնորդագրերը, և նրանցից ոչ ոք պատասխանատվության չի ենթարկվում:

Կատարելագործման կարիք է զգում նաև հանրապետության Գերագույն դատարանի աշխատանքը: Այստեղ քաշքշուկ է թույլ տրվում քաղաքացիական գործերը քննելիս:

Նվազ արդյունավետ են ներքին գործերի մարմինների ձեռնարկած միջոցները՝ ուղղված պորտաբուծության վերացմանը: Բացահայտորեն անբավարար է միլիցիայի վերահսկողությունը այն անձանց նկատմամբ, ովքեր պաշտոնապես զգուշացված են դադարեցնելու մակաբույծ կյանքը: Այդ պորտաբույծների գրեթե կեսը ծաղկուն հասակի (18—29 տարեկան), ողջ ու առողջ երիտասարդներ են, որոնց վեցից մեկը բարձրագույն կամ միջնակարգ-մասնագիտական կրթություն ունի: Ծնողների վզին նստած, հանրօգուտ աշխատանքի չմասնակցելով, նրանք երբեմն այլասերվում են որպես անձնավորություններ, համալրում սոցիալիստական համակեցության նորմերը խախտողների կամ էլ հանցագործների շարքերը: Կոմերիտմիությունը պետք է ուժեղացնի իր դաստիարակչական ներգործությունը այդ կատեգորիայի երիտասարդների վրա և տեղական սովետների, ներքին գործերի մարմինների հետ համատեղ անհրաժեշտ ամեն ինչ անի նրանց արտադրության մեջ ներգրավելու, հասարակական կյանքին նրանց մասնակցությունն ակտիվացնելու համար: Ի դեպ, ազատ աշխատանքային ռեսուրսների օգտագործման մասին: Շատ շրջաններում դանդաղ են իրականացվում ՀԿԿ Կենտկոմի և Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհրդի՝ այդ ուղղությամբ մշակած միջոցառումները: Տեղական կուսակցական, սովետական և տնտեսական մարմինները պետք է այս հարցին առանձնահատուկ ուշադրություն նվիրեն և կոնկրետ գործեն ամբողջ աշխատունակ բնակչությանը հասարակական արտադրության մեջ ներգրավելու համար:

«Անփոփոխ խնդիր է մնում,— նշված է ՍՄԿԿ XXVII համագումարին Կենտկոմի տված Քաղաքական զեկուցման մեջ,— սովետական օրենքների ամբողջ ուժի օգտագործումը հանցագործությունների և մյուս իրավախախտումների դեմ մղվող պայքարում, որպեսզի մարդիկ... վստահ լինեն, որ ոչ մի իրավազանց չի խուսափի արժանի պատժից»:

Մինչդեռ իրավապահպան մարմինների աշխատանքում չեն վերանում հանցագործությունների մակերեսային, անորակ հետաքննության դեպքերը, և դրա հետևանքով առանձին հանցագործ տարրերի համար ստեղծվում է պատասխանատվությունից խուսափելու հնարավորություն: Ահա մի օրինակ: 1985 թվականին Հայոսկերչարի № 21 խանութում ոսկեղենի հափշտակման փաստի հիման վրա քրեական գործ հարուցվեց: Սպանդարյանի շրջանի դատախազության, իսկ հետագայում հանրապետական դատախազության անցկացրած հետաքննությամբ խանութի

երեք վաճառողուհիների մեղադրանք ներկայացվեց այն բանի համար, որ նրանք, հանցավոր գործարքի մեջ մտնելով, հափշտակել են իրենց վստահված ոսկեղենի վաճառքից գոյացած 26 հազար ռուբլին, իսկ իրացված արժեքների դիմաց փոխհատուցել Երևանի ոսկերչական գործարանից հափշտակված ոսկուց պատրաստված համանման արտադրանքով: Ինչ վերաբերում է քննության տակ գտնվող այդ նույն խանութի վարիչ Լ. Հովակիմյանին, որը միաժամանակ նյութապես պատասխանատու անձ էր, ապա նրան մեղադրանքներ չէին ներկայացվել:

Հանրապետության գերագույն դատարանի քրեական գործերի դատական կոլեգիան այդ գործով անցկացված հետաքննությունը մակերեսային համարեց և գործը վերադարձրեց լրացուցիչ քննության: Եվ պարզվեց, որ պետական միջոցների հափշտակիչը հենց ինքը՝ խանութի վարիչն է: Ներկայումս նա դատապարտված է 10 տարվա ազատազրկման: Վաճառողուհիների վերաբերյալ գործը կարճվել է:

Ահա թե ինչպես են աշխատում մեր որոշ քննչական մարմիններում: Իսկ կարող էր և այնպես պատահել, որ անմեղ մարդիկ դատապարտվեին, իսկ խարդախը, պաշտոնում մնալով, ազատության մեջ շարունակեր իր մեքենայությունները:

Միանգամայն անհանդուրժելի է, երբ առանձին դատական աշխատողներ կորցնում են տարրական պատասխանատվության զգացումը: Այսպես, 1984 թվականի նոյեմբերի 29-ին Երևանի նուրբ բրդյա գործվածքեղենի կոմբինատի պահեստում հրդեհ ծագեց, որի հետևանքով ձեռնարկությանը խոշոր նյութական վնաս պատճառվեց:

Հետաքննությունն ավարտելուց հետո քրեական գործը մեղավորների վերաբերյալ մեղադրական եզրակացությամբ 1985 թվականի փետրվարին Լենինյան շրջանի ժողովրդական դատարան ուղարկվեց: Սակայն այստեղ գործի լսման ժամկետները զանազան պատրվակներով անընդհատ փոխվում էին: Դատավարությունը վերջապես սկսվեց դատարանում գործը ստացվելուց մոտավորապես հինգ ամիս անց: Վեցօրյա նիստերից հետո դատարանը ժողովրդական դատավոր Ռ. Գրիգորյանի նախագահությամբ որոշում ընդունեց կոմպլեքսային տեխնիկական փորձաքննություն նշանակելու անհրաժեշտության մասին: Բայց այդ որոշումը փակի տակ դրվեց Ռ. Գրիգորյանի պահարանում: Եվ միայն կես տարի հետո քաղաքացի դատավորը բարեհաճեց դատարանի վերոհիշյալ որոշումը հասցնել հասցեատիրոջը՝ դատական փորձաքննությունների լաբորատորիային: Վերջին հաշվով դատավճիռն այն մարդկանց նկատմամբ, որոնց մեղքով ոչնչացել էին հազարավոր ռուբլիների նյութական արժեքներ, կայացվեց մեկ տարի երկու ամիս հետո՝ արդեն ընթացիկ 1986 թվականին:

Վերը ասվածին պետք է ավելացնել, որ հիշյալ ժամանակամիջոցում Լենինյան շրջանի ժողովրդական դատարանի գործունեությունը ստուգվել է արդարադատության մինիստրության կողմից (ընկ. Ա. Դադայան), սակայն, մեղմ ասած, անպատասխանատվության, քաշքշուկի և անտարբերության վերահիշյալ փաստը, չգիտես ինչու, աննկատ է մնացել մինիստրության աշխատողներից: Իսկ չէ՞ որ այստեղ անհրաժեշտ էր ստուգումը առանձնապես մանրազնին կատարել, քանի որ մինիստրությունում գիտեին, որ Ռ. Գրիգորյանը նախկինում աշխատանքում թույլ տված նույնանման անպատասխանատվության համար պատժված է եղել կարգապահական կարգով:

Եվ միայն Կենտկոմում ստացված ահազանգերից հետո գործը տրամաբանական ավարտ ստացավ, իսկ նշված փաստին պատշաճ գնահատական տրվեց: Ռ. Գրիգորյանը ետ է կանչված ժողովրդական դատավորի պաշտոնից, նրան կուսակցական տույժ է տրված:

Հասկանալի է, որ իրավապահպան մարմինների աշխատանքում տեղ գտած թերությունների ու սխալները հետևանք են ամենից առաջ կադրերի հետ տարվող աշխատանքում եղած բացերի ու վրիպումների, նրանց նկատմամբ ցածր պահանջկոտության: Կուսակցական կոմիտեները և կազմակերպությունները հետևողական աշխատանք չեն տանում հանձնարարված տեղամասի համար այդ մարմինների աշխատակիցների պատասխանատվությունը բարձրացնելու, օրինականության խստագույն կիրառման, ազնվության, ծառայողական պարտքի անբասիր կատարման ոգով նրանց դաստիարակելու ուղղությամբ:



Արդյոք վերջերս դատարանի առջև կկանգնեի՞ն Մաշտոցի շրջանի ներքին գործերի բաժնի ավագ թաղամասային տեսուչ, միլիցիայի մայոր Ս. Մարտիրոսյանը և Լենինյան շրջանի ներքին գործերի բաժնի հերթապահի օգնական Ա. Մարտիրոսյանը, որոնք, հանցավոր գործարքի մեջ մտնելով, անօրինական խուզարկություն էին կատարել Երևանի բնակիչներից մեկի բնակարանում և շանտաժի միջոցով նրանից 15 հազար ռուբլի կաշառք վերցրել իբր վերջինիս քրեական պատասխանատվության չենթարկելու համար, եթե այդ շրջանային բաժինների ղեկավարներն ու կուսկազմակերպությունները, ներքին գործերի մինիստրության քաղբաժինը (ընկ. Ռ. Ասլանյան) և նրա տեղական ստորաբաժանումները ջանադիր զբաղվեին առանց բացառության բոլոր աշխատողների մեջ գաղափարաքաղաքական վեհ հատկությունների ձևավորմամբ, հետևողականորեն պայքարեին բարոյական անմաքրության դրսևորումների դեմ, սկզբունքային գնահատական տային շահադիտական նպատակներով պաշտոնեական դիրքի օգտագործման փաստերին, օրինականության, կարգապահության խախտումներին:

Պետք է միշտ հիշել, որ դաստիարակչական աշխատանքում եղած թերությունների անքննադատ գնահատումը, վերահսկողության բացակայությունը և սոցիալիստական օրինականության, ծառայողական կարգապահությունը խախտողների նկատմամբ լիբերալ վերաբերմունքը կարող են ամենաթողության զգացում ծնել և լուրջ խոչընդոտ դառնալ կուսակցության կողմից իրավապահպան մարմիններին առաջադրված խնդիրների լուծման ճանապարհին:

Ներքին գործերի մինիստրության համակարգի, դատախազության, դատարանների ղեկավարությունը, կուսկազմակերպությունները, ներքին գործերի մարմինների քաղապարատները պետք է այսօրվա պահանջներին համապատասխան վճռականորեն վերացնեն առկա լուրջ թերությունները, հաստատակամորեն յուրացնեն աշխատանքի նոր ոճն ու մեթոդները, մասնագիտորեն սուր ու խոր վերլուծեն հանցագործությունների դեմ մղվող պայքարում հասունացած պրոբլեմները, գտնեն դրանց լուծման առավել արդյունավետ մոտեցումներ, ամրապնդեն ու զարգացնեն այդ գործում կատարված դրական փոփոխությունները:

ՀԿԿ Կենտկոմի վարչական մարմինների բաժինը (ընկ: Մ. Դավթյան) պետք է առավել խորությամբ վերլուծի իրավապահպան մարմինների աշխատանքը, բարձրացնի պահանջկոտությունը նրանց նկատմամբ, ավելի շատ օգնություն ցույց տա թերությունները հաղթահարելու, կուսակցության այսօրվա պահանջների ոգով աշխատանքը վերակառուցելու համար:

Հարկավոր է ուժեղացնել պայքարը նաև այնպիսի սոցիալական չարիքի դեմ, ինչպիսիք են հարբեցողությունը, թմրամոլությունը: Նախ և առաջ պետք է վերջ դնել այն բարեհոգի տրամադրությանը, թե մեզանում հարբեցողության պրոբլեմը չկա: Ոչ, կա, ընդ որում մի քանի շրջանների համար, որտեղ ոգելից խմիչքների օգտագործման տոկոսը բարձր է, բավականին սուր: Հարբեցողության դեմ մղվող պայքարում ոչ մի զիջողություն չի լինի: Մեր պարտականությունն է մտածել ամենաթանկ բանի՝ մարդկանց, անող սերունդների առողջության մասին, մեր ապագայի մասին:

Պետք է անզիջում պայքար մղել անտնտեսվարության, պետական կարգապահության խախտումների դեմ: Հարկավոր է հաշվի առնել, որ այդ պայքարը մեր ապրելակերպին խորթ նաև այնպիսի երևույթի կանխարգելման կարևորագույն պայմաններից մեկն է, ինչպիսիք անաշխատ եկամուտներն են: Գաղտնիք չէ, որ անազնիվ տարրերը ապօրինաբար հարստանալու համար օգտագործում են ամենից առաջ տնտեսական մեխանիզմում եղած թերություններն ու վրիպումները, նյութական արժեքների հաշվառման ու պահպանման գործում եղած բացթողումները:

Հարկ ենք համարում ընդգծել աշխատանքում, բացասական երևույթների դեմ մղվող պայքարում հրապարակայնության ապահովման կարևորությունը: Մարդիկ որքան լավատեղյակ լինեն, այնքան ավելի գիտակից, այնքան ավելի ակտիվ կգինվորագրվեն այդ պայքարին:

Հարկավոր է հանրապետական, շրջանային մամուլում մշտապես հրապարակել բացասական երևույթների դեմ մղվող պայքարին վերաբերող նյութեր, աշխատավորներին իրազեկ պահել, երբ պատժում են կաշառակերներին, պաշտոնեական

դիրքը չարաշահողներին, սպեկուլյանտներին և հափշտակիչներին: Նպատակահարմար կլիներ կիրառել «Հանրապետության դատախազությունում», «Ներքին գործերի մինիստրությունում» խորագրերի պրակտիկա, որոնց տակ հրապարակվեին հանցագործությունների և իրավախախտումների դեմ մղվող պայքարում, առանձին պատահարների դեպքում այդ մարմինների կողմից ձեռնարկվող միջոցների մասին նյութեր ու հաղորդումներ: Դա կխափաներ ամեն տեսակի անհիմն լուրերի, ասեկոսեների տարածումը:

Պետք է վերջ դնել այն մերժելի պրակտիկային, երբ օրինականության հայտնաբերված խախտումների մասին «ծածուկ» հաղորդվում է ձեռնարկությունների, հիմնարկների, կազմակերպությունների ղեկավարներին, իսկ աշխատավորական կոլեկտիվը հաճախ անտեղյակ է մնում ինչպես բուն ստուգումից, այնպես էլ դրա արդյունքներից: Կարևոր է աշխատավորական կոլեկտիվներում, յուրաքանչյուրի մեջ ձևավորել հանրային սեփականության տիրոջ զգացում, բոլոր անհրաժեշտ միջոցները ձեռնարկել սոցիալիստական սեփականության պահպանության համար:

Կատարելով կուսակցության համագումարի որոշումների պահանջը՝ կուսկոմիտեները և կազմակերպությունները պետք է միշտ ուշադրության կենտրոնում պահեն և ըստ ամենայնի բարելավեն բարոյական և իրավական դաստիարակությունը, հիմնավի համաժողովրդական դարձնեն պայքարը սոցիալիստական ապրելակերպին ներհակ դրսևորումների դեմ, ամենուրեք հասնեն սոցիալական արդարության սկզբունքների հաստատման:

## V.

Ընկերնե՛ր:

Կուսակցության համագումարի որոշումները պարտավորեցնում են մեզ շատ բաներում նորովի նայել գաղափարախոսական աշխատանքի և սոցիալական ոլորտի փոխադարձ կապին, որի արմատական դերը մարդկային գործոնի ակտիվացման մեջ անվիճելի է:

Այս հարցը առանձնակի սրություն է ստացել այն պատճառով, որ դեռ մինչև վերջին ժամանակներս թերագնահատվում էր սոցիալական գործոնների ազդեցությունը հասարակական գիտակցության, մարդկանց տրամադրության ու վարքի վրա: Պատահական չէ, որ համագումարում սուր քննադատության ենթարկվեց սոցիալական ոլորտի զարգացման համար ռեսուրսների հատկացման այսպես կոչված «մնացորդային» սկզբունքը:

Մարդկանց սոցիալ-կենցաղային պահանջմունքների առավել լրիվ բավարարման խնդիրների լուծման գործում այդ խեղման, իսկ երբեմն էլ հետևողականության ու հաստատակամության լրիվ բացակայության հետևանքները հիմա էլ են զգացվում մեր շատ քաղաքներում, շրջաններում, ձեռնարկություններում ու տնտեսություններում: Օրինակ, Երևանի ռետինատեխնիկական իրերի գործարանում (դիրեկտոր՝ ընկ. Բ. Գալստյան, կուսկազմակերպության քարտուղար՝ ընկ. Է. Բզնունի) բարձիթողի վիճակում են կենցաղային սենյակները, ցնցուղարանները, սանհանգույցները, վատ է կազմակերպված սնունդը գործարանի ճաշարանում: Զգձգվում է այդ հատվածների կապիտալ նորոգումը, որն սկսվել է դեռևս անցած տարվա սկզբին: Այդ վիճակը, ըստ երևույթին, չի անհանգստացնում գործարանի ո՛չ դիրեկցիային, ո՛չ էլ կուսբյուրոյին, որն իր նիստերում ոչ մի անգամ նույնիսկ չի քննարկել սոցիալ-կենցաղային պայմանների բարելավման հարցը: Քիչ են կառուցվում բնակարաններ, չկան բանվորական հանրակացարան, պանսիոնատ, հանգստյան տուն, մարզահրապարակներ և այլն:

Մենք, իհարկե, ունենք շատ ձեռնարկություններ, կազմակերպություններ, տնտեսություններ, որտեղ զգայուն կերպով են արձագանքում մարդու, կոլեկտիվի սոցիալական և հոգևոր պահանջմունքներին: Այս առումով օրինակ կարող է ծառայել Երևանի «Լույս» արտադրական միավորումը (գլխավոր դիրեկտոր՝ ընկ. Բ. Թումասյան, կուսկոմիտեի քարտուղար՝ ընկ. Վ. Դաշյան):

Ձեռնարկությունում իրագործված է մարդկային գործոնի սոցիալական կայունության ուժեղացման կոմպլեքսային ծրագիր: Ստեղծված են բժշկական սպասարկման անհրաժեշտ պայմաններ, բացված են կենցաղի ու առևտրի օբյեկտներ: Աշխատողների երեխաները լրիվ ապահովված են տեղերով նախադպրոցական հիմնարկներում: Գործնականում բոլոր բանվորներին, ծառայողներին, նրանց ընտանիքներին տրամադրվում են սանատորիայի, հանգստյան տան, գործարանի պրոֆիլակտորիումի ուղեգրեր: Միավորումը հանգստյան տներ ունի հանրապետության տարբեր առողջարանային գոտիներում: Անցած հնգամյակում բանվորներն ու ծառայողները ստացել են 25 հազար քառակուսի մետր բնակմակերես:

Գեղարվեստական ինքնագործունեության խմբակներում և մարզախմբերում ընդգրկված է ձեռնարկության երիտասարդության մեծ մասը: Վերջին հինգ տարում այստեղ քրեապես պատժելի ոչ մի հանցագործություն չի գրանցված: Իսկ այնպիսի սոցիալական չարիք, ինչպիսին հարբեցողությունն է, փաստորեն բացառված է:

Վերը թվարկված բոլոր գործոնները զգալիորեն ամրապնդել են ձեռնարկության բազմահազարանոց կոլեկտիվի սոցիալական և բարոյական դիրքերը: Անտարակույս, այս դրական արդյունքները հնարավոր են դարձել ադմինիստրացիայի, կուսակցական, արհմիութենական և կոմերիտական կազմակերպությունների համերաշխ ու մտածված աշխատանքի շնորհիվ:

Այդ է վկայում նաև Ախուրյանի շրջանի Ժդանովի անվան կոլտնտեսությունում կուտակված փորձը (նախագահ՝ ընկ. Ռ. Կարախանյան, կուսբյուրոյի քարտուղար՝ ընկ. Ռ. Խուրշուդյան), որտեղ վերջին տարիներս զգալիորեն բարելավվել են գյուղի աշխատավորների արտադրական և կուլտուր-կենցաղային պայմանները: Շահագործման են հանձնվել նոր մանկապարտեզ, դպրոց, ակումբ, ֆերմաներում ամենուրեք կան կարմիր անկյուններ: Այս ամենը ակտիվորեն նպաստում է գաղափարախոսական աշխատանքի բարելավմանը, տնտեսական խնդիրների կատարմանը:

Անտարակույս, հանրապետության սոցիալական զարգացման մեր նախատեսած ծրագիրը շատ ավելի արագորեն կիրագործվեր, եթե ամենուրեք այսպես եռանդագին լուծվեին սոցիալ-կենցաղային հարցերը:

Աշխատավորների և նրանց ընտանիքների համար նորմալ սոցիալ-կենցաղային պայմանների ստեղծումը առաջնակարգ կարևորության խնդիր է: Կատարել այդ խնդիրը՝ նշանակում է ապահովել քաղաքների և գյուղերի սոցիալական ենթակառուցվածքի հետագա զարգացումը, բնակելի տների, դպրոցների և մանկական նախադպրոցական հիմնարկների, հիվանդանոցների և պոլիկլինիկաների, մշակույթի, առևտրի, կենցաղային, կոմունալ և այլ օբյեկտների շինարարության պլանների անվերապահ կատարումը:

Սակայն այս խնդիրը առայժմ բավարար եռանդով ու նպատակասլացությամբ չի լուծվում, ուստի և բացասաբար է անդրադառնում մարդկանց տրամադրության, դաստիարակչական աշխատանքի արդյունավետության վրա:

Արդարացի է, ընկերներ, քննադատությունն այն առթիվ, որ մեզ մոտ անհրաժեշտ հաստատակամություն չի դրսևորվում բնակչության սոցիալ-կենցաղային պահանջմունքների առավել լրիվ բավարարման, սոցիալ-կուլտուրական ոլորտի նյութական բազայի ամրապնդման խնդիրների լուծման նկատմամբ:

Երևան, Լենինական, Կիրովական քաղաքներում և այլ բնակավայրերում բնակարան ստանալու համար հերթագրված են տասնյակ հազարավոր մարդիկ: Մինչև օրս հանրապետությունում չեն վերացվել բարաքներն ու նկուղային կացարանները: Դեռ շատ կան քանդման ենթակա խարխուլ ու վթարային տներ: Մի ամբողջ շարք վայրերում դեռևս սուր է բնակչությանը ջրով, կոմունալ, առևտրական, բժշկական սպասարկումով ապահովելու պրոբլեմը:

Եվ այս պայմաններում մենք հաշտվել ենք սոցիալական ու կուլտուր-կենցաղային օբյեկտների շինարարության պլանների մշտական թերակատարմանը, չենք բարձրացնում պահանջկոտությունը կապալային կազմակերպությունների ղեկավարների ու պատվիրատուների նկատմամբ այդ օբյեկտները ժամանակին շահագործման հանձնելու համար:

Հանրապետության կոմկուսի Կենտկոմն ընթացիկ տարվա օգոստոսին քննարկեց սոցիալական ու կուլտուր-կենցաղային օբյեկտների շինարարության պլանների կատարման համար աշխատավորական կոլեկտիվներին մոբիլիզացնելու ուղղությամբ տարվող աշխատանքի մասին կուսակցության Կիրովականի քաղկոմի և Աբովյանի շրջկոմի քարտուղարների հաշվետվությունները և բացահայտեց լուրջ բացթողումներ ու թերություններ:

Մեր շատ շրջաններ տարեցտարի չեն կատարում կապիտալ շինարարության պլանները:

Հարկավոր է ամենայն խստությամբ պատասխան պահանջել կուսակցության՝ Աբովյանի շրջկոմի քարտուղար ընկ. Հ. Ավագյանից, Անիի շրջկոմի քարտուղար ընկ. Ս. Նազարյանից, Աշտարակի շրջկոմի քարտուղար ընկ. Մ. Խաչատրյանից, Գուգարքի շրջկոմի քարտուղար ընկ. Լ. Բաղդասարյանից, Նաիրիի շրջկոմի քարտուղար ընկ. Մ. Հայրապետյանից և ժողովրդական դեպուտատների սովետների համապատասխան գործկոմների նախագահներ ընկ. ընկ. Գ. Մանուկյանից, Ա. Անդիկյանից, Կ. Զաքոյանից, Ա. Սաֆարյանից, Խ. Սաֆարյանից, սոցիալական և կուլտուր-կենցաղային օբյեկտների շինարարության թույլ վերահսկման, դրա իրականացման ապահովմանն ուղղված անբավարար քաղաքական ու կազմակերպական աշխատանքի համար:

Այսօր կուսակցական կազմակերպությունների ուշադրությունը պետք է կենտրոնացվի սոցիալական ոլորտի օբյեկտների շինարարության պլանային առաջադրանքների անվերապահ կատարումն ապահովելուն: Այդ աշխատանքը պետք է գլխավորեն կուսակցության քաղկոմների և շրջկոմների առաջին քարտուղարները, ժողովրդական դեպուտատների քաղաքային և շրջանային սովետների գործկոմների նախագահները:

Պետք է անբավարար համարել սոցիալական ու կուլտուր-կենցաղային օբյեկտների կառուցման որակի բարելավման ուղղությամբ շինարարական մինիստրությունների ու գերատեսչությունների կատարած աշխատանքը: Այս բնագավառում գործը առայժմ խոսակցություններից այն կողմ չի անցել:

Առանձնակի տագնապ է հարուցում բնակելի տների շինարարության ցածր մակարդակը, որ մշտապես թույլ են տալիս հանրապետության արդյունաբերական շինարարության մինիստրության կազմակերպությունները (մինիստր՝ ընկ. Ռ. Մելիքյան, մինիստրի տեղակալ, «Երևանշին» արտադրական-շինմոնտաժային միավորման պետ՝ ընկ. Է. Հակոբյան), և դրանց հանձնումը շահագործման՝ խոշոր թերություններով, որոնց պատճառով շենքերը երկար ժամանակ չեն բնակեցվում:

Անցած տարվա դեկտեմբերին «Վերհանշին» տրեստի № 73 շինվարչության (կառավարիչ՝ ընկ. Ռ. Աբրահամյան, կուսկազմակերպության քարտուղար՝ ընկ. Ռ. Մազմանյան) Նորքի զանգվածի 5-րդ միկրոշրջանում շահագործման հանձնած 120 բնակարանանոց շենքը էլեկտրաէներգիայի ոչ մշտական մատակարարման և շինարարական թերությունների պատճառով չբնակեցվեց: Հանրապետության արդյունաբերական շինարարության մինիստրությունը այդ առթիվ հրաման է արձակել, որով խիստ նկատողություն է հայտարարվել տրեստի գլխավոր ինժեներ ընկ. Ա. Աղաբաբովին, իսկ № 73 շինվարչության պետ ընկ. Բ. Էմիրյանը ազատվել զբաղեցրած պաշտոնից: Հրամանը արձակվել է 1986 թվականի փետրվարի 19-ին:

Ստուգումը ցույց տվեց, որ Բ. Էմիրյանը պաշտոնից չէր ազատվել և 1986 թվականի մարտի 29-ին նորից էր ստորագրել այդ շենքը շահագործման ընդունելու վերաբերյալ պետական հանձնաժողովի ակտը: Նկատենք, որ պետական հանձնաժողովի նախագահն էր Սովետական շրջգործկոմի նախագահ ընկ. Լ. Բլաժենսան, և որ օգոստոսի 21-ի դրությամբ (ստուգման օրը) բնակարանների մեծ մասում եղած թերությունները չէին վերացվել: Օրինակ, Հայրենական մեծ պատերազմի վետերան ընկ. Խաչատրյանի բնակարանում, որին օրդեր էին տվել ընթացիկ տարվա ապրիլի 30-ին, չէին տեղակայված լվացարանները, գազօջախը, լողարանը, չէին ավարտված շինարարական աշխատանքները սանհանգույցում, չէր կատարված սենյակների հարդարումը, տեղ-տեղ ուռած էր մանրահատակը: Հարց է ծագում, որտե՞ղ է կատարման վերահսկողությունը ընկ. Մելիքյանի կողմից, ինչո՞ւ մինիստրության ապարատի, տրեստի շինվարչության կուսկազմակերպությունները չեն տվել դրա գնահատականը, ինչո՞ւ համապատասխան շրջկոմները միջոցներ չեն ձեռնարկել:



Ավելի լավ չէ շինարարության որակը հանրապետության պետագրոարդի շինարարական կազմակերպություններում (ընկ. Վ. Վիրաբյան): Ընթացիկ տարում №№ 5, 6 տրեստների կառուցած ու շահագործման հանձնած 36 շենքերից յուրաքանչյուր վեցերորդը հաշվետվությունից հանված է ցածր որակի ու կիսատ թողած գործերի պատճառով:

Միայն ընթացիկ տարվա 9 ամսում հանրապետության կուսակցական ու սովետական մարմինները մոտ 500 գանգատ ու ահազանգ են ստացել շահագործման հանձնված բնակելի տներում անորակ կատարված աշխատանքների մասին:

Մի՞թե սա թույլատրելի է, ընկերներ: Եվ այնպես է ստացվում, որ կոնկրետ մարդկանց մեղքով, որոնք, ի դեպ, չգիտես ինչու, խստորեն չեն պատժվում, պետությունից անվճար բնակարան ստացող մարդիկ դժգոհ են մնում, դառնանում է նրանց բնակարանամուտը:

Պետք է անխնա պայքար մղել ինչպես խոտանարարների, այնպես էլ նրանց հովանավորների դեմ և այդ պայքարը մղել՝ օգտագործելով ինչպես օրենքը, այնպես էլ հասարակական կարծիքը: Պետք է ողջունել հանրապետության հեռուստառադիոպետկոմի նախաձեռնությունը, որը «Որտեղ ինչպես են կառուցում» հաղորդաշարում խստորեն քննադատում է շինարարության մեջ եղած թերությունները, կոնկրետ ցույց տալիս կառուցվող օբյեկտների ցածր որակը, խարազանում խոտանարարներին:

Հանրապետության պետշինը (ընկ. Լ. Բեգլարյան) պետք է վերջ դնի լիբերալիզմին, խստացնի շինարարության որակին ներկայացվող պահանջները: Պետք է պատասխանատվության ենթարկել աշխատանքում խոտան թույլ տվող անձանց, ընդհուպ մինչև գործերը քննչական մարմիններին հանձնելը՝ անկախ նրանց զբաղեցրած պաշտոնից: Հարկ է, որ կուսակցական կոմիտեները և կազմակերպությունները եռանդագին, գործնական պայքար ծավալեն ինչպես շինարարությունում, այնպես էլ շինարարական ինդուստրիայի ու շինանյութերի արդյունաբերության ձեռնարկություններում աշխատանքի բարձր որակի համար, այդ գործում, բոլորի և ամենից առաջ, ղեկավարների պատասխանատվությունը բարձրացնելու համար:

Մյուս կողմից, անհրաժեշտ է օբյեկտներում ստեղծել բոլոր պայմանները շինարարների բարձրարտադրողական և որակյալ աշխատանքի համար: Պետք է մեկընդմիշտ ըմբռնել, որ շինհրապարակներում, ինչպես արդյունաբերության ձեռնարկություններում, պետք է լինեն ճաշարաններ, ցնցուղարաններ, հանգստի սենյակներ և այլն: «Երևանշին» արտադրական-շինմոնտաժային միավորումը արդեն այդպիսի օբյեկտներ է ստեղծել Դավիթաշենի բնակելի միկրոշրջանի շինարարությունում և ուրիշ շատ կառույցներում:

Կապալային շինարարական կազմակերպությունները, տեղական սովետները, հանրապետության բնակարանային ու կոմունալ տնտեսության մինիստրությունը (մինիստր՝ ընկ. Ռ. Մինասյան) շատ բան պետք է անեն բնակչության կոմունալ սպասարկումը բարելավելու համար: Անհանդուրժելի է այն փաստը, որ կոմունալ շինարարությանը հատկացվող միջոցները տարեցտարի իրացվում են 75—80 տոկոսով, ամեն տարի չեն իրացվում միլիոնավոր ռուբլիների կապիտալ ներդրումներ: Եվ դա այն դեպքում, երբ վերադաս կուսակցական և սովետական մարմիններին աշխատավորների հասցեագրած յուրաքանչյուր երկրորդ դիմումը վերաբերում է բնակչության կոմունալ սպասարկման համապատասխան կազմակերպությունների ու ծառայությունների անբավարար աշխատանքին:

Ամենքին հայտնի է Երևանում խմելու ջրի պրոբլեմը: Օբյեկտիվ դժվարությունները այստեղ խորանում են գործի նկատմամբ ղեկավարների անբարեխիղճ վերաբերմունքով, որոնք կոչված են անմիջականորեն լուծելու այդ հարցերը: Ծաղումյանի շրջանի Հալաբյան փողոցի տներից մեկի բնակիչները վեց ամիս շարունակ ջուր չեն ունեցել: Նրանց բազմաթիվ դիմումները, որ անցել են կախարդական շրջանով՝ ջրամատակարարման շրջանային տեղամաս, «Ջրմուղ» արտադրական վարչություն, սովետի գործկոմ, այնպես էլ ապարդյուն են մնացել: Իսկ չէ որ դրա լուծման համար,

ճիշտ է, Կենտկոմի միջամտությունից հետո, հաշվված ժամեր պահանջվեցին: Գուցե այս դեպքի մասին չարժեր այստեղ խոսել, եթե օրինակը միակը լիներ...

Կուսակցության Երևանի քաղկոմը (ընկ. Լ. Սահակյան), ժողովրդական դեպուտատների քաղաքային սովետի գործկոմը (ընկ. Է. Ավագյան) պետք է անհետաձգելիորեն զբաղվեն քաղաքի ջրմուղի ցանցի հետագա զարգացման ու վերակառուցման և ջրամատակարարման ու ջերմամատակարարման բարելավման հարցերով, կարգուկանոն հաստատեն համապատասխան ծառայություններում: Այս նույն հարցերը պետք է լուծվեն Կիրովականում, Գորիսում, Դիլիջանում, Հոկտեմբերյանում, մեր մյուս քաղաքներում ու շրջաններում:

Տեղական սովետները պետք է ուժեղացնեն ուշադրությունը բնակարանային ֆոնդի շահագործման ու պահպանման հարցերի նկատմամբ, ժամանակին, բարձր որակով կատարեն նորոգման աշխատանքները, բարելավեն բակերի, փողոցների ու ճանապարհների, արդյունաբերական ձեռնարկությունների ու կազմակերպությունների տարածքների սանիտարական վիճակը: Մի խոսքով, պետք է ամենուրեք պայքար մղվի օրինակելի կենցաղային կուլտուրայի համար:

Անհրաժեշտ է լրջորեն ու հաստատակամորեն ձեռնամուխ լինել շրջակա միջավայրի մաքրության պահպանմանը: Ժամանակ առ ժամանակ Երևանում օդի աղտոտվածությունը հասնում է այնպիսի աստիճանի, որ մարդկանց համար պարզապես անտանելի է դառնում, արցունքակալում են աչքերը, թարմ օդի դուրս գալու հնարավորությունն իսկ կորցնում է իմաստը:

Այս հարցում իրենց աններելիորեն պասսիվ, լիբերալ, իսկ երբեմն էլ անսկզբունքային կերպով են դրսևորում շրջանային սովետները և վերահսկողության համար հատկապես ստեղծված համապատասխան ծառայությունները:

Առանձին ձեռնարկությունների ղեկավարներ չեն կիրառում բնության և շրջակա միջավայրի պահպանության մասին օրենսդրությունը և մնում են անպատիժ: Հենց անպատժելիությունն էլ հանգեցնում է ուղղակի անպատասխանատվության: Այս տեսակետից ամենախիստ քննադատության են արժանի «Նաիրիտ» գիտաարտադրական միավորման (ընկ. Ս. Աստվածատրյան), ինչպես նաև Երևանի ջերմաէլեկտրակայանի, կենցաղային քիմիայի, վիտամինների, պոլիվինիլացետատ գործարանների ղեկավարությունները:

Մարալիկի բնակիչները լուրջ գանգատներ են հղում ավանի կողքին գտնվող ձորի աղտոտման մասին: Մինչդեռ կոմունալ տնտեսության մինիստրության և պետագրոշինի մեղքով Մարալիկի բամբակամանվածքային ֆաբրիկայի ջրազտիչ նայանքը չի շահագործվում:

Պետք է բարձրացնել պահանջկոտությունը նաև տրանսպորտային կազմակերպությունների ղեկավարների նկատմամբ: Երքաղսովետը հանրապետության ներքին գործերի մինիստրության հետ միասին պետք է ամենազործուն միջոցները ձեռնարկի՝ թույլ չտալով շահագործել այն ավտոտրանսպորտային միջոցները, որոնց արտանետած գազերը շարժիչների անկարգավորվածության, ֆիլտրող հարմարանքների բացակայության պատճառով գերազանցում են սահմանված նորման: Սա պետք է վերաբերի ինչպես հասարակական, այնպես էլ անձնական օգտագործման տրանսպորտին: Այստեղ ոչ մի զիջում չպետք է արվի: Մեր մարդկանց առողջությունը ամեն ինչից վեր է:

Եվս մի կարևոր հարցի մասին: Վերլուծությունը ցույց է տալիս, որ հանրապետության շատ շրջաններ ու քաղաքներ, բնակավայրեր զարգանում են աններդաշնակ: Անհամամասնություններ կան բնակարանային ու կոմունալ տնտեսության զարգացման, լուսավորության օջախների, ակումբների, կինոթատրոնների և այլ օբյեկտների շինարարության գործում:

Հանրապետության սոցիալական ենթակառուցվածքի զարգացման որոշ ցուցանիշներ ցածր են միջին միութենական մակարդակից: Այս պայմաններում մեր առանձին շրջաններում բնակչության ապահովվածությունը հիվանդանոցային մահճակալներով, նախադպրոցական և ակումբային հիմնարկներով, առևտրական կազմակերպությունների, հասարակական սննդի ու կենցաղային սպասարկման ձեռնարկությունների հնարավորություններով նկատելիորեն զիջում է միջին հանրապետական ցուցանիշներին: Օրինակ, հանրապետության գյուղական շրջաններում յուրաքանչյուր



հազար բնակչի 38 տեղ է հասնում նախադպրոցական հիմնարկներում, իսկ Մարտունու շրջանում՝ 15,9, Կամոյի շրջանում՝ 26,4, Վարդենիսի շրջանում՝ 28,5, Կրասնոսելսկի շրջանում՝ 27,6, Գուգարքի շրջանում՝ 33,5 տեղ:

Հիվանդանոցային մահճակալներով վերը նշված և մի շարք այլ գյուղական շրջանների ապահովվածությունը 30—40 տոկոսով ցածր է միջին հանրապետական մակարդակից: Հազար բնակչին ընկնող ակումբային հիմնարկներով ապահովվածությունը հանրապետությունում միջին հաշվով կազմում է 201,3 տեղ, իսկ Մարտունու շրջանում՝ 119,2, Կամոյի շրջանում՝ 165,8, Գուգարքի շրջանում՝ 163,4, Մասիսի շրջանում՝ 98,8 տեղ:

Չնայած նման իրավիճակին, հանրապետության պետպլանը (ընկ. ընկ. Հ. Սաղոյան, Ա. Տեր-Իսրայելյան) դեռևս միջոցներ չի ձեռնարկում ինվեստիցիոն քաղաքականությունը վերակառուցելու, հանրապետության շրջանների սոցիալական ենթակառուցվածքի զարգացման մակարդակները հավասարեցնելու, դրանց տնտեսական ու սոցիալական զարգացման հաշվեկշռվածությունն ապահովելու նպատակով:

Կենտկոմի Քաղաքական զեկուցման մեջ ընդգծվում է. «Մարդիկ պետք է մըշտապես տեսնեն, զգան մեր գաղափարախոսության մեծ ճշմարտությունը, քաղաքականության սկզբունքայնությունը: Պահանջվում է աշխատանքը և բարիքների բաշխումը այնպես կազմակերպել, օրենքները և սոցիալիստական համակեցության սկզբունքներն այնքան մանրակրկիտ կիրառել, որ յուրաքանչյուր սովետական մարդ անսասան հավատ ունենա մեր իդեալների ու արժեքների նկատմամբ»:

Դա մեզ պարտավորեցնում է մշտապես աշխատել այնպես, որ բոլոր գործերում խիստ կարգուկանոն հաստատվի, որ աշխատանքի կազմակերպմամբ, բարիքների բաշխմամբ զբաղվող մարդկանց բարոյական դաստիարակության մակարդակը, պատասխանատվության զգացումը բարձր լինի և բացառի օրենսդրության, սոցիալական արդարության սկզբունքների ամեն մի ոտնահարում:

Դա առավել ևս անհրաժեշտ է այն պատճառով, որ մեզ մոտ այդպիսի փաստեր կան:

Վերցնենք նույն բնակարանային պրոբլեմը: Դուք գիտեք, ընկերներ, թե դա ընդհանրապես որքան սուր բնույթ է կրում, թե մեր մարդիկ որքան զգայուն կերպով են արձագանքում օրենսդրության ամեն կարգի խախտումներին, թե այդ ամենը ինչպես է ազդում մարդկանց տրամադրության վրա, սասանում հավատը սոցիալական արդարության հանդեպ:

Ժողովրդական վերահսկողության մարմինները հենց վերջերս ստուգեցին, թե ինչպես է կիրառվում բնակարանային պայմանների բարելավման կարիք ունեցող քաղաքացիների հաշվառման և բնակմակերեսի բաշխման՝ բնակարանային օրենսդրությամբ սահմանված կարգը Երևան, Հոկտեմբերյան, Ղափան, Արտաշատ, Էջմիածին, Աբովյան և մի շարք այլ քաղաքներում, բացահայտեցին լուրջ թերություններ ու խախտումներ:

Մի շարք ձեռնարկություններում ու կազմակերպություններում անբավարար է դրված բնակարանային պայմանների բարելավման կարիք ունեցող քաղաքացիների հաշվառումը: Կան փաստեր, երբ բնակարաններ հատկացնելուց առաջ բնակարանային պայմանները չեն ստուգվում: Բնակարանի համար հերթագրվածների ցուցակների մեջ երբեմն մտցնում են բնակարան ստանալու հիմք չունեցող քաղաքացիների: Բնակարանային հարցերը քննելիս միշտ չէ, որ հաշվի են առնվում աշխատավորական կոլեկտիվների երաշխավորությունները ու առաջարկությունները, ինչը հանգեցնում է ըստ հանրային արտադրության մեջ յուրաքանչյուր աշխատողի ներդրած աշխատանքային ավանդի բնակարանների արդարացի բաշխման սկզբունքի խախտման, առաջ է բերում աշխատավորների արդարացի գանգատներ և կշտամբանքներ:

Հայտնաբերված են բնակմակերեսի հավելումների, այնպիսի քաղաքացիների բնակարան հատկացնելու դեպքեր, որոնք բնակարանային պայմանների բարելավման կարիք չեն ունեցել և բնակարան ստանալու համար հերթագրված չեն եղել: Այսպես, 1985—86 թվականներին 26 կոմիսարների, Սպանդարյանի, Մյասնիկյանի շրջգործկոմների որոշումներով այդպիսի բնակարաններ են հատկացվել 25 քաղաքացիների: Միայն երեք ստուգված շենքերում հայտնաբերվել են փաստեր, երբ բնակարաններ են հատկացվել հավելյալ բնակմակերես ունեցող 46 քաղաքացիների:

Մեկ մարդու հաշվով բնակմակերեսի հատկացման նորմայի 1,5—2 անգամ գերազանցումով բնակարաններ են հատկացվել 44 ընտանիքների, իսկ նորմայի 3 անգամ գերազանցումով՝ 2 ընտանիքների: Մի շարք խախտումներ են թույլ տրվել ղեկավար աշխատողների բնակարանային հարցերը լուծելիս, որոնք շրջանցելով հերթայնությունը, բարելավել են իրենց բնակարանային պայմանները:

Վերը նշված շրջսովետների գործկոմների նախագահներ ընկ. ընկ. Հ. Դանիելյանը, Լ. Գևորգյանը, Գ. Հարությունյանը ըստ երևույթին մոռացել են իրենց պատասխանատվությունը բնակարանային օրենսդրության խստիվ կիրառման համար, որ դա իրենց առաջնային պարտքն ու պարտականությունն է, իսկ Երքաղսովետի գործկոմը (ընկ. Է. Ավագյան) թույլացրել է պահանջկոտությունը նրանց նկատմամբ:

Բնակարանային տարածության բաշխման և բնակեցման ասպարեզում էական թերություններ են թույլ տրվել Քաջարանի քաղսովետի գործկոմում: Շրջանցելով օրենքը՝ միևնույն անձինք բնակարաններ են ստացել և՛ Երևանում, և՛ Քաջարանում: Ավելին, ինքը՝ Քաջարանի քաղսովետի գործկոմի նախագահ ընկ. Ա. Ավանեսյանը, խախտելով բնակտարածության հաշվառման և բաշխման գործող կարգը, բնակարաններ է ստացել և՛ Երևանում, և՛ Ղափանում, և՛ Քաջարանում: Այս փաստերի առթիվ քաղաքացիներից նամակներ ստացվեցին: Եվ միայն Կենտկոմի միջամտությունից հետո շրջկոմը քննարկեց այդ հարցը: Ներկայումս Ա. Ավանեսյանը ենթարկված է կուսակցական պատասխանատվության և ազատված է զբաղեցրած պաշտոնից:

Վերը նշված խախտումները հետևանք են այն բանի, որ թուլացված է վերահսկողությունն ու պահանջկոտությունը ժողովրդական դեպուտատների սովետների գործկոմների ղեկավարների և պատասխանատու աշխատողների նկատմամբ ինչպես կուսակցական կոմիտեների, այնպես էլ վերադաս սովետական մարմինների կողմից, ինչը անթույլատրելի է:

Հանրապետության Մինիստրների խորհուրդը, կուսակցության համապատասխան քաղաքային ու շրջանային կոմիտեները պետք է քննության առնեն ստուգման արդյունքները և ամենախիստ պատասխանատվության ենթարկեն մեղավորներին, պատշաճ կարգուկանոն հաստատեն այդ գործում, թույլ չտան բնակարանային ավելորդության որևէ փաստ:

Այսօր, ավելի քան երբևէ, օրակարգում մեծ սրությամբ դրված է սպասարկման ոլորտի կուլտուրայի բարձրացման, բնակչության համար առավելագույն հարմարությունների ստեղծման, առևտրի, կենցաղային, բժշկական, կոմունալ, տրանսպորտային սպասարկման առաջադիմական ձևերի զարգացման հարցը: Սակայն այստեղ գործերը շատ դանդաղ են շտկվում:

Դրա պատճառը կիսամիջոցներն են, անպատասխանատվությունը և բարեհոգությունը: Վերցնենք պտուղբանջարեղենի առևտուրը: Ամբողջությամբ, քանակական առումով պրոբլեմը հիմնականում լուծված է: Բայց պետք է ավելի առաջ գնալ՝ ժամանակին բավարարել բնակչության պահանջմունքը բանջարեղենի, կարտոֆիլի, պտուղների հարցում, բարձրացնել սպասարկման կուլտուրան, ընդլայնել արտադրանքի տեսականին, բարելավել դրա ապրանքային տեսքը: Իսկ դա դանդաղ է կատարվում: Բանջարեղենի ու մրգի առևտրի կազմակերպման գործում եղած թերությունների համար հանրապետության պետագրոարդի նախագահի տեղակալ ընկ. Ծ. Գևորգյանը կուսակցական տույժի է ենթարկվել: Միջոցներ են ձեռնարկված առևտրի ցանցը ընդլայնելու, անհրաժեշտ սարքավորումներով ու տեխնիկայով այն հագեցնելու համար: Չէ որ անթույլատրելի է, երբ վաճառակետերի փոքր քանակության պատճառով մարդիկ երկար ժամանակ են կորցնում հերթերում, իսկ տեխնիկայի բացակայության պատճառով փչանում է մեծ քանակությամբ ապրանք:

Բնակչության սպասարկման ոլորտի բուն կոչումը, անվանումն իսկ որոշում են այդ բնագավառի խնդիրն ու նպատակը: Այստեղ ամեն ինչ պետք է ենթարկված լինի մարդու շահերին: Սպասարկման ոլորտի աշխատանքը պետք է սկսվի ու ավարտվի մեր աշխատավորներին հարմար ժամանակ, կազմակերպվի այնպես, որ մարդիկ քիչ ժամանակ կորցնեն մթերքների ու ապրանքների գնումների, կենցաղային տեխնիկայի և անձնական գործածության առարկաների նորոգման համար, ժամանակին ստանան բժշկական օգնություն, որ լրիվ բավարարվեն նրանց կոմունալ



ու տրանսպորտային կարիքները և այլն: Այս ամենը տրամադրություն է ստեղծում և պետք է լինի ուշադրության կենտրոնում:

Սպասարկման ոլորտի աշխատանքն ավելի շատ ու ավելի արագ վերակառուցման կարիք ունի, և ղեկավարների, կուսակցական կազմակերպությունների խնդիրն է աշխատավորական կոլեկտիվների ջանքերը նպատակամղել դրան: Հարկ է մեկ անգամ ևս լրջորեն զգուշացնել. այդ աշխատանքում դանդաղկոտության, անհետևողականության համար նրանց ամենախիստ հաշիվ կներկայացվի:

Անհրաժեշտ է բարձրացնել իշխանության տեղական մարմինների դերը սպասարկման ոլորտի վիճակի համար: Հենց տեղական սովետները մինիստրությունների և գերատեսչությունների հետ մեկտեղ պետք է լիակատար պատասխանատվություն կրեն այդ ոլորտի զարգացման, դրա աշխատանքի բարելավման համար:

Կենտկոմի Քաղաքական զեկուցման մեջ ասված է. «Բնակարանը, պարենային մատակարարումը, ժողովրդական սպառման ապրանքների որակը, առողջապահության մակարդակը՝ այս բոլորն ամենաանմիջական կերպով ազդում են մարդկանց գիտակցության և տրամադրության վրա: Մենք հենց այս դիրքերից պետք է մոտենանք կուսակցական, սովետական և հասարակական կազմակերպությունների դաստիարակչական գործունեության հետ կապված հարցերի ամբողջ կոմպլեքսին»:

Մտածել, հոգալ մարդկանց մասին, հաստատակամ ու հետևողականորեն հասնել նրանց սոցիալ-կենցաղային պահանջմունքների բավարարման խնդիրների լուծման՝ սա է պահանջում կուսակցությունը բոլոր կուսկազմակերպություններից: Եվ մեր պարտքն ու պարտականությունն է անշեղորեն և անպայման կատարել այդ կարևոր պահանջը:

## VI.

Ընկերնե՛ր: Հանրապետության կուսակցական կազմակերպության, նրա կոմիտեների և սկզբնական կուսկազմակերպությունների կարևորագույն, անհետաձգելի խնդիրն է վերակառուցման նպատակասլաց ու հետևողական իրականացումը, որը ՍՄԿԿ Կենտկոմը դիտում է որպես մեր սոցիալիստական կարգերի ներքին ռեզերվների ու հնարավորությունների մոբիլիզացման գլխավոր լծակը, կուսակցության XXVII համագումարի գծի կենսագործման պարտադիր պայմանը:

Կրասնոդարի երկրամասի կուսակցական ակտիվի հետ ունեցած հանդիպման ժամանակ ընկ. Մ. Ս. Գորբաչովն ընդգծեց, որ կուսակցական մարմիններն ամենից առաջ պետք է արագացման գծի ճիշտ ըմբռնման, դրա իրացման նկատմամբ, վերակառուցման նկատմամբ ճիշտ վերաբերմունքի օրինակ տան:

Առաջինը, որ պետք է անեն կուսակցական կոմիտեներն ու կազմակերպությունները, մասսաների կենդանի ստեղծագործության ասպարեզ բացելն է, ժողովրդի ինտելեկտուալ և ստեղծագործական պոտենցիալը հմտորեն օգտագործելը:

Պետք է ակտիվորեն պայքարել կյանքում նորի հաստատման համար, պայքարել այն ամենի դեմ, ինչը հնացել է, սպառել իրեն, պետք է քննադատություն և ինքնաքննադատություն ծավալել, լայն հրապարակայնություն ապահովել: Վերակառուցումը կարող է իրականացվել միայն հասարակության կյանքի բոլոր ոլորտների դեմոկրատացման, յուրաքանչյուր աշխատավորական կոլեկտիվում, կուսակցական կազմակերպությունում, յուրաքանչյուր շրջանում, քաղաքում, ամբողջ հանրապետությունում այնպիսի նախադրյալների ստեղծման հիման վրա, երբ յուրաքանչյուր մարդ իրեն զգա երկրի տեր, խորապես գիտակցի իր պատասխանատվությունն ընդհանուր գործի համար, դրսևորի իր քաղաքացիական դիրքորոշումը:

Այս ամենի իրացումը անհնար է առանց բուն կուսակցական կոմիտեների և կազմակերպությունների կազմակերպչական, քաղաքական ու գաղափարախոսական աշխատանքի ոճի ու մեթոդների վերակառուցման:

Գլխավորն այսօր կուսակցության համագումարի գծի կենսագործման ապահովումն է: Իսկ համագումարի առաջադրած խնդիրներն անհնար է լուծել հին մոտեցումների հիման վրա:

Հանրապետության կուսակցական կոմիտեներում փորձ կուտակվում է, բայց դեռ դանդաղ: Վերակառուցման փորձը ցույց է տալիս, որ այնտեղ, ուր մոտ են կանգնած մարդկանց, քիչ են թղթերը, ուր հրաժարվում են բյուրոկրատիզմից և ճեշտը դնում կազմակերպչական ու քաղաքական կենդանի աշխատանքի վրա, գործերն ավելի լավ են ընթանում, և՝ ընդհակառակն:

Մեր կուսակցական աշխատողները, այդ թվում՝ Կենտկոմի ապարատի, դեռևս քիչ են լինում տեղերում, դանդաղ են ազատվում աշխատանքի թղթարարական ոճից: Ներկա պայմաններում կադրերը պետք է հարցեր լուծեն և ոչ թե խոսեն, գործեն ակտիվորեն և նպատակասլաց և ոչ թե բանաձևեր գրեն ամեն առիթով:

Հարկ է մեկ անգամ ևս ուշադրություն հրավիրել տեղերում տիրող վիճակի խոր ուսումնասիրության և իմացության անհրաժեշտության վրա: Չէ որ մեզանում դեռ կան ընկերներ, որոնք, չխորանալով պրոբլեմների մեջ, չլսելով տեղերում կոնկրետ աշխատողների կարծիքը, «թոցրած» պատահական փաստերի հիման վրա եզրակացություններ են անում, տալիս են հապճեպ հանձնարարականներ ու խորհուրդներ, երբեմն էլ «ցուցումներ» վերադաս ատյանի անունից: Նման վարքագիծը կարելի է բնութագրել՝ փոխելով հայտնի ասացվածքը մոտավորապես հետևյալ կերպ. եկա, տեսա, ուսուցանեցի:

Ջանալ հասկանալ աշխատողներին տեղերում, պրոբլեմի էությունը և ոչ թե խրատներ կարդալ, օգնել խնդիրների լուծմանը և ոչ թե «արժեքավոր ցուցումներ» շռայլել, սկզբունքային կուսակցական գնահատական տալ թերություններին, կադրերի ուշադրությունը հրավիրել չլուծված հարցերի, արագացման կուրսի իրացման գործում թույլ տրված կոնկրետ վրիպումների վրա, օգնել նրանց վերակառուցվելու և ոչ թե հարմարվելու՝ ահա թե որն է խնդիրը: Այստեղ պետք է ղեկավարվել այն ցուցումով, որ «վերակառուցումը ոչ թե շարքային, մենաժամանակյա ակտ է, այլ մի այնպիսի պրոցես, որն ընթանալու է որոշակի պատմական ժամանակահատվածի շրջանակներում»:

Զարգացման հարցերի լուծման նպատակով նոր մոտեցումներ մշակելու գործում կադրերին օգնելը կուսակցական կազմակերպությունների և կոմիտեների առաջնային պարտականությունն է:

Մենք ապրում ենք բեկումնային ժամանակներում: Երկիրը թևակոխել է իր զարգացման շատ կարևոր փուլը: Եվ, ինչպես նշել է ընկ. Մ. Ս. Գորբաչովը, եթե մենք բոլորս միշտ հիշենք ներկա պահի կարևորությունը, մեր ճակատագրի, մեր երկրի համար դրա բեկումնային նշանակությունը, մեզ ավելի հեշտ կլինի գիտակցել ամենօրյա աշխատանքի նշանակությունը, որը մեզանից յուրաքանչյուրը կատարում է, տեսնել մեծը ամենափոքրի մեջ, ամենասովորականի մեջ:

Կուսակցական կազմակերպությունները և կոմիտեները պետք է իրենց գաղափարախոսական, քաղդաստիարակչական աշխատանքը նպատակամղեն հենց այն բանին, որ մենք ամենուրեք հասնենք վերակառուցման, որ հանրապետության ամեն քաղաքացի իր դիրքորոշմանը, իր հայացքներին, իր մոտեցումներին ու գնահատականներին նայի այն տեսանկյունից, թե դրանք որքանով են համընկնում ժամանակի պահանջին, և ակտիվորեն վերակառուցվի: Ոչ ոք չպետք է խուսափի վերակառուցումից: Ոչ ոք և ոչինչ չի կարող կասեցնել այդ պրոցեսը: Գտնել իր տեղը դրանում, ակտիվորեն վերակառուցվել՝ պարտավոր է ամեն ոք և որքան արագ և խորը, այնքան ավելի լավ մեր ընդհանուր գործի համար:

Ինչպես պահանջում է ՍՄԿԿ Կենտկոմը, մենք պետք է Կենտկոմում, կուսակցության քաղկոմներում, շրջկոմներում, սկզբնական կուսակցական կազմակերպություններում վերլուծենք յուրաքանչյուր աշխատավորական կոլեկտիվում, ղեկավարման ու կառավարման բոլոր մակարդակներում տեղի ունեցող վերակառուցման ընթացքը, դրան ավելի մեծ թափ հաղորդենք, հասնենք այն բանին, որ յուրաքանչյուր տեղամասում գործերը փոխվեն դեպի լավը, մարդիկ իրենց վստահ զգան, եռանդագին գործեն: Անհրաժեշտ է ուժեղացնել վերահսկողությունը ներքևից, ժողովներում և մամուլի էջերում արծարծել այն հրատապ հարցերը, որոնք մտահոգում են ռեգիոնի, ճյուղի, ձեռնարկության թե՛ կոմունիստներին և թե բոլոր աշխատավորներին:

Կուսակցական կոմիտեներն իրենց գործունեության բովանդակ ոճով պետք է վերակառուցման օրինակ ցույց տան հասարակությանը, խթանեն այն ամենը, ինչ



նպատակամղված է թերությունների շտկմանը, ինչ իր հետ բերում է արժեքավոր առաջարկություններ ու փորձ:

Իսկ մի՞թե կարող է օրինակ ծառայել այն, որ կուսակցության որոշ քաղկոմներ ու շրջկոմներ տեղերում կենդանի կազմակերպչական աշխատանքի փոխարեն առաջվա պես տարված են մեծ քանակությամբ որոշումներ ընդունելով, զանազան տեղեկանքներ կազմելով, անհարկի տեղեկություններ հավաքելով: Միայն ընթացիկ տարվա հինգ ամսում Ապարանի շրջկոմը (քարտուղար՝ ընկ. Ծ. Ալեքսանյան) բյուրոյի նիստերում քննարկել է 55 հարց կամ 15-ով ավելի, քան անցած տարվա համապատասխան ժամանակամիջոցում: Մաշտոցի շրջկոմում (քարտուղար՝ ընկ. Ռ. Վարդանյան) տարված են պետական հաշվետվությամբ չնախատեսված տվյալներ հավաքելով:

Վերլուծությունը ցույց է տալիս, որ կուսակցական կոմիտեների բյուրոների նիստերում շատ հարցադրումներ պայմանավորված չեն հույժ անհրաժեշտությամբ: Միևնույն ժամանակ որոշ սկզբունքային հարցերի առթիվ ընդունված որոշումները կրում են ընդհանուր, ոչ կոնկրետ բնույթ: Սկզբնական կուսկազմակերպությունների ժողովների օրակարգերը գերբեռնված են տնտեսական հարցերով:

Կուսակցական շատ կոմիտեներ դեռևս թույլ են ղեկավարում սկզբնական կուսկազմակերպությունների գործունեությունը, նրանց չեն նպատակամղում գործարարության և սկզբունքայնության, մնզիջում պայքարի այն ամենի դեմ, ինչը խանգարում է վերակառուցմանը, գործի բարելավմանը: Մի՞թե այդ մասին չի խոսում հետևյալ օրինակը: Անցած տարի Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհուրդը նշեց թեթև արդյունաբերության, առևտրի մինիստրությունների և Հայկոոպի աշխատանքում տեղ գտած լուրջ թերությունները: Սակայն այդ գերատեսչությունների կուսակցական կազմակերպություններն անցան այդ փաստի կողքով, իրենց ժողովներում քննադատորեն չվերլուծեցին ստեղծված վիճակը:

Որոշ կուսակցական կազմակերպություններում կոմունիստներն իրենց չեն զգում դրության տեր, գործերի վիճակի համար պատասխանատու, հարկ եղածին պես չեն վերահսկում տնտեսական ղեկավարների գործունեությունը, ակտիվորեն չեն ներգրավվում կուսակցական բարոյականության նորմերից կատարվող ամեն կարգի շեղումների դեմ մղվող պայքարում:

Սկզբնական կուսկազմակերպությունների ակտիվության և նախաձեռնության վրա բացասաբար է անդրադառնում նաև այն հանգամանքը, որ մի շարք վայրերում կուսակցական կոմիտեները չափից ավելի հաճախ են հարցեր հանձնարարում սկզբնական կուսկազմակերպություններում քննարկելու համար: Օրինակ, Գորիսի կուսշրջկոմը (քարտուղար՝ ընկ. Ռ. Ալեքսանյան) վերջին մեկուկես տարում կուսկազմակերպություններին հանձնարարել է քննարկել իր 150-ից ավելի որոշումներ: Ծահումյանի շրջանում (քարտուղար՝ ընկ. Ռ. Թովմասյան) ընթացիկ տարում 219 սկզբնական կուսկազմակերպություններից յուրաքանչյուրի ժողովներում քննարկված հարցերի ավելի քան 90 տոկոսը հանձնարարել է կուսշրջկոմը:

Վերջին մեկուկես տարում Կրասնոսելսկի շրջկոմում (քարտուղար՝ ընկ. Ս. Նազինյան), ի կատարումն վերադաս կուսակցական մարմինների որոշումների, ընդունվել է 170 որոշում, ինչը կազմում է բյուրոյի նիստերում քննարկված բոլոր հիմնական հարցերի համարյա երեք քառորդը: Նույնանման պատկեր է նկատվում Աբովյանի, Ապարանի, Կամոյի, Մարտունու, Էջմիածնի և այլ կուսշրջկոմներում:

Օրակարգերի նման կանոնակարգումը վերևից կուսակցական կազմակերպություններին հաճախ կանգնեցնում է իրենց պլանավորած հարցերը քննարկումից հանելու կամ դրանք հետաձգելու անհրաժեշտության առջև: Լենինյան (քարտուղար՝ ընկ. Ռ. Հակոբյան), Մյասնիկյանի (քարտուղար՝ ընկ. Գ. Մուրադյան), Ամասիայի (քարտուղար՝ ընկ. Ի. Բաղիրով), Բաղրամյանի (քարտուղար՝ ընկ. Հ. Մինասյան) և այլ շրջանների կուսակցական կազմակերպություններում սեփական նախաձեռնությամբ քննարկված հարցերի տեսակարար կշիռը նկատելիորեն պակասել է:

Անիի (կուսշրջկոմի քարտուղար՝ ընկ. Ս. Նազարյան), Ծամշադինի (կուսշրջկոմի քարտուղար՝ ընկ. Հ. Քոսակյան), Ղուկասյանի (կուսշրջկոմի քարտուղար՝ ընկ. Վ. Իսրայելյան), Մեղրու (կուսշրջկոմի քարտուղար՝ ընկ. Ա. Հարությունյան) և Կալինինոյի (կուսշրջկոմի քարտուղար՝ ընկ. Վ. Եղիազարյան) շրջանների սկզբ-

նական կուսկազմակերպությունների ժողովներում քննարկման են դրվում 2—3-ական և ավելի հիմնական հարցեր: Պարզ չէ՞, ընկեր քարտուղարներ, որ դրանից արդյունք չի ստացվի: Շատ տեղերում կուսակցական ժողովների օրակարգի մեջ դեռևս մըտցըվում են ոչ քիչ թվով զուտ տնտեսական հարցեր կամ էլ միևնույն հարցերը քըննարկվում և՛ կուսակցական, և՛ աշխատավորական կոլեկտիվների ժողովներում:

Կուսակցության քաղկոմները և շրջկոմները պետք է սիստեմատիկաբար վերլուծեն ժողովների հրավիրման պրակտիկան, սկզբնական կուսակցական կազմակերպությունների քարտուղարներին գործնական օգնություն ցույց տան ժողովների պլանավորման, նախապատրաստման գործում, կուսակցական կազմակերպությունների գործունեությունը գնահատեն ոչ թե քննարկված հարցերի, անցկացված միջոցառումների քանակով, այլ աշխատանքի կոնկրետ արդյունքներով:

Վերակառուցումը ենթադրում է բոլոր կազմակերպություններում թերությունների, հանդիսամոլության և դատարկաբանության նկատմամբ անհանդուրժողության մըթնոլորտի հաստատում: Դրան հասնելու կարևոր գործոն են քննադատությունն ու ինքնաքննադատությունը: «Նշման համար» քննադատությունից, կիսատ-պռատ ակնարկներով արվող քննադատությունից օգուտը քիչ է: Մեզ մոտ դեռևս ոչ բոլոր կուսկազմակերպություններում է ստեղծված քննադատության մթնոլորտ, միշտ չէ, որ կոմունիստները կոնֆերանսների, պլենումների, ժողովների ամբիոններն օգտագործում են ցավոտ հարցերի մասին անկեղծ խոսակցության համար: Հաճախ քննադատությունը լինում է առավելապես վերևից, իսկ ներքևից արվում է հարթեցված ձևով, հանգեցվում խնդրանքների:

Այսպես, Հրազդանի շրջանային կուսկազմակերպության հաշվետու-ընտրական կոնֆերանսում 18 ելույթներից ոչ մեկում քննադատություն չարվեց կուսշրջկոմի, նրա քարտուղարների, բաժինների հասցեին: Ելույթներում չկար նաև քննադատություն սեփական կուսակցական կազմակերպությունների հասցեին:

Հանրապետությունում շարունակվում է կուսակցական հաշվետու-ընտրական կամպանիան, որն առաջինն է կուսակցության XXVII համագումարից հետո, ընթանում է քննադատության և ինքնաքննադատության մթնոլորտում, կոմունիստների ուշադրությունը նպատակամղում վերակառուցմանը, սոցիալ-տնտեսական զարգացումն արագացնելու հարցերի լուծմանը:

Հանրապետության կուսակցական կազմակերպություններում տեղի ունեցող հաշվետվությունների և ընտրությունների ընթացքը ցուցադրում է կոմունիստների խըստապահանջության աճած մակարդակը կուսկազմակերպությունների, նրանց քարտուղարների աշխատանքի նկատմամբ: Իրենց կուսկազմակերպությունների քարտուղարների աշխատանքի նկատմամբ խիստ պահանջկոտություն հանդես բերեցին Լենինականի կոմպրեսորների գործարանի հավաքման արտադրամասի, Երևանի առևտրի վարչության պարենային բազայի, Շորժայի երկաթուղային կայարանի կոմունիստները՝ այդ աշխատանքը գնահատելով անբավարար:

Սակայն ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ ժողովները ամենուրեք չէ, որ անցել են պահանջկոտության, անկեղծության, կարծիքների գործարար փոխանակման մթնոլորտում: Կուսակցական կոմիտեները պետք է եզրափակիչ փուլում հաշվի առնեն այս հանգամանքը և կուսակցական կազմակերպություններին օգնեն ժողովներն անցկացնելու կազմակերպական ու քաղաքական բարձր մակարդակով:

Մեզանում դեռևս քիչ չեն տնտեսական գործունեության այնպիսի տեղամասերը, որտեղ թույլ են տրվում պետական կարգապահության խախտումների, զանազան չարաշահումների, անտնտեսվարության, աչքակապության փաստեր: Վերակառուցումը, նորացման պրոցեսը առայժմ ամենուրեք չէ, որ ընթանում է պատշաճ մակարդակով, որոշ տեղերում դրսևորվում են ինքնահանգստացման փաստեր, բավարարվում են աննշան հաջողություններով, այնպես որ քննադատելու, շտկելու շատ բաներ կան: Իսկ այս գործում գլխավոր դերը պատկանում է սկզբնական կուսակցական կազմակերպություններին:

Մեր ինչպես հանրապետական, այնպես էլ տեղական մարմիններում և կազմակերպություններում դանդաղորեն և առանց հարկ եղած հաստատակամության է արմատախիլ արվում թղթաբարության մերժելի պրակտիկան, շարունակվում է կենդանի կազմակերպական աշխատանքի նենգափոխումը բազմաթիվ հրամանների,



հրահանգների արձակումով, բազմաթիվ խորհրդակցությունների անցկացումով:

Թղթաբարության և գրասենյակայնության դեմ կուսակցական կոմիտեների ու կազմակերպությունների պայքարը պետք է դիտվի որպես աշխատանքից բյուրոկրատիզմը և ֆորմալիզմը արմատախիլ անելու պարտադիր պայման: Այդ պայքարը պետք է մղել ամենուրեք, միաժամանակ վերևից ու ներքևից, որպեսզի ընդգրկվեն կառավարման ու ղեկավարման բոլոր օղակները, որպեսզի պայքարը միակցվի արտադրական կոլեկտիվներում կատարվող վերակառուցման հետ:

Անհրաժեշտ է նվազագույնի հասցնել հաստիքները, հանձնաժողովները, նիստերն ու խորհրդակցությունները, խստիվ կանոնակարգել դրանց անցկացման ժամանակը, մասնակիցների, տեղերից կանչվողների թիվը:

Պետք է առաջնահերթ ուշադրություն նվիրել այն նամակներին, որոնցում բարձրացվում են սոցիալական ու տնտեսական հրատապ պրոբլեմներ: Այդ նամակները հարկավոր է օգտագործել Կենտկոմում և Մինիստրների խորհրդում քննարկվող հարցերը նախապատրաստելիս:

Պետք է ավելի լայնորեն կիրառել ահազանգերի ու գանգատների ստուգումը տեղերում: Սա առավել ևս կարևոր է այն պատճառով, որ մի շարք վայրերում չեն կատարվում դիմումներն ու գանգատները համակողմանիորեն, անաչառ և ժամանակին ստուգելու պահանջները:

Այսպես, 1985—86 թվականներին Հայաստանի կոմկուսի Կենտկոմում Մարտունու շրջանի Վաղաշեն գյուղից մի շարք դիմումներ էին ստացվել այն մասին, որ սովխոզի դիրեկտոր Բ. Խաչատրյանը և գյուղսովետի գործկոմի նախագահ Կ. Աբրահամյանը չարաշահում են իրենց պաշտոնեական դիրքը: Ահազանգերի ստուգումը երկու անգամ հանձնարարվեց Մարտունու կուսշրջկոմին, որը Հայաստանի կոմկուսի Կենտկոմին հաղորդեց, թե դրանք իրականությանը չեն համապատասխանում: Ավելին, շրջկոմը սովխոզի դիրեկտոր Բ. Խաչատրյանին բնութագրել էր որպես դրական աշխատողի: Այնուամենայնիվ, Կենտկոմը դարձյալ ստանում էր համանման բովանդակությամբ նոր նամակներ:

Հայաստանի կոմկուսի Կենտկոմի հանձնարարությամբ հանրապետության պետագրոարդի հանձնաժողովը, տեղում ուսումնասիրելով նամակներում բերված փաստերը, բացահայտեց սովխոզի ֆինանսատնտեսական գործունեության լուրջ վրիպումներ ու թերություններ, տնամերձ հողամասեր բաշխելիս թույլ տված օրինականության խախտումներ: Միայն դրանից հետո Մարտունու կուսշրջկոմը բյուրոյի 1986 թվականի հուլիսի 8-ի որոշմամբ սովոզի դիրեկտորին ազատեց զբաղեցրած պաշտոնից, իսկ ժողովրդական դեպուտատների շրջանային սովետի գործկոմը խիստ նկատողություն հայտարարեց Վաղաշենի գյուղսովետի գործկոմի նախագահ ընկ. Կ. Աբրահամյանին, որը մինչ այդ փոխադրվել էր ժողովրդական վերահսկողության շրջանային կոմիտեի տեսուչի ոչ պակաս պատասխանատու պաշտոնին: Բայց, ընկերներ, հարց է ծագում. ինչո՞ւ փաստին չի տրվել կուսակցական գնահատական, այդ ինչպե՞ս է եղել, որ շրջկոմը, քանիցս ստուգելով նույն ահազանգերը, ի հայտ չի բերել օրինականության խախտումները: Կարելի է այն հետևությունն անել, որ Վաղաշենի սովխոզի գործունեության վերաբերյալ նամակների փաստերն ստուգած շրջանային մարմինների աշխատողները կամ ձեռնհաս չեն եղել, կամ էլ միտումով չեն խորացել հարցի մեջ: Երկու դեպքերում էլ շրջկոմը և նրա առաջին քարտուղար ընկ. Ա. Ազիզյանը պետք է պարզեին, գնահատական տային դրան: Ասենք նաև, որ Կենտկոմի կազմակերպական-կուսակցական աշխատանքի, գյուղատնտեսության և սննդարդյունաբերության բաժինները ժամանակին անհրաժեշտ միջոցներ չեն ձեռնարկել ստացվող ահազանգերի առթիվ և երկար ժամանակ լոկ համաձայնել են շրջկոմի լիբերալ պատասխաններին:

Կոլեկտիվ և անհատական նամակների ու դիմումների, դրանց տրված պատասխանների վերլուծությունը ցույց է տալիս, որ բարձրացվող հարցերի մեծ մասի լուծումը նյութական խոշոր ծախսեր, կազմակերպական մեծ վերակառուցումներ չի պահանջում: Դրա համար բավական են իրոք զգայուն վերաբերմունքն ու հոգատարությունը աշխատավորության անհետաձգելի կարիքների նկատմամբ, ավելի բարեխըղճորեն կատարել ի պաշտոնե սահմանված պարտականությունները:

Իրոք, մի՞թե հանրապետության պետագրոարդի № 5 տրեստի № 3 ՇՄԿ-ի աշ-

խատողները պետք է բողոքով դիմեին Հայաստանի կոմկուսի Կենտկոմին, որպեսզի նրանց վճարեին հասանելիք երեք ամսվա ուշացված աշխատավարձը կամ արտադրական միավորումներից մեկի աշխատող Ն. Հարությունյանը պետք է դիմեր երեխայի խնամքի համար իր արձակուրդը երկարացնելու խնդրանքով: Դա նրանք ստիպված են եղել անելու, որովհետև տեղերում հարցերը չեն լուծվել: Եվ նման օրինակները, ցավոք, քիչ չեն:

Որոշ կուսակցական և սովետական մարմիններ հիմնական ջանքերը հաճախ կենտրոնացնում են գործի ձևական կողմի, յուրաքանչյուր նամակի քննության սահմանված ժամկետները պահպանելու վրա: Ընդ որում երբեմն տալիս են սին խոստումներ, շրջանցում սուր հարցերը: Միշտ չէ, որ համոզիչ են քաղաքացիների խնդրանքների նաև մերժումները: Այս ամենը այն պատճառներից մեկն է, որ հանրապետության կոմկուսի Կենտկոմն ընթացիկ տարվա ութ ամսում քաղաքացիներից ստացել է 1.065 կրկնադիմում:

Անհրաժեշտ է ասել նաև այն մասին, որ Կենտկոմի բաժինները մեծ թվով նամակներ հանրապետական ու տեղական կազմակերպություններին են վերահասցեագրել առանց վերահսկողություն հաստատելու դրանց կատարման նկատմամբ: Նրանք միշտ չէ, որ սկզբունքային գնահատական են տվել տեղերում նամակների նկատմամբ ցուցաբերված ձևական մոտեցմանը: Այս թերությունների վրա Կենտկոմի քարտուղարությունը խստորեն հրավիրել է ապարատի ղեկավար աշխատողների ուշադրությունը:

Այնտեղ, ուր կուսակցական, սովետական ու տնտեսական մարմինները զգայուն և հոգատար վերաբերմունք են ցուցաբերում մարդկանց ամենօրյա կարիքների ու պահանջմունքների նկատմամբ, օբյեկտիվորեն և օպերատիվորեն են լուծվում բարձրացվող հարցերը, վերադաս մարմինների հասցեով փաստորեն բողոքողներ չեն ուղարկվում: Ավելին, ստացվում են այնպիսի նամակներ, որոնցում մարդիկ իրենց շնորհակալությունն են հայտնում: Այդ են վկայում Ախուրյանի շրջանի մի խումբ վետերանների, Վարդենիսի շրջանի Դարա գյուղի դպրոցի ուսուցիչ Մայիս Աբասօղլի Ահմեդովի և շատ ուրիշների նամակները: Նրանք Կենտկոմին և կուսշրջկոմներին շնորհակալություն են հայտնում աշխատավորների բարօրության, բնակչության բժշկական, կոմունալ-կենցաղային սպասարկման և առևտրի ոլորտի հետագա զարգացման, արդյունաբերական, գյուղատնտեսական օբյեկտների բարեկարգման, կանաչապատման, դրանց կառուցման և ընդլայնման նկատմամբ ցուցաբերվող հոգատարության համար:

Քիչ չեն դեպքերը, երբ առանձին քաղաքացիներ կամ մարդկանց խմբեր նամակներով դիմում են վերադաս մարմիններին, բարձրացնելով այնպիսի հարցեր, որոնց առթիվ բազմիցս պատասխաններ են տրվել: Հաճախ առանձին քաղաքացիներ այս կամ այն հարցի իրենց սուբյեկտիվ մեկնաբանումները պարտադրում են ուրիշներին, հավաքում նշանավոր, հարգարժան գիտնականների, ստեղծագործական աշխատողների ստորագրություններ: Այն հարցին, թե դուք ինչո՞ւ եք ստորագրել այդ նամակը, չէ որ դուք մասնագետ եք, ըմբռնում եք այդ պրոբլեմը, պատասխանը հաճախ լինում է ծիծաղաշարժ. «Խնդրեցին՝ ստորագրեցի», կամ՝ «Բոլորը ստորագրել էին, ես էլ ստորագրեցի»: Չէ որ սա անսկզբունքայնություն է, ընկերներ: Կուսակցական կազմակերպությունները և կոմիտեները, իմանալով այս մասին, միջոցներ չեն ձեռնարկում կասեցնելու այդ երևույթը, հարկ եղած բացատրական աշխատանք չեն կատարում դիմողների հետ, կարգի չեն հրավիրում նրանց, ովքեր չարաշահում են տարբեր ինստանցիաների դիմելու իրավունքը՝ նրանց ուղարկելով բազմաթիվ նամակներ, որոնք պարունակում են զանազան անհիմն և անապացույց առաջարկություններ ու անվանարկություններ:

Մի հարցի մասին ևս: Ճիշտ խորհուրդ է տրվում՝ սովորել ապրել դեմոկրատացման և հրապարակայնության պայմաններում: Նախ՝ յուրաքանչյուր աշխատող, հատկապես ղեկավարը պետք է սովորի լսել նաև այն ժամանակ, երբ դա հաճելի չէ: Այստեղ հարկավոր է խոր և համոզված դեմոկրատիզմ: Եվ ապա՝ պետք է կարողանալ ճիշտ ընկալել քննադատությունը, խուճապի չենթարկվել, երբ քննադատում են թերությունները, այլ անել համապատասխան հետևություններ և հաստատակամորեն ձեռնամուխ լինել քննադատվող երևույթների շտկմանը: Այստեղ նաև հար-



կավոր է ոչ միայն նրանց որոշակի հոգեբանական շրջադարձը, ում քննադատում են, այլև մյուսներինը, ովքեր իմանում կամ լսում են, որ այսինչին քննադատել են: Այդպիսի շրջադարձի էությունն այն է, որ թերությունների յուրաքանչյուր քննադատություն չդիտեն որպես զբաղեցրած պաշտոնից հանելու ազդանշան, այլ այն ընկալեն որպես իրավիճակը բարելավելու պահանջ: Իսկ ահա քննադատության մշտական անտեսումը, թերությունները վերացնելու ցանկության բացակայությունը կամ անճարակությունը իրոք կարող են կազմակերպչական եզրակացության հանգեցնել:

Այսօր ամենագլխավորը համագումարի որոշումների կենսագործման կենդանի, գործնական աշխատանքով անհապաղ զբաղվելն է: Կարևոր է, որ այդ աշխատանքի մեջ ամբողջ ուժով ընդգրկվեն կուսակցական կազմակերպության բոլոր օղակները, որ մեր գործունեությանը նայենք կուսակցական թարմ հայացքով, ճիշտ տեղաբաշխենք ուժերը, վերացնենք վերակառուցումն արգելակող գործոնները, վարենք ամենառողջի պաշտպանության գիծ, պայքարենք այն ամենի դեմ, ինչը խանգարում է այդ պրոցեսին:

Ընկերնե՛ր:

Գաղափարախոսական աշխատանքը կուսակցության գործունեության գլխավոր ուղղություններից է: Այն ընդգրկում է հասարակական կյանքի ըստ էության բոլոր ոլորտները, բարդ է ու բազմազան, ինչպես ինքը՝ իրականությունը: Բարդ ու բազմազան են այդ աշխատանքի խնդիրները, և դրանք կատարելու համար մեր գաղափարախոսական բանակը պետք է գործի ստեղծագործաբար, եռանդագին ու հետևողականորեն, աշխատի լիակատար հատույցով:

Ամրապնդելով գաղափարախոսական աշխատանքի կապը կյանքի հետ, պետք է խելամիտ և հետևողականորեն ձևավորել ներդաշնակորեն զարգացած, հասարակականորեն ակտիվ անհատի՝ արարողի և կերտողի հոգևոր հիմքը, մարդու, որը կոչված է իրագործել կուսակցության կանխանշած հեղափոխական վերափոխումները, համակողմանի նորացման նրա կուրսը, սովետական հասարակության սոցիալ-տնտեսական արագ առաջադիմությունը:

Ոգեշունչ, մեծ նպատակ: Եվ այդ նպատակին ծառայելը, դրան հոգու ողջ ավյունի, եռանդի, տաղանդի, փորձի նվիրաբերումը մեր բոլոր գաղափարախոսական աշխատողների, մեր բոլոր կոմունիստների, մեր ամբողջ կուսակցական կազմակերպության պարտքն է: **(Բուռն ծափահարություններ)**:

# ՀՈԿՏԵՄԲԵՐԻ ԴՐՈՇՈՎ, ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ ԿՈՒՐՍՈՎ

ՎԱԹՍՈՒՆԻՆԸ ՏԱՐԻ է ԱՆՑԵԼ այն անմոռանալի օրից, երբ մարդկության պատմության մեջ կատարվեց առաջին պրոլետարական հաղթական հեղափոխությունը: Մեծ Հոկտեմբերը հիմնովին փոխեց բովանդակ աշխարհի զարգացման ընթացքը, սկզբնավորեց հողագնդի սոցիալիստական նորացման պրոցեսը: Հիրավի, տեղի ունեցավ անկասելի անցում կապիտալիզմից դեպի սոցիալիզմ, Վ. Ի. Լենինի խոսքերով ասած՝ «պատմության մեջ մեծագույն, դժվարագույն անցում» (Վ. Ի. Լենին, ԵԼԺ, հ. 35, էջ 313):

Պատմության փորձը, սոցիալական առաջընթացի փորձը վկայում են, որ փշոտ է առաջամարտիկների ուղին, որ նոր կյանքը չի հաստատվում առանց որոնումների և պայքարի: Դժվարությունները, որքան էլ դրանք մեծ են եղել, լենինյան փառապանծ գվարդիային, նրա ետևից գնացող աշխատավորական զանգվածներին չզգեցին վհատության, հուսահատության ու տատանումների գիրկը, այլ ծնեցին ստեղծագործելու մեծ եռանդ, նրանց համոզեցին, որ անհրաժեշտ է «պողպատի նման լարել բոլոր ուժերը՝ նոր ստեղծագործական աշխատանքի վրա գործադրելու համար, որովհետև միայն երկաթե տոկունությունն ու աշխատանքային կարգապահությունը կօգնեն Ռուսաստանի հեղափոխական պրոլետարիատին» (Վ. Ի. Լենին, ԵԼԺ, հ. 36, էջ 286):

Հոկտեմբերի դրոշի ներքո բանվոր դասակարգը, բոլոր աշխատավոր զանգվածները կոմունիստների ղեկավարությամբ իրականություն դարձրին այն, ինչ թվում էր անիրականանալի: Եվ այսօր մեր նվաճումների վեհաշուք գագաթներից ավելի ակնբախ են երևում լուծվող խնդիրների բնույթն ու մասշտաբները, սոցիալիստական հասարակության զարգացման հեռանկարները:

Յոթ տասնամյակում մեր երկրի անցած ուղին մի ամբողջ դարաշրջան է: Մարդկությունը, թերևս, հայտնի չէ այդպիսի շեշտակի թռիչք՝ հետամնացությունից, աղետների ու քայքայման վիճակից դեպի ժամանակակից մեծ տերության հզորությունը՝ կուլտուրայի բարձրագույն մակարդակով և ժողովրդի հարաճուն բարեկեցությամբ: Սոցիալական հակամարտությունների հետ մեկտեղ անցյալի գիրկն անցան ազգային երկպառակությունները, ռասայական և ազգային ճնշման բոլոր տեսակները: Սովետական հանրապետությունների դինամիկ, պլանաչափ ղեկավարվող տնտեսական աճի բազայի վրա կազմավորվել է միասնական-միութենական ժողովրդատնտեսական համալիր: Որակապես փոխվել է հանրապետությունների սոցիալական կառուցվածքը, նրանցից յուրաքանչյուրում հասակ է առել ժամանակակից բանվոր դասակարգ, նոր, կոլտնտեսային ուղիով է ընթանում գյուղացիությունը, ստեղծվել է սեփական մտավորականություն, դաստիարակվել են որակյալ կադրեր՝ պետական և հասարակական կյանքի բոլոր բնագավառներում: Առաջադիմական ավանդույթների, հոգևոր արժեքների ինտենսիվ փոխանակման հիման վրա ծաղկել է բազմազգ սոցիալիստական կուլտուրան: Ձևավորվել են սոցիալիստական ազգեր, որոնք այժմ կազմում են պատմական նոր հանրություն՝ սովետական ժողովուրդ: Առավել սերտորեն են միահյուսվում հանրապետությունների շահերը, ավելի բեղմնավոր են դառնում փոխօգնությունը, փոխադարձ կապերը, որոնք միասնական հունի մեջ են միավորում Սովետական Միության ազգերի և ազգությունների ստեղծարար ջանքերը: Մեր երկրում սոցիալիստական ազգերից յուրաքանչյուրի համակողմանի զարգացումն օրինաչափորեն տանում է դեպի նրանց ավելի սերտ մերձեցում:



1920 թ. նոյեմբերին Հոկտեմբերի ազատարար դրոշը ծածանվեց նաև Հայաստան աշխարհում՝ ազգային ու սոցիալական վերածննդի լայն հեռանկարներ բացելով մեր բազմաչարչար ժողովրդի համար:

Այսօր հայ ժողովուրդը մեր մեծ հայրենիքի մյուս ժողովուրդների հետ մեկտեղ գնում է դեպի փառապանծ հոբելյանը՝ Մեծ Հոկտեմբերի 70-ամյակը: Սովետական Հայաստանի աշխատավորներն այդ հիանալի տարելիցը դիմավորում են հանրապետության տնտեսական, սոցիալական ու հոգևոր կյանքի բոլոր բնագավառներում ձեռք բերած խոշոր նվաճումներով: Սովետական իշխանության տարիներին ստեղծվել են ինդուստրիայի բազմաթիվ ժամանակակից ճյուղեր՝ քիմիական արդյունաբերությունը, էլեկտրատեխնիկական մեքենաշինությունը, սարքաշինությունը, ռադիոէլեկտրոնիկան: Ըստ էության նոր հիմքի վրա են զարգացել գունավոր մետալուրգիան, թեթև և սննդի արդյունաբերությունը:

Արմատապես փոխվել է հայկական գյուղը: Մեկընդմիշտ անցյալի գիրկն են անցել խղճուկ հողակտորներ ունեցող և մշտական, անհույս կարիքի մեջ գտնվող գեղջկական մանր տնտեսությունները: Ստեղծվել և հաջողությամբ զարգանում է առաջավոր տեխնիկայի, կոլեկտիվ աշխատանքի վրա հիմնված կոլտնտեսային-սովխոզային խոշոր արտադրությունը: Հողագործի առջև բացվել են սոցիալական ու հոգևոր ծաղկման լայն հորիզոններ, նա դարձել է իր նոր, սոցիալիստական կյանքի ակտիվ կերտողը:

Հենվելով սոցիալիզմի ստեղծած հասարակական նոր հիմքի վրա, սովետական եղբայր ժողովուրդների օգնության վրա՝ հայ ժողովուրդը ակնառու հաջողությունների է հասել գիտության ու մշակույթի զարգացման ամենատարբեր ասպարեզներում: Հանրապետությունում հաշվվում է ավելի քան 100 գիտական հիմնարկություն: Դրանցում 21,5 հազար մարդ աշխատում է ժամանակակից գիտության գրեթե բոլոր հիմնական ուղղությունների գծով: Բնակչության 10 հազար մարդուն ընկնող գիտական կադրերի թվով Հայկական ՍՍՀ-ն միութենական հանրապետությունների մեջ (ՌՍՖՍՀ-ից հետո) գրավում է երկրորդ տեղը:

Սովետական իշխանության տարիներին իրականացված տնտեսական, մշակութային ու սոցիալական խոր վերափոխումները Սովետական Միության կոմունիստական կուսակցության և նրա մարտական ջոկատներից մեկի՝ Հայաստանի կոմունիստական կուսակցության ստեղծարար ու կազմակերպչական հսկայական գործունեության արդյունքն են:

Մեր կուսակցության ու երկրի կյանքում պատմական ուղենիշ հանդիսացավ ՍՄԿԿ XXVII համագումարը, որը մարքսիզմ-լենինիզմի ամենահաղթ ուսմունքի հիման վրա խորապես վերլուծեց ժամանակակից աշխարհի հիմնական միտումներն ու հակասությունները, լենինաբար շիտակ ու պարզորոշ պատասխաններ տվեց մեր կյանքի արդի փուլի ամենասուր ու ամենաբարդ հարցերին, կուսակցությանը, սովետական ժողովրդին զինեց մեր հասարակությունը որակապես նոր վիճակի հասցնելու գործողությունների գիտականորեն հիմնավորված, հիրավի հեղափոխական ծրագրով:

Համագումարը նշեց երկրի հետագա համակողմանի առաջադիմության բարձր բնագծեր, մշակեց կուսակցության ստրատեգիական կուրսը՝ երկրի սոցիալ-տնտեսական զարգացման արագացման քաղաքականությունը, որը նախատեսում է արտադրության համակողմանի ինտենսիվացում, գիտատեխնիկական առաջադիմության ու նրա նվաճումների ներդրման ակտիվացում, էկոնոմիկայի կառավարման, աշխատանքի կազմակերպման արդյունավետ ձևերի ներդրում:

Արագացման կուրսը նախատեսում է ակտիվ սոցիալական քաղաքականության իրականացում, հասարակական հարաբերությունների կատարելագոր-



4. «Լենինյան ուղիով», № 11, 1986 թ.

ծում, քաղաքական ու գաղափարախոսական հաստատությունների աշխատանքի ձևերի ու մեթոդների նորացում, սոցիալիստական դեմոկրատիայի խորացում, իներցիայի, լճացածության ու պահպանողականության, այն ամենի վճռական հաղթահարում, ինչը կասեցնում է հասարակական առաջադիմությունը։

Համագումարից հետո կատարված աշխատանքի առաջին արդյունքները ցույց են տալիս, որ ինչպես ամբողջ երկրում, այնպես էլ մեր հանրապետությունում ՍՄԿԿ Կենտկոմի 1985 թվականի ապրիլյան պլենումի, կուսակցության XXVII համագումարի որոշումները խոր ազդեցություն են ունեցել տնտեսական, սոցիալական ու քաղաքական կյանքի, արագացման գլխավոր նախապայմանի՝ մասսաների ստեղծագործության զարգացման վրա։ Համագումարից հետո ստեղծված խստապահանջության, ճշմարտացիության մթնոլորտը մոբիլիզացնող ներգործություն է ունենում պրակտիկ գործերի վրա։

1986 թ. անցած ինը ամսում մեր հանրապետության արդյունաբերական արտադրանքի փաստացի աճը կազմեց 5,1 տոկոս։ Իրացման պլանը կատարվել է 101,6 տոկոսով։ Պլանից ավելի թողարկվել է 191,9 միլիոն ռուբլու արտադրանք։ Արդյունաբերության մեջ աշխատանքի արտադրողականության աճը կազմել է 3,4 տոկոս։

Գերակատարվել է ժողովրդական սպառման ապրանքների արտադրության պլանը։ Տեղաշարժեր կան նաև ագրոարդյունաբերական համալիրում։ Պետագրոարդի ձեռնարկությունները և միավորումները տնտեսական գործունեության հիմնական ցուցանիշների մեծ մասի գծով կատարել են իրենց պլանային առաջադրանքները։

Հարկ է նշել, սակայն, որ ժողովրդական տնտեսության մի շարք ճյուղերում աճի ձեռք բերված տեմպերը ավելի դանդաղ են, քան մեր պոտենցիալ հնարավորություններն են։ Ամենուրեք չէ, որ արտադրության մեջ և սոցիալական ոլորտում տեղի են ունենում այն որակական վերափոխումները, որոնց անհրաժեշտությունն ընդգծվեց կուսակցության համագումարում։ Հանրապետության 46 արդյունաբերական ձեռնարկություններ ու միավորումներ չեն կատարել ապրանքային արտադրանքի թողարկման և 70-ը՝ իրացման ինը ամսվա պլանները։ Ձեռնարկությունների մեծ մասը (84,3 տոկոսը) կիրառել է մատակարարումների գծով պայմանագրային պարտավորությունների հաշվառմամբ արտադրանքի իրացման առաջադրանքի ցուցանիշը։ Այդ ձեռնարկությունները, ընդհանուր առմամբ, իրացման պլանը կատարել են 101,7 տոկոսով, սակայն մատակարարումների պայմանագրային պարտավորությունների հաշվառմամբ իրացման պլանը թերակատարվել է 1,5 տոկոսով։ Դանդաղ է աճում որակի բարձր կարգի արտադրատեսակների տեսակարար կշիռը արտադրանքի ընդհանուր ծավալում։ Լիովին չեն օգտագործվում էկոնոմիկայի ինտենսիվացման, տնտեսական գործունեության որակական ցուցանիշների արմատական բարձրացման առկա հնարավորությունները։ Մի շարք ճյուղերում անբավարար է հանրային արտադրության արդյունավետությունը, ռացիոնալ չեն օգտագործվում հիմնական ֆոնդերը, նյութական ռեսուրսները։ Շրջադարձը դեպի որակ, արդյունավետություն, դեպի կառավարման նոր մեթոդներ դանդաղ է տեղի ունենում։ Դա բացատրվում է նրանով, որ անբավարար է ընթանում աշխատանքի վերակառուցումը նոր սկզբունքներով։ Ամենուրեք չէ, որ մտածում ու գործում են նորովի, արագացման կատեգորիաներով։

ՍՄԿԿ Կենտկոմի 1986 թ. հունիսյան պլենումում նշվեց, որ մենք թևակոխել ենք հետհամագումարյան գործունեության մի այնպիսի փուլ, երբ պարտավոր ենք ցույց տալ վերակառուցվելու, նոր ձևեր ու մեթոդներ որոնելու, ձեռք բերվածով չհրապուրվելու կարողություն։ Տասներկուերորդ հնգամյակը վճռական փուլ է կուսակցության տնտեսական ստրատեգիայի իրագործման ճանապարհին։ Պլենումը քննադատաբար գնահատեց մեր աշխատանքի արդյունքները, մեր նվաճումները, բացահայտեց ժողովրդական տնտեսության տարբեր ճյուղերում, առանձին ուղղություններում ետ մնալու պատճառները,



որոշեց հետագա առաջընթացի հնարավորությունները։ Տասներկուերորդ հնգամյակը դինամիկ, բարձրարդյունավետ, գիտատեխնիկական առաջադիմության նկատմամբ առավելագույն չափով զգայուն էկոնոմիկայի անցնելու հնգամյակ է։ Դա աշխատանքի արտադրողականության շեշտակի բարձրացման, ռեսուրսների տնտեսման, թողարկվող արտադրանքի և կատարվող աշխատանքների որակի արմատական բարելավման հնգամյակ է։

Արագացման ստրատեգիան վճռականորեն մերժում է ամեն պասսիվություն և անտարբերություն, միևնույն ժամանակ՝ ամեն շտապողականություն, կամպանիականություն։ Անհրաժեշտ է կուսակցական, սովետական, տնտեսական, հասարակական կազմակերպությունների, աշխատավորական բոլոր կոլեկտիվների ջանքերն ակտիվորեն նպատակամղել էկոնոմիկայի զարգացման բարձր տեմպերի, արդյունավետության բարձր ցուցանիշների ձեռքբերմանը, սոցիալական ոլորտում դրական լուրջ փոփոխությունների իրականացմանը։ Այսօր հանգուցային խնդիրներից են ինվեստիցիոն և ստրուկտուրային քաղաքականության վերակողմնորոշումը, գործող ձեռնարկությունների վերակառուցմանն ու տեխնիկական վերազինմանն ուղղվող կապիտալ ներդրումների բաժնի մեծացումը, ինվեստիցիոն ցիկլի կրճատումը։

Ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում վերջին տասնամյակում ապահովված են հիմնական արտադրական ֆոնդերի արագ աճ և կուտակում։ Բայց միշտ չէ, որ քանակական աճը հանգեցրել է որակական փոփոխությունների։ Մեզանում իրականացվել է արդյունաբերության գիտատեխնիկական առաջադիմությունը որոշող ճյուղերի առաջանցիկ զարգացումը, սակայն քիչ ուշադրություն է նվիրվել ձեռնարկությունների վերակառուցմանն ու վերազինմանը, որի հետևանքով հիմնական ֆոնդերի նորացման պրոցեսը դանդաղ է ընթացել, վատացել է դրանց տարիքային ստրուկտուրան։

Մենք շատ ենք խոսում գիտատեխնիկական առաջադիմությունն արագացնելու մասին, սակայն նոր տեխնիկայի արմատավորման պլանները շարունակաբար չեն կատարվում։ Ամբողջությամբ վերցրած հանրապետությունում, օրինակ, նոր տեխնիկայի արմատավորման կիսամյա պլանը կատարվել է 83,7 տոկոսով, առաջադիմական տեխնոլոգիայի արմատավորմանը, արտադրական պրոցեսների մեքենայացմանն ու ավտոմատացմանը՝ 71,4 տոկոսով։ Առավել մեծ քանակությամբ չիրականացված միջոցառումներ կան ավտոմոբիլային, շինանյութերի, թեթև արդյունաբերության, շինարարության մինիստրությունների ձեռնարկություններում։ Ցածր է նոր տեխնիկայի վրա կատարվող ծախսումների արդյունավետությունը։ Այսպես, հանրապետության տարածքում գտնըվող կապի ձեռնարկություններում անցած հնգամյակի տարիներին այդ նպատակով կատարված ծախսումներն զգալիորեն գերազանցել են տնտեսական արդյունքը։

Փաստերը վկայում են, որ հանրապետության ձեռնարկություններում ու կազմակերպություններում վերակառուցման ու տեխնիկական վերազինման պրոցեսը դեռևս դանդաղ է ընթանում, էկոնոմիկայի ճյուղերի մեծ մասում գիտատեխնիկական առաջադիմությունը հիմնականում ունի էվոլյուցիոն բնույթ, ցածր է իրականացվող միջոցառումների հատույցը, անբավարար են օգտագործվում արդեն արդիականացված հիմնական ֆոնդերը։ Առանձնապես մեծ հետևողականություն է պահանջվում ինչպես նախատեսված միջոցառումների իրագործման, այնպես էլ արտադրական պոտենցիալի արդյունավետ օգտագործման հարցերում։ Անհրաժեշտ է լինել ավելի պահանջկոտ, բարձրացնել կուսակցական կոմիտեների ու կազմակերպությունների, սովետական ու տնտեսական մարմինների պատասխանատվությունն այդ գործում։ Պետք է մեծացնել գործող ձեռնարկությունների վերակառուցմանն ու վերազինմանը հատկացվող ներդրումների բաժինը, միջոցներն առաջին հերթին ուղղել այնտեղ, որտեղ դրանք կիրառվեն նորագույն տեխնիկայի բազայի վրա և կապահովեն պահանջվող տնտեսական հատույցը։ Այդ կապակցությամբ ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան պլենումում նշվեց, որ «հարկավոր է անհապաղ, ամենակարճ ժամկետներում փորձաքննության ենթարկել տեխնիկական վերազին-

ման ու վերակառուցման այն բոլոր նախագծերը, որոնք նախատեսված են իրականացնել տասներկուերորդ հնգամյակում։ Եվ վճռականորեն մերժել, արգելել այն նախագծերի իրականացումը, որոնք չեն համապատասխանի գիտատեխնիկական առաջադիմության արագացման խնդիրներին, իսկ ազատված ռեսուրսները հատկացնել առաջադիմական տեխնիկայի արտադրության զարգացմանը»։

Գործուն վերահսկողություն է պահանջվում գիտատեխնիկական մշակումների որակի, արտադրության մեջ դրանք ժամանակին ներդնելու նկատմամբ։ Այս ոլորտում ևս մենք լուրջ թերություններ ունենք։ Մասնավորապես, հանրապետության հաստոցաշինական շատ ձեռնարկություններում օտագործվում են նվազ արդյունավետ տեխնոլոգիա և հնացած տեխնիկա, որի հետևանքով ճյուղում սպառվող մետաղի մեկ երրորդը թափոն է դառնում։

Արդյունաբերական պոտենցիալի, առաջին հերթին՝ հիմնական արտադրական ֆոնդերի օգտագործման մակարդակը բարձրացնելու, ինչպես նաև աշխատունակ բնակչությանը էկոնոմիկայի հանրային սեկտորում լրացուցիչ կերպով ներգրավելու նպատակով ՀԿԿ Կենտկոմի 1986 թ. հուլիսյան պլենումը խնդիր դրեց կոնկրետ միջոցներ ձեռնարկել արդյունաբերական արտադրության հետագա ինտենսիվացման և երկհերթ աշխատանքի անցնելու՝ Լենինգրադի մարզային կուսակցական կազմակերպության փորձը հանրապետությունում ներդնելու համար։ Հաշվարկները ցույց են տալիս, որ միայն դրա շնորհիվ արդեն այս հնգամյակի վերջում, օրինակ, մեքենաշինության մեջ կարելի է լրացուցիչ թողարկել շուրջ 800 մլն ռուբլու արտադրանք, ստեղծել 40 հազար աշխատատեղ։

Հնգամյակի հիմնական խնդիրների լուծման գործում առաջատար դեր է պատկանում մեքենաշինությանը։ Այդ ճյուղը հանրապետությունում զարգանում է արագ տեմպերով։ Անցած տասը տարում մեքենաշինության արտադրանքն ավելացել է 1,5 անգամ ավելի արագ տեմպերով, քան ամբողջ արդյունաբերությունը։ Արդյունաբերության արտադրանքի ճյուղային կառուցվածքում մեքենաշինության և մետաղամշակման տեսակարար կշիռը 19,9-ից հասել է 30,3 տոկոսի։ Համեմատաբար կարճ ժամանակամիջոցում ձեռք բերված այսպիսի ցուցանիշները, անշուշտ, դրվատելի են։ Ընթացիկ հնգամյակում ևս նախատեսված են մեքենաշինության(1,7 անգամ) և նրա առաջադիմական ճյուղերի՝ ռադիոէլեկտրոնիկայի արդյունաբերության և սարքաշինության (1,9 անգամ) զարգացման բարձր բնագծեր։ Վերջիններիս բաժինը մեքենաշինության մեջ, 1985 թվականի 43,7 տոկոսի փոխարեն, հնգամյակի վերջում կհասնի 50,5 տոկոսի։ Տասներկուերորդ հնգամյակը հանրապետության մեքենաշինության մեջ կդառնա արմատական որակական փոփոխությունների հնգամյակ։ Կկառուցվեն ժամանակակից արտադրանք թողարկող նոր մեքենաշինական ձեռնարկություններ, կկատարվեն տեխնիկական վերազինման, արտադրական ապարատի նորացման, առաջադիմական, էներգախնայողական և ռեսուրսախնայողական տեխնոլոգիաների արմատավորման, գիտության ու արտադրության ինտեգրացման, հաշվողական տեխնիկայի միջոցների և ճկուն ավտոմատացված համակարգերի ներդրման, թողարկվող արտադրատեսակների տեխնիկատնտեսական պարամետրերի ու որակի բարձրացման աշխատանքներ։

Կուսակցության քաղաքականության բարձրագույն նպատակը սովետական մարդկանց բարեկեցությունը որակապես նոր աստիճանի բարձրացնելն է, նյութական, սոցիալական ու մշակութային արժեքների ստեղծման և սպառման այնպիսի մակարդակի ապահովումը, որն առավելագույնս համապատասխանի ներդաշնակորեն զարգացած, հոգեպես հարուստ անհատի ձևավորմանը, յուրաքանչյուրի ընդունակությունների, ձիրքերի ու տաղանդների առավել լրիվ բացահայտմանը։



Մեր հանրապետությունում սոցիալական լայն ծրագիր իրագործվեց տասնմեկերորդ հնգամյակի տարիներին։ Է՛լ ավելի բարձրացավ ժողովրդի բարեկեցությունը, բարելավվեցին մեր մարդկանց կենսապայմանները։ Բնակչության դրամական եկամուտներն ավելացան 29,7, սպառման հանրային ֆոնդերը՝ 27,4, անվճար սպասարկումները՝ 22,4 տոկոսով։ Մեկ շնչին ընկնող ռեալ եկամուտների աճը կազմեց 109,9 տոկոս։ Նյութական բարիքների ու սպասարկումների սպառման ընդհանուր ծավալի շուրջ մեկ երրորդն ապահովվել է հանրային ֆոնդերի հաշվին։ Քաղաքում մեկ բնակչին ընկնող բնակելի օգտակար մակերեսի միջին չափը ավելացել է 4,1 տոկոսով։ Քաղաքներում, ավաններում, գյուղական վայրերում կառուցվել է մեկ միլիոն 65 հազար քառակուսի մետր ընդհանուր մակերեսով անհատական բնակելի տուն։ Բարեկեցության բարձրացումն անբաժանելի է բազմազան ապրանքների և սպասարկումների նկատմամբ բնակչության պահանջմունքների ավելի ու ավելի լրիվ ապահովումից։ Հնգամյակի ընթացքում մանրածախ ապրանքաշրջանառությունն աճել է 16,9 տոկոսով։ Առևտրական մակերեսներն ընդլայնվել են 86 հազար քառակուսի մետրով, նստելատեղերի թիվը հասարակական սննդի համակարգում ավելացել է 55 հազարով։ Աճել է բնակչությանը վաճառվող ժողովրդական սպառման կարևորագույն ապրանքների քանակը, այդ թվում մսինը և մսամթերքներինը՝ 22,1 տոկոսով, կենդանական յուղինը՝ 10, կաթինն ու կաթնամթերքներինը՝ 18, կոշիկինը 35, կահույքինը՝ 29,6 տոկոսով։ 1985 թվականին 100 ընտանիքին ընկնում էր 101 սառնարան, 79 լվացքի մեքենա, 95 հեռուստացույց։ Հարբեցողության և ալկոհոլիզմի դեմ պայքարն ուժեղացնելու վերաբերյալ կուսակցության որոշումների հետևողական կենսագործման շնորհիվ բնակչությանը վաճառվող ալկոհոլային խմիչքների քանակը 1984 թվականի համեմատությամբ կրճատվեց 20 տոկոսով։

Սովետական Հայաստանի բնակչության կենսամակարդակի հետագա բարձրացման կարևոր փուլ է ընթացիկ հնգամյակը։ Ազգային եկամտի ընդհանուր ծավալի երեք քառորդը կհատկացվի անմիջականորեն ժողովրդի բարեկեցության բարձրացման նպատակներին։ Դա բնակչության մեկ շնչի հաշվով 16,2 տոկոսով ավելի է, քան նախորդ հնգամյակում։

Այսօր հատկապես կարևորվում է սոցիալական ենթակառուցվածքի առանձին ուղղությունների զարգացման արագացման անհրաժեշտությունը։ Խոսքը վերաբերում է այն ցուցանիշներին, որոնցով մենք ետ ենք մնում ընդհանուր միութենական մակարդակից։ Ընթացիկ հնգամյակում կոնկրետ միջոցառումներ են իրականացվում ետ մնալը հաղթահարելու նպատակով։

Մեծ ուշադրություն է նվիրվում առողջապահության ցանցի հետագա ընդլայնմանն ու նրա համակարգի բարելավմանը, մշակույթի օջախների աշխատանքների կատարելագործմանը, ֆիզիկական կուլտուրայի և սպորտի զարգացմանը։

Այսօր կուսակցությունը նոր, առավել լուրջ ու մասշտաբային խնդիրներ է առաջադրել՝ ըստ ամենայնի ավելացնել բնակարանների, սոցիալ-կուլտուրական օբյեկտների շինարարությունը, մինչև 2000 թվականը յուրաքանչյուր ընտանիքի ապահովել առանձին բնակարանով կամ անհատական տնով։ Այդ խնդիրը առանձնապես հրատապ է մեր հանրապետության համար։ Դրա իրագործման գլխավոր պայմաններից մեկը բնակարանային շինարարության պլանների կատարումն է։ Սակայն անցած կիսամյակում շահագործման է հանձնվել ընդամենը 272 հազար քառակուսի մետր բնակտարածություն կամ պլանը կատարվել է 92,1 տոկոսով։ Բայց չէ որ առաջին կիսամյակի պլանը տարեկանի ընդամենը 34,6 տոկոսն է կազմում։ Բարվոք չէ դպրոցների, պրոֆտեխուսումնարանների, մանկապարտեզների, հիվանդանոցների ու պոլիկլինիկաների շինարարության գործը։ Դրությունն արմատապես շտկելու համար անհրաժեշտ է հիմնավորապես կատարելագործել շինարարական ինդուստրիան, լայնորեն ներդնել առաջավոր փորձը, բարձրացնել ին-

վեստիցիոն պրոցեսի բոլոր մասնակիցների պատասխանատվությունը։ Մինչդեռ շինարարության ոլորտում դրական տեղաշարժ քիչ է նկատվում, թույլ է արդիականացվում նրա նյութական բազան։

Ինչպես հայտնի է, սոցիալիզմի օրոք աշխատավորների եկամուտների հիմնական աղբյուրը մնում է աշխատանքի վարձատրությունը։ Ուստի կուսակցությունը մշտապես կատարելագործում է աշխատավարձի համակարգը, որպեսզի այն լիովին հաշվի առնի աշխատանքի քանակն ու որակը, նրա պայմաններն ու արդյունքները, խթանի արտադրանքի որակի բարելավումը, ռեսուրսների բոլոր տեսակների տնտեսումը։ Դա է մարդկանց վաստակի ու կենսամակարդակի բարձրացման հիմքը։ Հանրային հարստության աճի համեմատ նախատեսվում է նվազագույն աշխատավարձի չափերի ավելացում, բնակչությունից գանձվող հարկերի պակասեցում։ Կուսակցությունը սկզբունքային նշանակություն է տալիս անաշխատ եկամուտների դեմ պայքարի ուժեղացմանը, եկամուտների ու բարիքների վերաբաշխման հակահասարակական ձևերը, պորտաբուծությունը, սպեկուլյացիան վճռականորեն արմատախիլ անելուն։

Առաջադրված որակապես նոր, խոշորամասշտաբ խնդիրների իրագործումը պահանջում է արմատապես բարելավել գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքը, ակտիվացնել մարդկային գործոնը։ Այդ հարցը քննարկման առարկա դարձավ Հայաստանի կոմկուսի Կենտրոնական կոմիտեի 1986 թ. հոկտեմբերյան պլենումում։ Պլենումը խնդիր դրեց առավել մեծ ուշադրություն նվիրել գաղափարախոսական ոլորտի, մասսաների կոմունիստական դաստիարակության բարելավման հարցերին, ավելի սերտորեն շաղկապել քաղաքական-դաստիարակչական աշխատանքը կյանքի հետ, կոնկրետ խնդիրների լուծման հետ, ՍՄԿԿ XXVII համագումարի որոշումների լույսի ներքո արմատապես վերակառուցել կուսակցական աշխատանքի այդ կարևորագույն բնագավառը։

Նշելով մեծ Հոկտեմբերի 69-րդ և Հայաստանում սովետական կարգերի հաստատման 66-րդ տարելիցները՝ հանրապետության աշխատավորները, մեր մեծ հայրենիքի եղբայրական ազգերի հետ միաձույլ, այսօր իրենց արժանի ավանդն են ներդնում պայծառ գալիքի կերտման վեհ գործում։



# ԱՐՄԱՏԱԿԱՆ ՎԵՐԱԿԱՌՈՒՑՈՒՄԸ ԵՎ ՌԵԳԻՈՆԱԼ ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ՄԻ ՔԱՆԻ ՀԱՐՑԵՐ

**Մ. ՔՈԹԱՆՅԱՆ**
*ՀԿԿ Կենտկոմի տնտեսագիտական բաժնի վարիչ*

ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՀԱՍԱՐԱԿԱՐԳԻ ԶԱՐԳԱՑՈՒՄՆ այսօր թևակոխել է այնպիսի շրջան, երբ հասարակական կյանքի բոլոր բնագավառներում հեղափոխական նշանակության վերակառուցումն անհրաժեշտություն է դարձել: Ներկայիս վերակառուցումը, նշել է ընկ. Մ. Ս. Գորբաչովը, ընդգրկում է ոչ միայն էկոնոմիկան, այլև հասարակական կյանքի բոլոր կողմերը՝ սոցիալական հարաբերությունները, քաղաքական սիստեմը, հոգևոր-գաղափարախոսական ոլորտը, կուսակցության, մեր բոլոր կադրերի աշխատանքի ոճն ու մեթոդները:

Արմատական վերակառուցման անհրաժեշտությունը օբյեկտիվորեն բխում է մեր առաջընթացի ճանապարհին ծագած այնպիսի կարևոր պրոբլեմի լուծումից, ինչպիսին է հասարակության անդամների ընդհանուր զարգացման և նյութական արտադրության տեխնիկական բազայի, սոցիալական ենթակառուցվածքի ու հոգևոր պահանջմունքների բավարարման անհամապատասխանության վերացումը:

Մեր երկիրը գիտատեխնիկական հեղափոխության դարաշրջանը թևակոխեց հասարակության անդամների՝ աշխարհում կրթական ամենաբարձր մակարդակով, որը պարտադիր միջնակարգ ուսուցման, միջին-մասնագիտական և բարձրագույն ուսուցման լայն ցանցի ստեղծման արդյունք էր:

Միաժամանակ պետք է նկատել, որ վերջին շրջանում հասարակության անդամների կուլտուր-տեխնիկական մակարդակի անընդհատ բարձրացումը չուղեկցվեց արտադրական և սոցիալական համապատասխան ենթակառուցվածքի ստեղծմամբ: Այդ պատճառով առաջ եկավ անհամապատասխանություն, մի կողմից, հասարակության անդամների կուլտուր-տեխնիկական զարգացման բարձր մակարդակի և, մյուս կողմից, նրանց աշխատանքի կիրառման ոլորտի տեխնիկական ցածր աստիճանի, սոցիալ-կուլտուրական և հոգևոր պահանջմունքների բավարարման միջև: Այս օբյեկտիվ իրավիճակից ելնելով՝ կուսակցությունն այսօր ժամանակակից գիտատեխնիկական առաջադիմության բազայի վրա հասարակական արտադրության ինտենսիվացման, նրա տեխնիկական վերազինման, մարդու սոցիալ-կուլտուրական ու հոգևոր պահանջմունքները բավարարող ենթակառուցվածքի ստեղծման խնդիր է դնում, որի լուծման վճռական պայմանը գիտատեխնիկական հեղափոխության արագացումն է, ժողովրդական տնտեսության մեջ նրա նվաճումների նյութականացումը: Եվ այսօր ՍՄԿԿ XXVII համագումարը գիտատեխնիկական առաջադիմությունը, տեխնիկայի նոր սերնդի մշակումը և յուրացումն առաջադրել է որպես կուսակցու-

թյան տնտեսական քաղաքականության առանցք: Այդ ստրատեգիական խնդրի լուծման համար անհրաժեշտ է գիտատեխնիկական պոտենցիալի կառուցվածքի և տեխնիկական բազայի վերակառուցում:

Երկրի գիտատեխնիկական պոտենցիալում առաջնակարգ տեղ են գրավում գիտությունը, ռեսուրսներով նրա ապահովվածությունը և կառուցվածքի կատարելագործումը: Այդ պրոբլեմի լուծման վճռական գործոնը գիտությունը բարձրորակ, ստեղծագործական կարողությամբ օժտված, պրպտող միտք ունեցող կադրերով համալրելն է: Մինչդեռ վերջին երկու տասնամյակում գիտությունը չի կարողացել ընդլայնել իր ոլորտը և ի հաշիվ երիտասարդ սերնդի ապահովել բարձրորակ գիտական կադրերի պատրաստումը: Դա պայմանավորված էր, մի կողմից, այդ աշխատողների հարաբերական ցածր վարձատրությամբ, մյուս կողմից՝ երիտասարդ կադրերի պատրաստման (ասպիրանտուրայի) ոչ կատարյալ համակարգով: Կյանքը ցույց է տվել, որ ժամանակակից պայմաններում, երբ ինֆորմացիայի ծավալը հասել է ահռելի չափերի, հետազոտությունների արդյունքների փորձարկումը հսկայական ժամանակ է կլանում, երեք տարվա ասպիրանտական ուսուցումը լուրջ արդյունքի հասցնել չի կարող: Բացի դրանից, ասպիրանտական ուսուցման թոշակի նույնիսկ առավելագույն չափերը արտադրական փորձ ունեցող, ընտանիքավոր երիտասարդ մասնագետի համար կյանքի բարենպաստ պայմաններ չի ապահովում: Եթե մեր հանրապետության պայմաններում դրան ավելացնենք ասպիրանտական տեղերի բացակայությունը, ապա պարզ կդառնա իրական վիճակը: Եվ, վերջապես, դիսերտացիա պաշտպանած ասպիրանտի՝ ավագ գիտաշխատողի պաշտոն «նվաճելու» երկարատև ու բարդ ճանապարհը, վարձատրության նշված վիճակը չէին կարող բացասական ազդեցություն չունենալ գիտությունը որակյալ, ստեղծագործական մեծ կարողություններով օժտված կադրերով համալրելու վրա: Եվ տրամաբանական է, որ սկսվեց գիտական աշխատանքի տվյալներ ունեցող երիտասարդ կադրերի հոսքը դեպի նյութական արտադրության ու սպասարկման ոլորտները: Դրությունը շտկելու համար կատարվում են որոշ քայլեր, բայց դրանք արմատական համարել չի կարելի: Պահանջվում են այնպիսի վերափոխումներ, որոնք երիտասարդությանը շահագրգռեին գնալ դեպի գիտություն:

Անհրաժեշտ է նաև միջոցներ ձեռնարկել գիտական աշխատանքի տեխնիկական զինվածության մակարդակի բարձրացման, հետազոտական հաստատությունները ժամանակակից լաբորատոր սարքավորումներով և տեխնիկայով հագեցնելու նպատակով: Այս առումով մեր հանրապետության գիտական հիմնարկությունները բարվոք վիճակում չեն և ընդհանուր տեխնիկական զինվածության մակարդակով զգալիորեն ետ են մնում միջին միութենական մակարդակից:

Գիտական պոտենցիալի արդյունավետության բարձրացմանը մեծապես կնպաստի նրա կառուցվածքի հիմնարար և կիրառական հետազոտությունների ծախսերի հարաբերակցության կատարելագործումը: Փորձագետների գնահատումներով, ՍՍՀՄ-ում հիմնարար և կիրառական հետազոտությունների ծախսերի հարաբերակցությունը կազմում է 1 : 3,1 (զարգացած կապիտալիստական երկրներում՝ 1 : 1,6 —1 : 1,7):

Անհրաժեշտ է ապահովել հիմնարար գիտության առավել արագ զարգացումը, որի նվաճումները, ինչպես հայտնի է, կազմում են գիտատեխնիկական հեղափոխության ժամանակաշրջանի նոր սերնդի տեխնիկայի և տեխնոլոգիայի մշակման տեսական հիմքը:

Կարևոր նշանակություն ունի ակադեմիական ինստիտուտների աշխատանքների տեխնիկական ուղղվածության ուժեղացումը, որը պահանջում է փորձաէքսպերիմենտալ բազայի բազմապատիկ մեծացում:

Գիտությունների ակադեմիայի, բուհերի հետազոտական աշխատանքներում առաջիկայում նպատակահարմար է ուժեղացնել հանքահումքային ռեսուրսների կոմպլեքսային օգտագործման, դրանց բազայի վրա կատարվող մշակումների, արտադրական, ինչպես նաև տեխնիկական կիրառման հետազոտությունները:

Հանրապետության հանքահումքային ռեսուրսների սահմանափակությունը և մեր գիտական պոտենցիալի հզորությունը հնարավորություն են տալիս գիտատեխնիկական մշակումներ կատարել նաև երկրի այլ տնտեսական շրջանների համար: Այդ



առումով պետք է նկատել, որ գիտատեխնիկական մշակումները մեր հանրապետության համար դառնում են կարևոր պրոֆիլային ուղղություն:

Գիտական պոտենցիալի որակական վերակառուցումն այսօր հասարակական անհրաժեշտություն է: Գիտությունը դարձել է տեխնիկայի, արտադրության զարգացման ստրատեգիական հարցերի լուծման, մարդկանց հոգևոր պահանջմունքների բավարարման, երկրի պաշտպանունակության ամրապնդման գլխավոր գործոնը: Ուստի աշխատանքային, նյութական և ֆինանսական ռեսուրսներով նրա ապահովումը կարևորագույն խնդիր է: Դա նշանակում է, որ ռեսուրսների բաշխումը պետք է սկսել գիտության պահանջների առաջնահերթ բավարարումից:

Գիտության և արտադրության ինտեգրացման պրոցեսն ինտենսիվացնելու նպատակով հանրապետությունում անհրաժեշտ է հասնել ճյուղային ինստիտուտների, գիտաարտադրական և գիտահետազոտական օղակներ ունեցող արտադրական միավորումների հետ ակադեմիական ինստիտուտների սերտ համագործակցության՝ համատեղ գիտատեխնիկական մշակումներ կատարելու և բարձրորակ գիտական կադրեր պատրաստելու բնագավառներում: Այդ բազայի վրա անհրաժեշտ է կազմակերպել գերատեսչությունների ու միավորումների միջոցների հաշվին ակադեմիական ինստիտուտների նյութական և ֆինանսական ռեսուրսների համալրում՝ գիտությանը հատկացված միջոցներից և շահույթներից կատարվող մասհանումների հաշվին: Լայն զարգացում է պահանջում համատեղ օգտագործման փորձաէքսպերիմենտալ բազաների ստեղծումը: Ակադեմիական ինստիտուտների ռեսուրսների համալրման կարևոր աղբյուր կարող է լինել նաև ճյուղային մինիստրությունների գիտության և տեխնիկայի զարգացման ֆոնդերի հաշվին տեխնիկական գիտությունների բնագավառում հիմնարար հետազոտությունների և տեսական մշակումների ընդլայնումը: Պետպլանի, մինիստրությունների ու գերատեսչությունների, արտադրական և գիտաարտադրական միավորումների, արդյունաբերական ձեռնարկությունների պարտքն է՝ առաջիկայում հանդես բերել նախաձեռնություն և գործնական քայլեր անել, որպեսզի բնական գիտությունների յուրաքանչյուր հաստատություն հագեցվի ժամանակակից հետազոտական, լաբորատոր սարքավորումներով, ունենա փորձաէքսպերիմենտալ բազա: Առանց դրա մենք չենք կարող ապահովել գիտության առաջավոր դիրքերը, հիմնավորապես լուծել նրա և արտադրության ինտեգրացման պրոբլեմը:

Գիտատեխնիկական պոտենցիալի մեծացման համար կարևոր նշանակություն ունի գիտության, կրթության և արտադրության ինտեգրացումը: Այդ բնագավառում որոշակի փորձ է կուտակվել Միության մի շարք ուսումնական հաստատություններում: Դրանցից են Տոմսկի համալսարանը, Լենինգրադի Մ. Ի. Կալինինի անվան պոլիտեխնիկական, Մոսկվայի Ի. Մ. Գուբկինի անվան նավթաքիմիական և գազի արդյունաբերության ինստիտուտները, որոնք մինիստրությունների, միավորումների, գիտահետազոտական հաստատությունների հետ ուսումնագիտաարտադրական կենտրոններ ու լաբորատորիաներ ստեղծելու հարուստ փորձ են կուտակել:

Գիտության, կրթության և արտադրության ինտեգրացման արդյունավետ միջոց է գիտաուսումնաարտադրական միավորումների ստեղծումը՝ որոշակի ուղղվածության գիտատեխնիկական և ինժեներական բարձրորակ մասնագետներ պատրաստելու համար:

Եթե այսօր գիտության և արտադրության միավորումը տնտեսական անհրաժեշտություն է, ապա գիտական հետազոտության և ուսումնական պրոցեսի միավորումը, ինչպես նաև ուսումնական պրոցեսի ու արտադրության միավորումը գիտատեխնիկական հեղափոխության պահանջն են: Գիտական հետազոտության և ուսումնական պրոցեսի անջատվածության հետևանքով գիտության ու տեխնիկայի վերջին նվաճումներն անմիջապես չեն հասցվում ուսանողությանը: Ինչպես հայտնի է, բուհերում ուսանողների գիտելիքների համալրման հիմնական աղբյուրը դասագրքերն են, որոնց հրատարակության պարբերականությունը 5—10 տարի է: Եթե հաշվի առնենք, որ դասագրքերում, հրատարակության տարում, արտացոլվում են գիտության ու տեխնիկայի՝ 3—5 տարվա վաղեմություն ունեցող նվաճումները, ապա պարզ կդառնա կադրերի պատրաստման որակական մակարդակը: Որպեսզի բուհերի շրջանավարտները դառնան լիարժեք մասնագետներ, պահանջվում է առնվազն եր-

կու-երեք տարի՝ նրանց գիտելիքների համալրման, արտադրական փորձի ձեռքբերման համար: Համապատասխանորեն հետաձգվում է նրանց մուտքը ստեղծագործական աշխատանք: Գիտաուսումնաարտադրական կոմպլեքսի շնորհիվ գիտության ու տեխնիկայի նորույթները արագորեն կհասնեն ուսանողությանը, իսկ մշտական արտադրական պրակտիկան, որպես ուսումնական պրոցեսի բաղկացուցիչ մաս, ուսանողին հնարավորություն կտա բուհն ավարտելուց հետո անմիջապես ձեռնամուխ լինել ստեղծագործական աշխատանքի:

Հարցի սկզբունքային լուծումը, այսինքն՝ գիտաուսումնաարտադրական կոմպլեքսների ստեղծումը, ենթադրում է հանրապետության մայրաքաղաքի «բեռնաթափում» գիտական և բուհական կազմակերպություններից, որովհետև նման միավորման բազան կարող է ստեղծվել հիմնականում խոշոր քաղաքներից դուրս: Մտավոր, ստեղծագործական աշխատանքի արդյունավետության բարձրացման հետ միասին դա կնպաստի շրջանների տնտեսական ու գիտատեխնիկական զարգացմանն ու սոցիալական շատ պրոբլեմների լուծմանը:

Գիտաուսումնաարտադրական կոմպլեքսների ստեղծումը տրամաբանորեն ենթադրում է նաև բուհական համակարգի որոշակի վերակառուցում, որն այսօր չի համապատասխանում այդպիսի միավորման պահանջներին: Գիտաուսումնաարտադրական կոմպլեքսները նպատակահարմար է ստեղծել ըստ մասնագիտությունների: Իհարկե, դա վերաբերում է բնական, տեխնիկական գիտությունների և նյութական արտադրության ոլորտի ինժեներատեխնիկական կադրեր պատրաստող ուսումնական համակարգերի միավորմանը:

Գիտատեխնիկական հեղափոխության դարաշրջանում ուսուցման գլխավոր նպատակը երիտասարդությանը գիտելիքներով զինելն ու ստեղծագործական աշխատանքի նախապատրաստելն է: Գիտության նորագույն ուղղությունների ստեղծումն ու զարգացումը, բնության նոր երևույթների և օրինաչափությունների, դրանց գործողության մեխանիզմի բացահայտումը, հարյուր հազարավոր տեխնիկական գյուտերը, մարդկային մեկ սերնդի կյանքի տևողության ընթացքում տեխնիկայի մի քանի (3—4) սերունդների փոփոխությունը, մարդկության հոգևոր նորանոր պահանջմունքները տրամաբանորեն առաջադրում են ուսուցման դպրոցական, միջին-մասնագիտական և բուհական գիտական ու մասնագիտական կողմնորոշման, նոր սերնդին ստեղծագործական աշխատանքի նախապատրաստման կատարելագործում:

Ներկայումս ՍՄԿԿ Կենտկոմի 1985 թ. ապրիլյան պլենումի և ՍՄԿԿ XXVII համագումարի որոշումների հիման վրա մշակվում են երկրի տեխնիկական պոտենցիալի կառուցվածքային, կառավարման, պլանավորման, տնտեսական խթանման արմատական փոփոխություններ, որոնք կհանգեցնեն ժողովրդական տնտեսության արմատական վերակառուցման՝ գիտության և տեխնիկայի ժամանակակից նվաճումների հիման վրա:

Հանրապետությունը երկրի ժողովրդական տնտեսության խոր տեխնիկական վերակառուցմանը կարող է մասնակցել նրա մի քանի առաջատար բնագավառներում տեխնիկական քաղաքականության մշակմանը և իրականացմանը աջակցելու միջոցով: Այսօրվա մեր պոտենցիալը հնարավորություն է տալիս մշակել գիտատեխնիկական նպատակային ծրագրեր ռադիոէլեկտրոնիկայի, սարքաշինության որոշ ուղղությունների (այդ թվում՝ գիտական սարքաշինության), էլեկտրատեխնիկայի (էլեկտրաշարժիչների, կաբելի և այլն), գործիքաշինության, քիմռեակտիվների բնագավառներում: Այդ խնդրի իրականացման համար անհրաժեշտ է մոբիլիզացնել հանրապետության գիտությունների ակադեմիայի, ճյուղային գիտահետազոտական ինստիտուտների, բուհերի, նախագծային-կոնստրուկտորական կազմակերպությունների, արտադրական միավորումների և ձեռնարկությունների ուժերը:

Վերակառուցման կարևոր խնդիրներից մեկը նյութական ռեսուրսների օգտագործման արդյունավետության բարձրացման պայմանների ստեղծումն է: Նյութական ռեսուրսների վերարտադրությունն անընդհատ բարդանում է և ավելի շատ հասարակական աշխատանքի ծախսումներ է պահանջում: Ուստի օբյեկտիվորեն սրվում է դրանց ամենառացիոնալ օգտագործման պրոբլեմը՝ որպես հասարակության տընտեսական առաջընթացի կարևոր գործոն:



Դա պահանջում է, առաջին հերթին, տեխնիկայի և տեխնոլոգիայի մշտական կատարելագործում, նյութական, էներգետիկ ռեսուրսների խնայողության, կոմպլեքսային և անթափոն տեխնոլոգիայի վրա հիմնըված արտադրությունների կազմակերպում, ամենախնայողական տեխնիկական միջոցների ներդրում, նվազ նյութատար և նվազ էներգատար արտադրությունների կազմակերպում:

Ռեսուրսների խնայողությունը, որը քննարկման առանցքային հարց դարձավ ՍՄԿԿ Կենտկոմի 1986 թ. հունիսյան և ՀԿԿ Կենտկոմի հուլիսյան պլենումներում, դրանց նկատմամբ ժողովրդական տնտեսության պահանջի աճի բավարարման հիմնական աղբյուրն է: Մեր հանրապետության համար այն առավել կարևոր նշանակություն ունի, որովհետև ժողովրդատնտեսական համալիրի նյութական և էներգետիկ ռեսուրսները ձևավորվում են հիմնականում Միության տարբեր շրջաններից դրանց ստացման միջոցով: Նման իրավիճակը թելադրում է՝ հանրապետության արդյունաբերությունը կողմնորոշել դեպի առավել խնայողական տեխնիկան ու տեխնոլոգիան: Արդյունաբերությունը նման տեխնիկական հիմքի վրա վերակառուցելու, ամենախնայողական տեխնոլոգիայի մշակման ու ներդրման գործում, անշուշտ, առանձնահատուկ դեր ունի գիտատեխնիկական միտքը:

Նյութական ռեսուրսների ռացիոնալ օգտագործման, հանրապետության արդյունաբերական զարգացման հումքային բազայի ամրապնդման համար կարևոր նշանակություն է ձեռք բերում բնական ռեսուրսների կոմպլեքսային օգտագործման ճյուղային և միջճյուղային ծրագրերի մշակումը: Այդ առումով առաջին պլան են մղվում գունավոր մետաղների, ոչ մետաղային հանածոների հանույթի և օգտագործման միջճյուղային կոմպլեքսային ծրագրերի մշակումն ու իրականացումը: Խնդիրն այսօր բնական ռեսուրսների կոմպլեքսային, անթափոն օգտագործումն է, հանրապետությունում վերջնական արդյունքների թողարկման և դրանց կիրառման արտադրությունների կազմակերպումը: Դա նշանակում է, որ մենք չպետք է բավարարվենք միայն, ասենք, մոլիբդենի խտանյութի, պղնձի արտադրությամբ, այլ պետք է կազմակերպենք մաքուր մետաղներ ստանալու և դրանց կիրառման արտադրություններ:

Առավել մեծ են պեռլիտի, բենտոնիտների, դոլոմիտների, ցիանիտների և ոչ մետաղային մյուս հանածոների կոմպլեքսային օգտագործման ծրագրերը: Մեր մեծագույն հարստության՝ շինաքարի կոմպլեքսային օգտագործումը կոնստրուկցիաների, շինարարական իրերի պատրաստման, ինչպես նաև որոշ հազվագյուտ և մաքուր տարրեր ստանալու նպատակով, հանրապետության նյութական ռեսուրսների համալրման հուսալի միջոցներից է:

Լուրջ հետազոտական աշխատանքներ է պահանջում մեր արդյունաբերության մեջ ավանդաբար օգտագործվող հումքի փոխարինիչների ստեղծման խնդիրը: Խոսքը կերամիկայի, պլաստմասսայի համաձուլվածքների և այլ փոխարինիչների մասին է:

Տնտեսության կոմպլեքսային զարգացումը ենթադրում է վերջնական արդյունքների կիրառման ոլորտներ հանդիսացող արտադրությունների զարգացում: Դրանք կոչված են դառնալու աշխատանքի միութենական բաժանման մեջ մեր հանրապետության մասնագիտացման կարևոր ուղղություններ, մասնագիտացում, որը հենվում է բնական ռեսուրսների կոմպլեքսային օգտագործման և հարակից արտադրությունների զարգացման վրա:

Նման մասնագիտացումը խիստ կարևոր է նաև ոչ ռացիոնալ և հեռավոր փոխադրումներից խուսափելու, նյութական պաշարների նորմատիվները նվազագույնի հասցնելու և, վերջին հաշվով, ժամանակի տնտեսման, հասարակական աշխատանքի արտադրողականության ու արդյունավետության բարձրացման համար:

Բնական ռեսուրսների օգտագործման բազայի վրա էկոնոմիկայի մասնագիտացման կարևոր ուղղություններից է հանքային ջրերի կոմպլեքսային օգտագործման միջճյուղային ծրագրի մշակումն ու իրականացումը: Այդպիսի ջրերի ռեսուրսներով Հայաստանը երկրում գրավում է առաջնակարգ տեղերից մեկը: Մինչդեռ այդ բնագավառում հանրապետությունը դեռևս համաշխարհային լայն ճանաչում չունի:

նա բացատրվում է նրանով, որ մեզ մոտ և՛ արտադրական, և՛ բուժման նպատակներով հանքային ջուրը անբավարար է օգտագործվում: Այդ բնագավառում առաջնահերթ խնդիր է միջազգային նշանակության առողջարանային կոմպլեքսների ստեղծումը, ժամանակակից տեխնիկայով հագեցված հանքային ջրերի և աղերի, ինչպես նաև տարաների արտադրությունների կազմակերպումը, հաղորդակցության միջոցների (երկաթգծի, ավտոմոբիլային ճանապարհների, օդանավակայանների) կառուցումը, առողջարաններին սպասարկող արտադրությունների և ծառայությունների կազմակերպումը:

Հանրապետության էկոնոմիկայի հետագա զարգացումը նյութական ռեսուրսներով ապահովելու գործում խիստ կարևոր է երկրորդային հումքի օգտագործման ծրագրի մշակումը: Երկրորդային հումքը մեր էկոնոմիկայի համար առաջնային հումքի նշանակություն է ձեռք բերում:

Նյութական ռեսուրսների արդյունավետ օգտագործման համար կարևոր նշանակություն ունեն նաև այսօրվա տեխնիկայի ու տեխնոլոգիայի պայմաններում դեռևս չօգտագործվող, թանկարժեք նյութերով հարուստ «թափոնների» պահեստավորման կարողությունների ստեղծումն ու պահպանումը, դրանց օգտագործման ուղղությամբ հետազոտությունների ծավալումը:

Էկոնոմիկայի վերակառուցման և հասարակական արտադրության արդյունավետության բարձրացման կարևոր ուղիներից մեկը տնտեսական շրջանները այնպիսի արտադրատեսակների արտադրությամբ մասնագիտացնելն է, որը նպաստի տվյալ ռեգիոնի կոոպերացիոն կապերի ուժեղացմանը: Ամեն մի տնտեսական շրջան, առաջին հերթին, պետք է մասնագիտանա այնպիսի արտադրանքի թողարկման մեջ, որը մեծ մասամբ կիրառություն գտնի տվյալ ռեգիոնում:

Այդ խնդրի լուծումը մեր հանրապետության արդեն ձևավորված արդյունաբերության ենթակառուցվածքի պայմաններում ներկայումս առավել կարևոր նշանակություն է ձեռք բերում, քանի որ բոլոր ճյուղերի գծով սկսվել է ձեռնարկությունների տեխնիկական վերակառուցման պրոցեսը: Մեր նպատակը պետք է լինի այդ պրոցեսը ծառայեցնել էկոնոմիկայի կոմպլեքսային զարգացմանը, ստեղծել միջճյուղային արտադրություններ: Միաժամանակ, կարևոր է վերակառուցման և արդյունքների նորացման աշխատանքները նպատակամղել Անդրկովկասի, Հյուսիսային Կովկասի և ՍՍՀՄ եվրոպական մասի հարավային տնտեսական շրջանների կոոպերացիոն կապերի ուժեղացմանն ու արտադրական և սպառման պահանջների բավարարմանը: Ամբողջ երկրի մասշտաբով նման մոտեցումը տնտեսական շրջանների կոմպլեքսային զարգացման, ոչ ռացիոնալ ու հեռավոր փոխադրումների կրճատման, տնտեսական արդյունավետության բարձրացման հուսալի ուղի և ծանրակշիռ ռեզերվ է:

Հանրապետության էկոնոմիկայի զարգացման առանցքային հարցերից մեկը նրա տնտեսական շրջանների ճիշտ մասնագիտացումն է:

Հայտնի է, որ ամեն մի ռեգիոնի զարգացման և մասնագիտացման վրա, բացի բնական ռեսուրսներից և գիտատեխնիկական պոտենցիալից, որոշակի ազդեցություն են գործում նաև բնակլիմայական պայմանները: Պետք է նկատել, որ տնտեսական և սոցիալական արդյունավետության, բնակեցման, էկոլոգիական տեսակետից մինչև վերջ գիտականորեն մշակված չեն հատկապես լեռնային և նախալեռնային շրջանների զարգացման ուղղությունները: Այդ պատճառով դեռևս շարունակվում է արտադրողական ուժերի իներցիոն տեղաբաշխումը՝ անտեսելով տնտեսական առանձին շրջանների տարածքային (բնակլիմայական) առանձնահատկությունները, տարբեր ռեգիոնների քիչ թե շատ համաչափ բնակեցման խնդրի լուծումը:

Հասարակության սոցիալ-տնտեսական ինտենսիվ զարգացումը, մարդկանց կուլտուր-տեխնիկական մակարդակի բարձրացումը, արդի գիտատեխնիկական հեղափոխության ընձեռած հնարավորությունները թելադրում են վերանայել հանրապետության շրջանների զարգացման ավանդական ուղղությունները:

Հայտնի է, օրինակ, որ Արարատյան դաշտի շրջանները մասնագիտացել են



մրգի, խաղողի, բանջարեղենի, իսկ նախալեռնային, լեռնային շրջանները՝ հացահատիկի, անասնապահական մթերքների արտադրության գծով: Գյուղատնտեսության վարման, տեխնիկայի և տեխնոլոգիայի փոփոխության, անասունների ստացիոնար պահվածքին անցնելու, հացահատիկի, կերային կուլտուրաների բարձր բերքատվության պայմաններում տնտեսապես նպատակահարմար է կաթնային և մսային անասնաբուծությունը, խաղողագործության և կորիզավոր կուլտուրաների (դեղձ, ծիրան և այլն) հետ միասին, դարձնել Արարատյան դաշտի և նախալեռնային գոտու որոշ շրջանների մասնագիտացման հիմնական ուղղությունը: Այդ շրջաններում անհրաժեշտ է ստեղծել նաև գյուղատնտեսական հումքի օգտագործման առևտրաարդյունաբերական կոմպլեքսներ (պահեստավորում, պահպանում, վերամշակում, առաքում, իրացում և այլն):

Պետք է խուսափել Արարատյան դաշտի շրջաններում ժամանակակից արդյունաբերական կոմպլեքսների տեղադրումից, որովհետև դա կպահանջի նախ՝ ոչ գյուղատնտեսական նպատակներով բարեբեր հողերի օտարում, որը ծայրահեղորեն անթույլատրելի է հանրապետության սակավահողության պատճառով, և ապա՝ բնակչության խտության առավել մեծացում, որը և՛ տնտեսական, և՛ սոցիալական առումով նպատակահարմար չէ: Այս ամենից հետևում է, որ այսուհետև Արարատյան դաշտի բոլոր բնակավայրերի (այդ թվում՝ քաղաքների) հետագա ծավալումը ինչպես տարածականորեն, այնպես էլ բնակչության թվով անցանկալի է և պետք է սահմանափակվի:

Լեռնային և նախալեռնային շրջաններում առավել արդյունավետ է դառնում գյուղատնտեսության այն ճյուղերի զարգացումը, որոնք կնպաստեն հողապահպանության խնդրի լուծմանը: Այդ տեսակետից շահեկան է լեռնային և նախալեռնային շրջաններում պտղաբուծության (խնձոր, տանձ, սալոր և այլն), բազմամյա խոտաբույսերի, անտառապատման զարգացումը: Այսօր հանրապետության լեռնային շրջանները անասնապահության հետագա զարգացման համար լուրջ տնտեսական հիմքեր չունեն: Դա նշանակում է, որ դրանց զարգացման հիմնական ուղղությունը պետք է լինի արդյունաբերականը: Առավել նպատակահարմար է այդ շրջաններում տեղադրել արդեն ոչ միայն ձեռնարկությունների մասնաճյուղեր, այլև ամբողջական կոմպլեքսներ՝ իրենց ժամանակակից փոքր ձեռնարկություններով: Ըստ որում կառուցվող գործարանները, արտադրամասերը պետք է ունենան տարածականորեն որոշակի հեռավորություն, որպեսզի հնարավոր լինի աշխատանքով ապահովել մի քանի բնակավայրի ազատ աշխատուժը և միաժամանակ խուսափել բնակչության խիստ կենտրոնացումից ու դրանց տնտեսական միավորման բազայի վրա պահպանել և զարգացնել արդեն ձևավորված բնակավայրերը: Դրանով իսկ այսօրվա գյուղերը կվերածվեն մարդու տնտեսական, սոցիալական, կուլտուր-կենցաղային պահանջմունքները բավարարող բարեկարգ բնակավայրերի: Այդպիսի մեծ խնդրի լուծմանը էապես կնպաստի այդ շրջանների արդյունաբերական զարգացումը:

Իհարկե, պետք է ճիշտ կողմնորոշվել նաև այդ հարցում: Հարկավոր է նախապատվությունը տալ սակավ նյութատար ու էներգատար ճյուղերին ու արտադրություններին և այնպիսի արդյունաբերական կոմպլեքսներին, որոնք աշխատուժի մեծ կենտրոնացում չեն պահանջում ու հավասարապես կարող են կիրառել ինչպես տղամարդկանց, այնպես էլ կանանց աշխատուժը: Դա հնարավորություն կտա աշխատատեղ դարձնել բնակավայրը, իսկ որոշ դեպքերում՝ նաև բնակարանը, և տեղում ապահովել աշխատուժի լրիվ զբաղվածությունը:

Հանրապետության գիտատեխնիկական պոտենցիալը հնարավորություն է տալիս առաջիկա հնգամյակներում զարկ տալ գիտատար, ինֆորմատար արդյունաբերության այնպիսի ճյուղերի վերելքին, ինչպիսիք են ռադիոտեխնիկան, էլեկտրոնիկան, սարքաշինությունը, էլեկտրատեխնիկան, որոնք կարող են ծառայել նշված խնդրի լուծմանը:

Նպատակահարմար է լեռնային և նախալեռնային շրջաններում ներկայումս գործող մասնաճյուղերը վերակառուցել ու տեխնիկապես վերազինել, նորերը տե-

դաբաշխել այն հաշվով, որպեսզի հետագայում հնարավոր լինի դրանք մեկ շրջանի մասշտաբով միավորել ճյուղային կամ միջճյուղային արտադրական կոմպլեքսի մեջ: Այլ խոսքով, մեկ վարչական կամ տերիտորիալ շրջանում անհրաժեշտ է տեղադրել միմյանց հետ փոխկապակցված կամ միմյանց լրացնող արտադրություններ, որոնց հետագա զարգացումը տրամաբանորեն հասցնի խոշոր արտադրական կոմպլեքսի ձևավորմանը:

Պետք է նկատել, որ լեռնային և նախալեռնային շրջանների հետագա զարգացման նման ժամանակակից ու բարդ ուղղությունների ընտրությունը չի բացառում տեղական ռեսուրսների կոմպլեքսային օգտագործումը: Այն շրջաններում, որտեղ առկա են այդպիսի ռեսուրսներ, դրանց օգտագործման արտադրությունները կարող են պրոֆիլային լինել:

Լեռնային և նախալեռնային շրջանների արդյունաբերական զարգացմանը զուգընթաց կարևոր նշանակություն ունի նաև գյուղատնտեսական, տեղական հանքային և հումքային ռեսուրսների օգտագործման, ինչպես նաև ժողովրդական արհեստագործության արտադրությունների կազմակերպումը, որը կարող է ամբողջացնել տերիտորիալ արդյունաբերական կոմպլեքսի ստեղծումը:

Եվ, վերջապես, այդ շրջանների արդյունաբերական զարգացումը հնարավորություն կտա լուծելու հանրապետության տարածքի քիչ թե շատ համաչափ բնակեցման պրոբլեմը, խստորեն սահմանափակելու խոշոր քաղաքների և Արարատյան դաշտի բնակչության թվի ավելացումը: Աշխատունակ բնակչության աճը հիմնականում իր աշխատանքի կիրառումը կգտնի լեռնային և նախալեռնային շրջաններում տեղադրված արդյունաբերական կոմպլեքսներում:

Մեր հանրապետության համար վերջին երեք հնգամյակներում (70-ական թվականներից սկսած) և այժմ էլ լուրջ պրոբլեմ է աշխատուժի արդյունավետ զբաղվածության ապահովումը և մարդկային գործունեության կարգավորումը: Ավելի քան մեկ տասնամյակ առաջ ՀԿԿ Կենտկոմի մշակած ստրատեգիական գիծը՝ արտադրության ինտենսիվացման զուգակցումը հանրապետության արագ աճող աշխատունակ բնակչության զբաղվածության բարձրացման հետ, տալիս է իր դրական արդյունքները: Այդ քաղաքականությունը շարունակվում է տասներկուերորդ հնգամյակում ու նշմարվող հեռանկարում: Չնայած աշխատունակ բնակչության բացարձակ աճի բարձր մակարդակին, հասարակական տնտեսության մեջ զբաղվածների տեսակարար կշիռն անընդհատ բարձրանում է, իսկ անձնական օժանդակ և տնային տնտեսության մեջ զբաղվածներինը՝ իջնում: Չնայած տասներորդ և տասնմեկերորդ հնգամյակներում նյութական արտադրության մեջ աշխատանքային ռեսուրսների ակտիվ ներգրավմանը, ազգային եկամտի աշխատատարությունը նշված ժամանակաշրջանում աննշանորեն նվազել է: Այդ միտումը շարունակվում է:

Ըստ հանրապետության շրջանների և քաղաքների մշակվում է աշխատանքային ռեսուրսների արդյունավետ օգտագործման կոմպլեքսային ծրագիր, որտեղ հաշվի կառնվեն գիտատեխնիկական առաջադիմության հիման վրա արտադրական պոտենցիալի որակական փոփոխությունները, արդյունավետ սոցիալական ենթակառուցվածքի ձևավորման միտումները, ինչպես նաև ժողովրդագրական վիճակի փոփոխությունները:

Հանրապետության բնակչության աճի տեմպերը վերջին 15 տարում ունեցել են նվազման միտում: Այսպես, եթե իններորդ հնգամյակում բնակչության միջին տարեկան աճի տեմպը կազմել է 2,3 տոկոս, տասներորդ հնգամյակում՝ 1,8, ապա տասնմեկերորդ հնգամյակում այն կազմել է 1,5 տոկոս: Տեմպերի այդ նվազումը հիմնականում պայմանավորված է մեխանիկական աճի (միգրացիայի դրական արդյունքի) կրճատմամբ: Այդ միտումը շարունակվելու է ինչպես տասներկուերորդ հնգամյակում (1,3 տոկոս), այնպես էլ 1991—2000 թթ. (0,9):

Ժողովրդագրական իրադրության այդպիսի փոփոխությունների հետևանքով կկրճատվեն նաև աշխատունակ բնակչության աճի տեմպերը: Իհարկե, դա չի նշանակում, թե աշխատունակ բնակչության զբաղվածությունը, որպես պրոբլեմ, հանրապետության համար վերանում է: Այն շարունակում է մնալ, որովհետև, մի կող-



մից, աշխատունակ բնակչությունը, չնայած աճի տեմպերի անկման, բացարձակորեն ավելանում է, մյուս կողմից՝ տեխնիկական վերակառուցման հետևանքով արտադրության մեջ աշխատատեղերը կրճատվում են: Փոփոխվում են նաև աշխատուժի կիրառման ոլորտների տարողությունները և ուղղությունները:

Այսօր մարդկությունը թևակոխել է զարգացման այնպիսի շրջան, երբ ավտոմատացումը կյանքի բոլոր ոլորտներում դարձել է հասարակական անհրաժեշտություն: Գիտատեխնիկական հեղափոխության արդի ժամանակաշրջանում հասարակության անդամների կուլտուր-տեխնիկական մակարդակը, նրանց հակումներն արդեն անհամատեղելի են մեխանիկական հոգնեցուցիչ աշխատանքի, ծանր ֆիզիկական, հատկապես վտանգավոր և վնասակար պրոցեսների հետ: Տրամաբանորեն հասարակական պահանջ է դառնում մարդուն նման աշխատանքից ձերբազատելը և կոմպլեքսային մեքենայացման ու ավտոմատացման անցնելը: Այնպես որ, այսօր ժողովրդագրական իրադրությունն ինչպիսի փոփոխություն էլ կրի, աշխատանքային ռեսուրսների ավելացման ինչպիսի մեծ հնարավորություններ էլ լինեն, ավտոմատացումը որպես հասարակական պահանջ անկասելի պրոցես է:

Այստեղից հետևում է, որ, անկախ հանրապետության աշխատանքային ռեսուրսների աճի միտումներից, արտադրության և կառավարման համակարգերի ավտոմատացումը մեր զարգացման գլխավոր ուղղությունն է: Առկա աշխատատեղերի վերազինումը և վերակառուցումը, նորերի ստեղծումը պետք է կատարվեն միայն հասարակական պահանջ ներկայացնող տեխնիկական հիմքի վրա:

Ընթացիկ հնգամյակում էական քայլեր են կատարվում աշխատանքային ռեսուրսների արդյունավետ օգտագործման ասպարեզում: Բավական է ասել, որ հասարակական տնտեսության, ինչպես նաև արտադրությունից կտրված ուսման մեջ կընդգրկվեն լրացուցիչ 144 հազար մարդ, որը զգալիորեն կգերազանցի աշխատանքային ռեսուրսների աճը: Դրա հետ մեկտեղ, կբարելավվի աշխատանքային ռեսուրսների զբաղվածության կառուցվածքը, կբարձրանա արտադրական և ոչ արտադրական ոլորտներում զբաղվածների տեսակարար կշիռը:

Կուսակցության առաջադրած վերակառուցման կուրսը մեր հետագա առաջընթացի արագացման, գիտատեխնիկական առաջադիմության ծավալման հուսալի երաշխիքն է, որի նպատակը ժողովրդի հոգևոր ու նյութական հարաճուն պահանջմունքների բավարարումն է, էկոնոմիկայի արդյունավետության ու կառավարման կատարելագործումը, սովետական մարդկանց հասարակական-քաղաքական ակտիվության անշեղ բարձրացումը:

# ՎԵՐԱԿԱՌՈՒՑՈՒՄ ՆԱԵՎ ԿՈՄԵՐԻՏԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔՈՒՄ

*Հրանուշ* **ՀԱԿՈԲՅԱՆ**
*ՀԼԿԵՄ Կենտկոմի առաջին քարտուղար*

ԻՆՉՔԱՆ Է ԳՐՎԵԼ ԿՈՄԵՐԻՏՄԻՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ՝ դժվար է հաշվել: Բայց կա մի ընդհանուր գաղափար, որ, հավանաբար բոլոր հրապարակումներում, ճառերում, հարցազրույցներում, ակնարկներում անցել է կարմիր գծի պես: Հեղինակները ջանացել են բացահայտել, շեշտել սովետական երիտասարդության առաջատար ջոկատի նվիրվածությունը, հավատարմությունը կուսակցության գործին, ջանասիրությունը և եռանդը՝ առաջադրած խնդիրները մինչև վերջ կատարելու համար: Իրոք, չկա մեր երկրի պատմության մի այնպիսի հատված, որտեղ կոմերիտմիությունը ասած չլինի իր խոսքը նոր կյանքի կառուցման խնդիրների լուծման գործում: Եվ իրավամբ մեր երկրի բազմամիլիոն աշխատավորության ճնշող մեծամասնությունն այսօր հպարտությամբ է նշում, որ առնականացել է լենինյան կոմերիտմիության շարքերում:

Իսկ ինչպես կարելի է բնութագրել կոմերիտմիության այսօրվա սերնդին: Դիմենք ՍՄԿԿ XXVII համագումարի Քաղաքական զեկուցմանը: «80-ական թվականների երիտասարդներն աչքի են ընկնում լայն մտահորիզոնով, կրթվածությամբ. եռանդով: Նրանք... լիցքավորված են գործելու համար, փնտրում են հասարակական կյանքի բոլոր բնագավառներում իրենց դրսևորելու հնարավորություններ»: Նրա իրավունքների ընդլայնման, երիտասարդական կազմակերպությունների աշխատանքի արժանի գնահատման մի նոր վկայություն էր համագումարում ընդունված ՍՄԿԿ ծրագրի նոր խմբագրության մեջ ՀամԼԿԵՄ-ի բնութագրումը՝ որպես հասարակական-քաղաքական կազմակերպության:

Բոլոր նրանք, ովքեր իրոք ծանոթ են այսօրվա երիտասարդության բնավորությանը, գործերին ու հոգսերին, անշուշտ, կզգան այսպիսի բնութագրման ճշմարտությունը: Կոմերիտմիության համար այն հոգատարության, վստահության նոր վառ արտահայտություն է, որ պարտավորեցնում է, կոչում նոր գործերի ու սխրանքների:

Մենք բարձր ենք գնահատում քաղաքացիական կռիվներին, կոլեկտիվացմանը, մեծ Հայրենականին, հետպատերազմյան տարիների երկրի վերականգնմանը, խոպանի յուրացմանը մասնակցած կոմերիտականների կամքը, արիությունը, նվիրվածությունը:

Այսօրվա երիտասարդությունը պատվով է շարունակում իր նախորդների հերոսական գործերը: Մի՞թե իսկական արիության և սխրանքի, հայրենասիրության և ինտերնացիոնալիզմի հասցեներ չեն ԲԱՄ-ը, Ռուսաստանի ոչ սևահողային գոտին, Սիբիրի և Անդրբայկալի, Իջևան—Հրազդանի և մյուս կառույցները, որտեղ երբեմնի պատանին ու աղջիկը առնականանում, հերոսանում է դոմնային վառարանի, հաստոցի մոտ ու հանքային դաշտերում, ճեղքում Սիբիրի դարերով սառած կուրծքը և հյուսում 80-ական թվականների երիտասարդության կենսագրությունը:

Կոմերիտմիությունն իր փառապանծ տարեգրությունը կերտել է ժամանակին համահունչ. ապրել է ժամանակի հոգսով, կատարել ժամանակի պահանջները: Հենց դրանում է արտահայտվում նրա մասսայականությունը, կուսակցության ռեզերվն ու օգնականը լինելու կոչումը կրելու իրավունքը:

Կոմերիտմիության անվան հետ են կապվում ժողովրդական տնտեսության խոշոր շատ գործեր: Երիտասարդությունն իր ծանրակշիռ ավանդն ունեցավ հանրապետության կարմրադրոշ հնգամյակում: Դրա հաստատուն ապացույցն էր նաև այն, որ ՍՄԿԿ XXVII համագումարի որոշումների կատարման նպատակով երկրի կոմերիտական կազմակերպությունների միջև անցկացված ստուգատեսում 1985 թվականին ևս հանրապետական կոմերիտական կազմակերպությունը հաղթող ճանաչվեց և պարգևատրվեց ՀամԼԿԵՄ Կենտկոմի փոխանցիկ կարմիր դրոշով, որը հանձնվեց նրան՝ առհավետ պահպանության:



Երիտասարդության շրջանում առանձնակի խանդավառություն առաջացրին հատկապես ՍՄԿԿ XXVII համագումարի նախապատրաստման ընթացքում տարվող աշխատանքները: Ամենուր ծնվեցին նոր շարժումներ ու նախաձեռնություններ, հայտնըվեցին սոցիալիստական մրցության մեջ հաղթողների նոր անուններ: Կոմերիտական փառքի տարեգրության մեջ նոր էջեր գրեցին «Լույս» արտադրամիավորման՝ Սամվել Կարապետյանի ղեկավարած կոմերիտական-երիտասարդական բրիգադի անդամները, Լենինականի գուլպանասկեղենի արտադրամիավորման բանվորուհի Մելանյա Պոլոյանը, «Կիրշին» տրեստի ծեփագործ Համլետ Բեժանյանը, Սիսիանի շրջանի մեքենամելիորատիվ կայանի մեխանիզատոր Փայլակ Զաքարյանը, Նաիրիի շրջանի Նոր Գեղիի սովխոզ-տեխնիկումի կթվորուհի Ռիտա Խաչատրյանը, Ախուրյանի կոլտնտեսության ճակնդեղագործուհի Թերեզա Մարգարյանը և շատ ու շատ ուրիշներ:

Այսօր էլ, երբ երկիրը ձեռնամուխ է եղել կուսակցության նոր կանխագծումների՝ ՍՄԿԿ XXVII համագումարի որոշումների, կատարմանը, երիտասարդությունը չի կարող անտարբեր դիտողի դերում լինել: Վերակառուցում՝ նաև կոմերիտական աշխատանքում, արագացում՝ երիտասարդության գործունեության բոլոր ոլորտներում. այսպիսին է լենինյան կոմերիտմիության պահանջը բոլոր օղակներին, երիտասարդության բոլոր կատեգորիաներին:

Մեր օրերում, երկու սոցիալական սիստեմների միջև օրավուր սրվող գաղափարախոսական դիմակայման պայմաններում, առաջնահերթ նշանակություն է ձեռք բերում ապագա քաղաքացուն որպես կայուն ինտերնացիոնալիստ-հայրենասեր դաստիարակելու խնդիրը: Կոմերիտմիության կոմիտեները զգալի աշխատանք են կատարում պատանիների և աղջիկների մոտ այդ բարձր հատկանիշները ձևավորելու, նրանց սոցիալիզմի ստեղծարար երթի ակտիվ մասնակիցներ դարձնելու նպատակով:

Ինտերնացիոնալիզմի գաղափարներին իրենց անմնացորդ նվիրումը գործով են ապացուցել կառավարական պարգևների արժանացած Վոլոդյա Ծախկյանը, Արթուր Խաչատրյանը, Աշոտ Բեժանյանը, ուրիշ հայորդիներ, որոնք աֆղան ժողովրդին օգնել են պաշտպանելու իրենց նվաճումները իմպերիալիզմի ոտնձգություններից:

Չեռնոբիլյան ողբերգությունից տուժած բնակիչներին եղբայրական օգնության ձեռք մեկնեցին նաև հայ ուսանողները, որոնց ուժերով կառուցված բնակելի համալիրը լավագույններից մեկը ճանաչվեց: Մոլդավիայում տեղի ունեցած տարերային աղետի հետևանքները վերացնելու գործում իրենց ծանրակշիռ ներդրումն ունեցան նաև հանրապետության պրոֆտեխուսումնարանների ավելի քան 1.000 սովորողներ: Այս տարի շուրջ 800 երիտասարդներ կամավոր մեկնել և աշխատում են Արևմտյան Սիբիրում և Հեռավոր Արևելքում, մեր մեծ երկրի տարբեր շրջաններում: Այսպիսին է իսկական ինտերնացիոնալիզմը:

Անհրաժեշտ է պատանիների և աղջիկների մոտ այսուհետև էլ հետևողականորեն արմատավորել լենինյան ազգային իմաստուն քաղաքականության հիմնադրույթների խոր գիտակցություն, դաստիարակել նրանց Սովետական Միության բոլոր ժողովուրդների, ամենից առաջ ռուս մեծ ժողովրդի հանդեպ եղբայրության և բարեկամության ոգով: Դրան պետք է նպատակաուղղել Հոկտեմբերյան մեծ հեղափոխության 70-ամյա հոբելյանի նախապատրաստման ողջ ընթացքը:

Երիտասարդական կազմակերպությունն իր կարևորագույն խնդիրն է համարում ակտիվորեն մասնակցել կուսակցության առաջադրած այնպիսի կարևոր խնդիրների իրականացմանը, ինչպիսիք են՝ թողարկվող արտադրանքի բարձր որակի, գիտատեխնիկական առաջընթացի ապահովումը, խնայողության ռեժիմի պահպանումը, լեռնային և նախալեռնային շրջանների բնակչության թվի նվազման միտում ունեցող գյուղերը երիտասարդ ընտանիքներով ամրապնդելը, ագրոարդյունաբերական համալիրի վճռորոշ տեղամասերի նկատմամբ շեֆության ստանձնումը և այլն:

կոմերիտական տարբեր կազմակերպություններում, երիտասարդական կոլեկտիվներում ծնված նախաձեռնություններն ու շարժումները, հարվածային աշխատանքի օրինակներն այն բանի ապացույց են, որ հանրապետության պատանիներն ու աղջիկները պատասխանատվության բարձր զգացումով են ընդունում Սովետական Միության աշխատավորներին ուղղված ՍՄԿԿ Կենտկոմի դիմումը, գործնական աշխատանքով կյանքի են կոչում ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի որոշումը տասներկուերորդ հնգամյակի առաջադրանքների կատարման համար համաժողովրդական սոցիալիստական մրցություն ծավալելու մասին:

Պատանիների և աղջիկների շրջանում լայն արձագանք է գտել «ՎԱՋ» արտադրամիավորման երիտասարդ բանվորների հայրենասիրական նախաձեռնությունը՝ ընթացիկ տարում առնվազն չորս հանգստյան օր անհատույց աշխատել հիվանդանոցների, դպրոցների, մշակույթի տների, բնակելի տների շինարարություններում:

Հարվածային աշխատանքի նման օրինակներ կարելի է շատ թվարկել: Հանրապետության երիտասարդությունը գործնական աշխատանքով մասնակցում է կուսակցության XXVII համագումարի առաջադրած վերակառուցման, վերափոխման կուրսի իրականացմանը: Սակայն ճիշտ չի լինի բավարարվել այսօրվա ունեցածով: Կյանքի բոլոր բնագավառներում արմատական բեկում մտցնելու համագումարյան պահանջին անհրաժեշտ է մոտենալ ավելի մեծ պատասխանատվությամբ ու գործարարությամբ: Մեզ դեռևս չի բավարարում երիտասարդության աշխատանքային դաստիարակության արդյունավետության մակարդակը: Կոմերիտական կազմակերպությունները դեռևս անհրաժեշտ օգնություն չեն ցույց տալիս երիտասարդության մասնագիտական կողմնորոշման հարցերի լուծմանը: Չնայած վերջին տարիներին Կենտրոնական կոմիտեն այդ նպատակով շոշափելի աշխատանք է կատարել, ծավալել «Մեր բնագիծը բարձր որակավորումն է» շարժումը, այնուհանդերձ մեզ լրջորեն անհանգստացնում է այդ բնագավառում իրականացվող միջոցառումների ցածր մակարդակը: Հարկավոր է կանգնեցնել այն իներցիան, երբ կոմերիտական կազմակերպությունները բավարարվում են ընդհանուր թվերով, ցուցանիշներով՝ դրանց ետևում մոռանալով անհատի, երիտասարդի կոնկրետ ներդրումը: Իսկ հիմնարկ-ձեռնարկությունների շատ վարչական ղեկավարներ, ամփոփելով սոցմրցության արդյունքները, հաշվի չեն առնում երիտասարդների միջև կազմակերպված մրցությունը, դրա առանձնահատկությունները, աչքաթող են անում կոմերիտական կազմակերպության կարծիքը, նրա որոշումը: Երիտասարդության հետ առնչվող բոլոր հարցերը լուծվում են առանց կոմերիտական կազմակերպության՝ դրանով իսկ մեծ հարված հասցնելով կազմակերպության հեղինակությանը:

Անշուշտ, բոլորս այն կարծիքին ենք, որ մեր երիտասարդությունը մոդայիկ է, խստապահանջ, երբ հարցն իր հագնելուն է վերաբերում: Եվ որքան էլ ցավալի է, հաճախ հենց այդ երիտասարդը թողարկում է ցածրորակ ու անճաշակ արտադրանք՝ մոռանալով, որ ինքը նույնպես գնորդ է...

Մեր նպատակն է հասնել այն բանին, որ երիտասարդությունը հայրենական արտադրանքի որակի համար ծավալի ամենամեծ շարժումը, լինի այդ գործի կազմակերպման առաջատար, որ յուրաքանչյուր կոմերիտական անմիջականորեն պատասխանատու լինի խոտանի, ժամանակի պահանջներին չբավարարող արտադրանքի համար, ոչ թե ընդհանուր, վերացական խոսքերով, այլ կոնկրետ, անձնական մասնակցությամբ շտկի վիճակը, հանդես բերի իսկական տիրոջ վերաբերմունք, արտացավություն:

ՀԼԿԵՄ Կենտկոմի բյուրոն և ՀՍՍՀ թեթև արդյունաբերության մինիստրության կոլեգիան հավանություն տվեցին տրիկոտաժի № 1 արտադրամիավորման՝ Ալվարդ Մնացականյանի ղեկավարած կոմերիտական-երիտասարդական բրիգադի նախաձեռնությանը. «Արտադրվում է Հայաստանում՝ արտադրվում է գերազանց», և որոշեցին բրիգադի փորձը տարածել հանրապետությունում:

Մեր վերջին ուսումնասիրությունների արդյունքները ցույց տվեցին, որ ՀԼԿԵՄ Թալինի, Ստեփանավանի, Հոկտեմբերյանի շրջկոմները, Երևանի կաբելի գործարանի, մետաքսի կոմբինատի, Լենինականի Լուկաշինի անվան մանածագործարանի կոմերիտական կազմակերպությունները զգալի անելիքներ ունեն բարձրորակ արտա-



դրանքի թողարկման, աշխատանքի կազմակերպման առաջավոր եղանակների արմատավորման, բրիգադային կապալի ներդրման, սոցիալիստական մրցության կազմակերպման, խնայողության և տնտեսվարության անձնական հաշիվների ստեղծման գործում: Այս պահանջը ներկայացվում է նաև մյուս կոմերիտական կազմակերպություններին:

ՍՄԿԿ Կենտկոմի ապրիլյան (1985 թ.) պլենումը և XXVII համագումարը սրությամբ դրեցին գիտատեխնիկական առաջընթացի արագացման խնդիրը: Կոմերիտական կազմակերպությունների առաջնահերթ պարտքն է երիտասարդությանն ակտիվորեն ներգրավել գիտատեխնիկական առաջընթացի արագացման կուրսի իրականացմանը: Հենց երիտասարդությունն է կոչված՝ իր ձեռքը վերցնելու նոր տեխնիկայի ու տեխնոլոգիայի մշակման, դրանց ներդրման գործը, վստահորեն կառավարելու արտադրության մեջ լայնորեն ներդրվող ռոբոտներն ու մանիպուլյատորները: Իսկ այս ամենի համար նա պետք է հոգեբանորեն պատրաստ լինի, զգա, որ հնարավոր չէ այսօր որակյալ բանվոր, ինժեներ կամ ուսուցիչ լինել՝ առանց հաշվողական տեխնիկայի այբուբենն իմանալու: Իսկ այսպիսի հոգեբանության դաստիարակման համար փորձում ենք համագործակցել տարբեր մինիստրությունների ու գերատեսչությունների հետ:

Անցած ուսումնական տարվանից հանրակրթական դպրոցների բարձր դասարաններում մտցվեց նոր առարկա. «Ինֆորմատիկայի և հաշվողական տեխնիկայի հիմունքներ»: Այդ խնդրի հաջող լուծման համար, ելնելով ՀԿԿ Կենտկոմի համապատասխան որոշման պահանջներից, ՀՍՍՀ լուսավորության, բարձրագույն և միջնակարգ-մասնագիտական կրթության մինիստրություններն ուրիշ գերատեսչությունների հետ լայնորեն ներգրավեցին երիտասարդ գիտնականներին ու մասնագետներին: Բազմաթիվ կոմերիտական կազմակերպություններ դարձան այդ գործի կազմակերպիչներ: Բուհերի բազայի վրա անցկացվեց ուսուցիչների վերապատրաստում, հաշվողական տեխնիկա ունեցող լաբորատորիաներն ու կաբինետներն ստանձնեցին ենթաշեֆ դպրոցների բարձրդասարանցիներին ծրագրավորման տեխնիկային ծանոթացնելու շեֆությունը, շատ տեղերում ստեղծվեցին առանձին խմբակներ, ակումբներ:

Երիտասարդությանը գիտատեխնիկական առաջընթացին հաղորդակցելը հարկ է դիտել իբրև այնպիսի շարժում, ինչպիսին 20-ական թվականներին կոմերիտմիության շարժումն էր անգրագիտության վերացման համար:

Գիտության և տեխնիկայի աննախադեպ վերելքը և զարգացման հեռանկարները մեծապես պայմանավորված են երիտասարդ գիտնականների և մասնագետների որոնողական աշխատանքների մակարդակով, նրանց գործնական կիրառությամբ: Այս առնչությամբ ՀԼԿԵՄ Կենտկոմը ԵԳԽ-ի հետ համատեղ որոշակի համակարգ է մշակել երիտասարդների գիտատեխնիկական ստեղծագործության զարգացումն ապահովելու, նրանց ժամանակակից արագացման կուրսի լիարժեք մասնակիցը դարձնելու համար:

Նորարարական համարձակ առաջարկությունների, դրանք արտադրության մեջ վճռականորեն ներդնելու գործնական քայլեր մենք առաջին հերթին ակնկալում ենք երիտասարդներից: ՀԼԿԵՄ Կենտկոմին առընթեր բացվել է շտաբ, որտեղ կենտրոնացվում, հավաքվում են երիտասարդության արած առաջարկությունները, նորարարությունները: Դրանք մշակվում և ուղարկվում են համապատասխան կազմակերպություններ: Կոմերիտմիության կոմիտեները դեռևս մեծ աշխատանք ունեն կատարելու բազմաթիվ երիտասարդ ռացիոնալիզատորների և գյուտարարների արժեքավոր առաջարկությունները ներդնելու, դրանցից ստացված օգուտը արտադրության հետագա զարգացմանը ծառայեցնելու գործում:

Գիտատեխնիկական հեղափոխության արագացման ասպարեզում իր որոշիչ խոսքը պետք է ասի բուհական գիտությունը, որի անխզելի և բաղկացուցիչ մասն է կազմում ուսանողական գիտությունը: Լավ օրինակներ, փաստեր շատ կան. միութենական ոսկե մեդալներ և առաջին կարգի մրցանակներ են նվաճում մեր ուսանողները: Բայց ինչպիսի՞ն է դրանց տեսակարար կշիռը, ինչպե՞ս են կազմակերպվում բուհերում ուսանողական գիտահետազոտական աշխատանքները: Միայն այն փաստը, որ ուսանողների ընդամենը 6 տոկոսն է ընդգրկված 261 տնտեսական-պայմանագրային և պետբյուջետային թեմաների կատարման աշխատանքների մեջ,

լուրջ խնդիրներ է առաջադրում բարձրագույն դպրոցի կոմերիտական կազմակերպություններին: Հատկապես անհանդուրժելի է, որ առաջին և երկրորդ կուրսերի ուսանողները սակավ են ընդգրկվում գիտահետազոտական աշխատանքներում: Բուհերի կոմերիտական կազմակերպությունները, հիմնականում զբաղվելով ցածր առաջադիմություն ունեցող ուսանողներով, հաճախ մոռացության են մատնում լավագույններին հուզող պրոբլեմները, նրանց շուրջը չեն ստեղծում հասարակական կարծիք, չեն խրախուսում և չեն օգնում ուսանողին ապագա գիտնականի նախատիպ ձևավորելու հարցերում:

ՍՄԿԿ XXVII համագումարում նշվեց. «Ուսուցման առաջին տարիներից իսկ ուսանողները պետք է ներգրավվեն հետազոտական աշխատանքում, մասնակցեն արտադրության մեջ դրա արդյունքների ներդրմանը: Միայն այսպես կարելի է դաստիարակել իսկական գիտնականներ, ստեղծագործաբար մտածող մասնագետներ»: Կոմերիտմիության կոմիտեների խնդիրն է՝ լրջորեն զբաղվել երիտասարդների գիտատեխնիկական ստեղծագործության զարգացմամբ, համակողմանիորեն ակտիվացնել երիտասարդ գիտնականների խորհուրդների գործունեությունը, անմիջականորեն մտահոգվել ժողովրդական տնտեսության մեջ դիսերտացիաների, գյուտարարական առաջարկությունների ներդրման հարցերով: Երբ արվածը գնահատում ենք բարձրագույն դպրոցի վերաբերյալ կուսակցության և կառավարության որոշման չափանիշներով, ապա նկատում ենք լուրջ թերացումներ և բացթողումներ: Հատկապես խիստ անբավարար է սովորողների տեխնիկական ստեղծագործության զարգացման աշխատանքը: Շատերը փորձում են դա բացատրել նյութատեխնիկական բազայի անմխիթար վիճակով: Մինչդեռ դա հարցի սոսկ մի կողմն է, եթե կա ցանկություն, նվիրվածություն, ապա բազան բոլորովին էլ առաջնային չէ: Այսպես, Նաիրիի շրջանի պատանի տեխնիկների կայանը գտնվում է նկուղային հարկում, սակայն դա չխանգարեց, որ նրա սանի՝ իններորդ դասարանցի Երեմ Սարգսյանի, լավաշ թարմացնող սարքը Միության մասշտաբով նվաճեր մրցանակ: Հետևաբար, երեխայի մեջ մանկուց պետք է սեր ներարկել դեպի տեխնիկան, գիտության նվաճումները: Այդ կապակցությամբ անհրաժեշտ է համակողմանիորեն բարձրացնել ընտանիք—մանկապարտեզ, դպրոց—բուհ—արտադրություն շղթայի բոլոր օղակների պատասխանատվությունը:

ՍՄԿԿ XXVII համագումարի առաջադրած վերակառուցման և վերափոխման կուրսը մեզանից պահանջում է շրջադարձային բեկում մտցնել նաև գյուղի երիտասարդության հետ տարվող աշխատանքում: Ագրոարդյունաբերական համալիրների ստեղծումով որակական նոր խնդիրներ է առաջադրվում կոմերիտական կազմակերպություններին: Այստեղ խոսքը ոչ միայն նրան արտադրողական աշխատանքում, արտադրության վճռական տեղամասերում ընդգրկելու մասին է, այլև գյուղի սոցիալ-տնտեսական վերափոխման մեծամասշտաբ ծրագրերի իրականացմանն նպատակով կոմերիտական կազմակերպությունների ծավալած գործունեությանը կոմպլեքսային մոտեցման, գյուղատնտեսության հետագա զարգացման, արտադրական պրոցեսների ավտոմատացման, տեխնիկայի տիրապետման, թաքնված ռեզերվների հայտաբերման ու ներդրման, մթերատվության բարձրացման ասպարեզում երիտասարդության առաջավոր դերի ապահովման մասին: Եվ հիմնականն այսօր արտադրության աննախադեպ զարգացումն է, նրա տեխնիկական վերազինումը, այդ գործերին երիտասարդությանը մասնակից դարձնելը: Այս առնչությամբ օրինակները շատ են, նշեմ երկուսը. կոմերիտմիության նախաձեռնությամբ Իջևանի շրջանի Ենոքավան գյուղում ստեղծվել է «Կոմերիտական սովխոզ», Նաիրիի շրջանում կերի կուտակման ամբողջ ընթացքում բոլոր մեքենաները տրամադրվել էին երիտասարդներին:

Այժմ առավելապես է կարևորվում սոցիալիզմի վեհ գաղափարներին նվիրված, բարոյապես կայուն երիտասարդների դաստիարակումը: Նրանց շրջանում նկատվող նոր տրամադրություններին և միտումներին ճիշտ ուղղվածություն հաղորդելու համար հարկավոր է ճկուն, բանիմաց և գործունյա աշխատանք, կյանքի հրատապ խնդիրների լիարժեք իմացություն:

Աշխարհը զարգանում է ինչպես տնտեսական, այնպես էլ գաղափարախոսական անհաշտ և օրավուր սրվող պայքարի պայմաններում: Այդ պայքարի մեջ մեր երիտասարդությանը պետք է ճիշտ նպատակաուղղել, օգնել՝ ըմբռնելու կապիտալիզմի



և սոցիալիզմի հակասությունները, պաշտպան կանգնելու Հոկտեմբերի նվաճումների, սոցիալիստական ապրելակերպի առավելություններին, պապերի ու հայրերի հետ կողք-կողքի մասնակցելու այդ նվաճումների բազմապատկմանը, միշտ անվարան պահելու սոցիալիզմի ու խաղաղության դրոշը: Այսպիսի մասշտաբային խնդիրների լուծման համար պահանջվում է երիտասարդության բոլոր կատեգորիաների քաղաքական կուլտուրայի, քաղաքացիության ձևավորում: Անցած ուսումնական տարում ՀԼԿԵՄ Կենտկոմը շահագրգռված մի շարք կազմակերպությունների հետ դպրոցականների շրջանում (6—10-րդ դասարաններ) անցկացրեց քաղաքական գիտելիքների գիտակների հանրապետական առաջին օլիմպիադան, որը նոր խոսք էր աշակերտների քաղաքական գիտելիքների հարստացման գործում:

Մեզ ամենից շատ մտահոգում է արտադրության ոլորտի երիտասարդության հետ տարվող աշխատանքը: Գաղտնիք չէ, որ կոմերիտական քաղլուսցանցի շատ պարապմունքներ անցնում են ձևականորեն, գաղափարական ցածր մակարդակով, պրոպագանդիստների ոչ պատշաճ պատրաստվածության, ունկնդիրների պասիվության պայմաններում: Հաճախ քաղաքական ուսուցման պարապմունքներում չեն տրվում երիտասարդությանը հուզող անհրաժեշտ հարցերի պատասխանները: Այսօր հրատապ է դարձել կոմերիտական քաղաքական ուսուցման ցանցի վերակառուցումը: ՀԼԿԵՄ Կենտկոմը, քաղկոմ-շրջկոմները ջանում են գտնել պարապմունքների անցկացման նոր, ճկուն ձևեր ու մեթոդներ, բարելավել քաղաքական ինֆորմացիայի դրվածքը երիտասարդության շրջանում: Այդ ասպարեզում արդեն զգալի առաջխաղացում կա: Փաստ է նաև, որ երիտասարդության միջավայրում խմորվող տարբեր միտումներն ու ձգտումները դեռևս չեն գտնում իրենց անհրաժեշտ գիտական հիմնավորումը, չեն դառնում լուրջ ուսումնասիրության առարկա: Այս հարցում մեզ վատ են օգնում ՀՍՍՀ ԳԱ հասարակագիտական ինստիտուտներն ու համալսարանի ամբիոնները: «Անվիճելի է այն փաստը,— համագումարում նշեց Մ. Ս. Գորբաչովը,— որ խելացի և ճշմարտացի խոսքը ներգործության հսկայական ուժ ունի, բայց նրա նշանակությունը հարյուրապատկվում է, եթե այն միացվում է քաղաքական, տնտեսական և սոցիալական քայլերի հետ»:

Ցավոք, ԼԿԵՄ կոմիտեները դեռևս չեն կարողացել բարձրացնել անհատական աշխատանքի արդյունավետությունը, յուրաքանչյուր պատանու և աղջկա մոտ արմատավորել ակտիվ կենսադիրքորոշում, բարձր գաղափարաբարոյական հատկանիշներ: Հաճախ սկզբնական կոմերիտական կազմակերպության քարտուղարին չի մտահոգում այն փաստը, որ կազմակերպվող տարբեր միջոցառումներին, հանդիպումներին մասնակցում են համարյա նույն մարդիկ, որոնք առանց այն էլ ակտիվ են, ունեն գաղափարաքաղաքական անհրաժեշտ մակարդակ: Մինչդեռ այդ միջոցառումների նպատակն է հասարակական-քաղաքական ու բարոյական ներազդման ոլորտը ներգրավել ողջ երիտասարդությանը, հատկապես նրանց, ովքեր դեռևս չունեն գաղափարական և բարոյական կայուն սկզբունքներ և համոզմունքներ, դըրսևորում են մեր բարոյականությանն անհարիր երևույթների ազդեցության տակ ընկնելու միտումներ: Կոմերիտմիության կոմիտեների գաղափարախոսական գործունեության մեջ անհատական աշխատանքի դերի թերագնահատմամբ պետք է բացատրել նաև այն փաստը, որ դեռևս պատշաճ բարձրության վրա չէ երիտասարդության աթեիստական դաստիարակությունը: Այսօր կրոնական վերապրուկներր դեմ մղվող պայքարը հիմնականում տարվում է տարբեր մասսայական միջոցառումների, գլխավորապես դասախոսությունների միջոցով: Ընդ որում, այդ միջոցառումներին հավատացյալ կամ կրոնական որոշակի հակումներ դրսևորած երիտասարդները հազվադեպ են մասնակցում: Գաղափարական աշխատանքի արդյունավետությունը զգալիորեն կբարձրանա, եթե նրա ծանրության կենտրոնը ևս լիովին տեղափոխվի ներքին օղակ, եթե յուրաքանչյուր երիտասարդի մոտ լայն տեսական մտահորիզոնի, ամուր գաղափարական համոզվածության և, առաջին հերթին, բարձր քաղաքացիականության, հայրենասիրության զգացումների ձևավորումն ու արմատավորումը դառնան յուրաքանչյուր պրոպագանդիստի, յուրաքանչյուր դասախոսի առաջնահերթ և կարևորագույն խնդիրը:

Գաղափարախոսական աշխատանքի հաջող և արդյունավետ կազմակերպումը, այդ համակարգի համակողմանի զարգացումը մեծապես պայմանավորված են մասսայական ինֆորմացիայի և պրոպագանդայի միջոցների նպատակաուղղված, գործուն աշխատանքով: Վերակառուցման խնդիրն այն է, որ երիտասարդական թերթերն ու ամսագրերը համակողմանիորեն բարձրացնեն հրապարակումների ինֆորմացիոն և գաղափարական հագեցվածությունը, ժամանակին անդրադառնան կյանքի հրատապ պրոբլեմներին, խորությամբ ուսումնասիրեն դրանք, բացահայտեն դրանց էությունը, նախանշեն լուծման ուղիները:

Մեր երիտասարդական պարբերականներն զգալիորեն «ծերացել են» թե՛ իրենց ստեղծագործական կոլեկտիվի անդամների տարիքի առումով և թե բարձրացրած հարցերի կարևորության ու մատուցման մակարդակով: Այսպես, հրապարակումներում հիմնական որակ են կազմում շաբլոն մտածողությունը, առկա պրոբլեմների նկատմամբ մակերեսային մոտեցումը, քանզի լրագրողները չեն խորանում արծարծվող հարցերի մեջ, մինչև վերջ հետամուտ չեն լինում դրանց լուծմանը: Լրագրողներից շատերը լիովին չեն գիտակցում, ավելի ճիշտ՝ չեն ըմբռնում մեր հոգսերը, չեն զգում ժամանակի շունչը, ի վիճակի չեն վերակառուցել իրենց գործունեությունը արդի պահանջներին համապատասխան:

Կոմերիտմիության առաջնահերթ խնդիրներից են երիտասարդության ազատ ժամանակի և հանգստի բովանդակալից ու արդյունավետ կազմակերպումը, վերջիններիս իրականացման հստակ համակարգի մշակումը: Այստեղ հարկավոր է միջոցներ ձեռնարկել՝ վճռականորեն հրաժարվելու ոչինչ չասող, կազմակերպչական ջանքեր և մարդկային ուժեր վատնող մասսայական միջոցառումներից, քանի որ դրանք հիմնականում միօրինակ են, չունեն պատշաճ հուզական ներգործություն և, բնականաբար, չեն կարող բավարարել դիտողի դերում գտնվող երիտասարդի հոգևոր պահանջմունքները:

Ինտերնացիոնալ բարեկամության յուրօրինակ ստուգատես էր ՀԼԿԵՄ Կենտկոմի կազմակերպած անդրկովկասյան «Ուսանողական գարուն» փառատոնը: Օգտագործելով մեր վեհաշուք մարզահամերգային համալիրի հնարավորությունները՝ հինգ հազարից ավելի հանդիսատեսներ դարձան փառատոնի նաև մասնակիցներ, և բարեկամության մեծ տոնի վերածվեց այն:

Երիտասարդության ազատ ժամանցի և հանգստի կազմակերպման նպատակով կոմերիտմիության Կենտկոմի նախաձեռնությամբ սկսվել է առավելագույն հատույցով օգտագործվել ոչ ալկոհոլային հասարակական սննդի օբյեկտների, գրադարանների, թանգարանների, մարզահրապարակների և մարզամշակութային համալիրների հնարավորությունները: Հարկ է նշել, որ անմխիթար վիճակում են մեր մանկական սրճարանները: Առկա իրադրությունը հրամայաբար պահանջում է, որ ՀԼԿԵՄ շրջկոմները, համապատասխան կազմակերպությունների հետ, նպատակասլաց և գործնական աշխատանք տանեն մանկական սրճարանների վիճակը բարելավելու, դրանք մանուկների բարոյագեղագիտական դաստիարակության, արդյունավետ հանգստի վայրեր դարձնելու համար:

Երկրի մի շարք քաղաքների օրինակով մեզ մոտ ևս սկիզբ է դրվում ինքնավճարման կարգով աշխատող երիտասարդական ակումբ-սրճարանների կազմակերպմանը: Վերջիններս կոչված են դառնալու ոչ միայն հաճելի ժամանցի, այլև ստեղծագործական ձեռքբերումների և ընդունակությունների բացահայտման կենտրոններ: Այս հարցում մենք ակնկալում ենք հանրապետության կուլտուրայի և առևտրի մինիստրությունների, ինչպես նաև ժողովրդական դեպուտատների քաղաքային ու շրջանային գործադիր կոմիտեների օգնությունը: Ազատ ժամանցի կազմակերպման առումով զգալի գործ ունի անելու երիտասարդության պալատը: Արդյունավետ են սկսել օգտագործվել նկուղային և կիսանկուղային տարածությունները, ըստ բնակավայրի ակումբները:

Ուսանողական ջոկատները կոմերիտմիության շրջկոմների հետ մեկտեղ այս տարի ձեռնամուխ են եղել Վարդենիսի, Կամոյի շրջաններում վթարային վիճակում գտնվող ակումբների և գրադարանների վերակառուցմանը: Թատերական, մանկավարժական և պոլիտեխնիկական ինստիտուտների ուսանողների ուժերով իրականացվում են դրանց ձևավորման աշխատանքները:



Պակաս կարևոր չէ նաև երիտասարդ ստեղծագործողների ուժերի ճիշտ օգտագործումը պատանիների և աղջիկների գաղափարաքաղաքական դաստիարակության նպատակով: Հետևաբար, ՀԼԿԵՄ քաղկոմ-շրջկոմները, Կենտկոմի համապատասխան բաժինները շատ անելիքներ ունեն երիտասարդական թատրոնների խաղացանկը ճշգրտելու, նրանում երիտասարդ հեղինակների ժամանակակից, կենսական պրոբլեմներ բարձրացնող պիեսներ ընդգրկելու, դրանք գեղարվեստական պատշաճ մակարդակով հանդիսատեսին մատուցելու առումով:

Համագումարի պահանջներից ելնելով՝ առաջին պլան է մղվում երիտասարդության էկոլոգիական դաստիարակությունը: Բնության պահպանության գործին յուրաքանչյուր պատանու և աղջկա ներգրավումը դարձել է պարտքի զգացում եկող սերունդների առջև: Հիրավի, բնության պահպանությունը շնորհակալ ու վսեմ պարտականություն է ամեն մի երիտասարդի, ամեն մի կոմերիտականի համար: Վերջերս ՀԼԿԵՄ Կենտկոմի բյուրոն հավանություն տվեց Օստրովսկու անվան մանկավարժական ուսումնարանի փորձին և խնդիր դրվեց, որ ուսումնական հաստատությունների յուրաքանչյուր աղջիկ սովորող կարողանա աճեցնել ծաղիկ, թուփ: Այն կօգնի նրա մեջ ձևավորելու գեղեցիկի զգացում, գեղագիտական ճաշակ, խնամք ու սեր դեպի բնությունը, ծաղիկը, հետևաբար և երեխան:

Էկոլոգիական դաստիարակության առումով խիստ շահեկան է հանրապետության տարածքում ընկուզենիներ տնկելու՝ երիտասարդության ծավալած շարժումը, որն սկսվել է ՀԼԿԵՄ Կենտկոմի հանձնարարությամբ: Արդեն հիմնվել են հազարավոր հեկտար այգիներ: Միայն ընթացիկ աշնանը տնկվել է 100 հազար ընկուզենի: Մեր նպատակն է, որ ամեն մի երիտասարդ ունենա իր ընկուզենին:

Կոմերիտական կազմակերպություններն անհաշտ պայքար են մղում առողջ կենցաղին խանգարող մի այնպիսի երևույթի դեմ, ինչպիսին ծխախոտն է: Այդ պայքարը պետք է դառնա բոլոր կոմերիտական կազմակերպությունների օրվա խնդիրը՝ թե՛ բուհում, թե՛ դպրոցում, արտադրությունում և թե հասարակական վայրերում:

Վերակառուցման վերաբերյալ կուսակցության արդիական հարցադրումները մեզնից պահանջում են սթափ ու անկողմնակալ հայացքով գնահատել կոմերիտական կազմակերպություններում, ներմիութենական աշխատանքներում տիրող գործերի վիճակը: Կուսակցության պատմական որոշումները կոմերիտմիությանը նպատակամղում են ստեղծագործական, նորարարական մոտեցում ցուցաբերելու վստահված գործի հանդեպ: Երկրի կոմունիստների մեծ համաժողովի առաջին և ամենաուսանելի դասը ճշմարտության դասն է, որը կոմերիտական յուրաքանչյուր աշխատողից պահանջում է բազմակողմանի վերլուծել իր գործունեությունը, տեսնել աշխատանքում տեղ գտած թերությունները, սխալները, ինքնաքննադատաբար գնահատել դրանք, նախանշել դրանց վերացման կոնկրետ ուղիները: Աշխատանքներ են տարվում թղթարարությունը կրճատելու, միջոցառամոլության, կոնկրետ գործունեությամբ չհիմնավորված ելույթների և խոստումների պրակտիկայից ձերբազատվելու համար: Այժմ կոմերիտական աշխատանքի ծանրության կենտրոնը փոխադրում ենք ստորին, սկզբնական օղակներ՝ դրանով իսկ ապահովում գործնականություն, աճող սերնդի կոմունիստական դաստիարակության ասպարեզում հասնում կոնկրետ արդյունքների, լուծում թեկուզ փոքր, սակայն որոշակի խնդիրներ:

Մենք ձեռնարկում ենք գործնական միջոցներ՝ վերակառուցելու նաև ՀԼԿԵՄ Կենտկոմի ապարատի աշխատանքը: Առաջին հերթին լուրջ ուշադրություն ենք դարձնում հարցերի պլանավորմանը: Յուրաքանչյուր բյուրոյում և քարտուղարությունում լսվում է մեկական հարց, որը նպաստում է ընդունված որոշումների, ՀԼԿԵՄ քաղկոմ-շրջկոմներին ուղարկվող գրությունների նվազմանը: Աշխատում ենք հարցերի ուսումնասիրությունը կազմակերպել այնպես, որ այդ աշխատանքներում միանգամից ընդգրկվեն Կենտկոմի մի քանի բաժիններ: Հարցերի ուսումնասիրության մեջ ընդգրկում ենք ՀԼԿԵՄ Կենտկոմի, վերստուգիչ հանձնաժողովի անդամներին, մշտական հանձնաժողովներին, ՀԼԿԵՄ Կենտկոմին կից մյուս հասարակական միավորումներին: Հետևողականորեն իրականացվում է ընդունված որոշումների կատարման վերահսկողությունը, որը մեծապես նպաստում է ուսումնասիրությունների արդյունավետության բարձրացմանը:

Զգալիորեն կրճատել ենք մասսայական միջոցառումների քանակը, ավելի մեծ նշանակություն ենք տալիս ներքին օղակներին օգնություն ցույց տալու, գործուղումների նպատակասլացության բարձրացման և մյուս կազմակերպական հարցերին: Ապարատի յուրաքանչյուր աշխատող տարեկան 100—120 օր լինում է գործուղման մեջ:

Հետևողական աշխատանք է տարվում բարձրացնելու ապարատի յուրաքանչյուր աշխատողի անձնական պատասխանատվությունը, գործիմացությունը: Դրան են ծառայում հաշվետվությունները պարբերաբար ունկնդրելու պրակտիկան, մեթոդաբանական սեմինարներին նրանց ելույթները, կոմերիտական աշխատողների ստաժավորումը և այլն:

ՍՄԿԿ XXVII համագումարում նշվեց, որ երիտասարդության հետ տարվող աշխատանքը պետք է կրի որոնողական բնույթ, լինի հետաքրքիր, բազմաբովանդակ և, որ ամենակարևորն է, մատչելի ու մոտ պատանեկությանը: Այլապես կոմերիտմիությունը կզիջի երիտասարդության ավանգարդի իր դիրքերը, ի վիճակի չի լինի առաջնորդել նրան դեպի կարևոր խնդիրների կենսագործում:

Ժամանակը պահանջում է քննադատաբար վերաբերվել սեփական գործունեությանը, աշխատանքը կազմակերպելիս տեսնել հեռանկարը, լուծել կոմպլեքսային հարցեր, զորավիգ լինել ամեն մի նորին, առաջավորին: Իսկ այդպիսին լինելու համար պետք է միշտ ունենալ չբավարարվածության զգացում, այն դարձնել ապրելու նորմ: Սա է յուրաքանչյուր կոմերիտական աշխատողի, ակտիվիստի առաջնահերթ խնդիրը: Վերակառուցումը յուրաքանչյուրը պետք է սկսի ինքն իրենից, իր աշխատանքի ոճի փոփոխությունից, լուծելի խնդիրների վերաարժեքավորումից, իր իսկ գործունեության վերաիմաստավորումից:

Այսօր կոմերիտական աշխատանքի են առաջ քաշվում ըստ մասնագիտությամբ աշխատած, սովետական բանակում ծառայած փորձված երիտասարդներ, որոնց միջին տարիքը հասնում է 27-ի (ստացիոնար կրթությամբ): Փաստորեն կոմերիտական ազատված աշխատանքի են անցնում այն հասակում, որը տվյալ ասպարեզում տարիքային առումով այնքան էլ նպատակահարմար չէ: Այս պրոբլեմից խուսափելու համար հիմնարկ-ձեռնարկությունների ԼԿԵՄ կոմիտեների քարտուղարների կոմերիտական աշխատանքի ստաժը կարելի է համարել մասնագիտական, եթե նրանց մասնագիտությունը համընկնում է ձեռնարկության պրոֆիլին: Կամ մեր ինժեներները, մասնագետները սովետական բանակում հիմնականում կատարում են մասնագիտական աշխատանք, որը նույնպես կարելի է աշխատանքային կոլեկտիվի բովով անցած տարիներ համարել: Հակառակ դեպքում արդեն նկատվում է այն միտումը, որ կոմերիտական աշխատանքի հնարավոր է վերցնել միայն երեկոյան և հեռակա կրթություն ստացողներին: Իսկ դա նեղացնում, փոքրացնում է կադրերի ընտրության հնարավորությունները: Կադրերին պետք է ընտրել ամենալայն դեմոկրատիայի պայմաններում, հաշվի առնել կոլեկտիվի կարծիքը, անհատական հատկանիշները և ոչ թե անկետային տվյալները: Այստեղ ամենաճիշտը, կրկնում եմ, անհատական մոտեցումն է: Հայաստանի կոմկուսի Կենտկոմի 1986 թ. հուլիսյան պլենումում ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը նշեց, որ «Շատ կարևոր է խորապես ուսումնասիրել և լավ ծանոթ լինել կադրերի քաղաքական, գործարար և բարոյական հատկանիշներին, դրանք խստորեն հաշվի առնել ցանկացած ղեկավար պոստում առաջադրելիս»:

Կատարելով իրենց հիմնական խնդիրը՝ կոմերիտական կազմակերպությունները մշտապես պետք է հիշեն, որ սոցիալիզմի վեհ գաղափարներին նվիրված, բարոյապես կայուն երիտասարդների դաստիարակումը, նրանց շրջանում նկատվող նոր տրամադրություններին և միտումներին ճիշտ ուղղվածություն հաղորդելը մեզանից պահանջում են ճկուն, բանիմաց և գործունյա աշխատանք, կյանքի, մեր առջև ծառացած հրատապ խնդիրների լիարժեք իմացություն:

Ղեկավարվելով կուսակցության պահանջներով՝ հանրապետության կոմերիտական կազմակերպությունները հայրենասիրական ավյունով գործի են վերածում ՍՄԿԿ XXVII համագումարի վսեմ կանխագծումները:

---

# ԳԱՂԱՓԱՐԱԽՈՍԱԿԱՆ ԳՈՐԾՈՒՆԵՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ԱՐԴԻ ԶԱՐԳԱՑՄԱՆ ԽՆԴԻՐՆԵՐԸ

**Ռ. ՄԻՐԶԱԽԱՆՅԱՆ**
**Պատմական գիտությունների թեկնածու**

ՍՄԿԿ XXVII ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ պատմական մեծ նշանակություն ունեցող իրադարձություն էր, որը մշակեց սովետական հասարակության հետագա զարգացման համակողմանիորեն հիմնավորված ծրագիր:

«Մեր խնդիրն է,— նշեց Մ. Ս. Գորբաչովը,— լայնորեն, լենինաբար իմաստավորել ներկա ժամանակաշրջանը, մշակել գործողությունների ռեալիստական, համակողմանիորեն կշռադատված այնպիսի ծրագիր, որը նպատակների վեհությունը և հնարավորությունների ռեալիզմը, կուսակցության պլանները օրգանապես միացներ յուրաքանչյուր մարդու հույսերի և իղձերի հետ: XXVII համագումարի որոշումները կսահմանեն մեր շարժման և՛ բնույթը, և՛ տեմպերը տարիներ ու տասնամյակներ առաջ, դեպի սովետական սոցիալիստական հասարակության որակապես նոր վիճակ կատարվող շարժումը» (**ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի Քաղաքական զեկուցումը...,** «Հայաստան» հրատ., 1986, էջ 3):

Կուսակցության համագումարի ընդունած ծրագրի նոր խմբագրությունում հըստակորեն ձևակերպված են կուսակցության խնդիրները գաղափարախոսական աշխատանքի բնագավառում: Դրանցից գլխավորները աշխատավորներին դաստիարակելն է բարձր գաղափարայնության և կոմունիզմին նվիրվածության, սովետական հայրենասիրության և պրոլետարական, սոցիալիստական ինտերնացիոնալիզմի, աշխատանքի և հասարակական ունեցվածքի նկատմամբ գիտակից վերաբերմունքի ոգով, մասսաներին հոգևոր կուլտուրայի գանձերին առավել լիովին հաղորդակից դարձնելը, սոցիալիստական ապրելակերպին հակասող բարքերն արմատախիլ անելը:

Նման կարևոր խնդրի իրականացումն անհրաժեշտ է դարձնում կուսակցության գաղափարախոսական աշխատանքի արդյունավետության բարձրացումը:

ՍՄԿԿ պատմական փորձը վկայում է, որ գաղափարախոսական աշխատանքի արդյունավետությունը պայմանավորված է մասսաների կողմից կուսակցության գաղափարների ընկալման մակարդակով, այն բանով, թե որքան արագ են դրանք դառնում համոզմունքներ և ազդում մարդկանց վարվեցողության ու գործողությունների վրա: Միայն այդ դեպքում է ապահովվում կազմակերպական, տնտեսական և գաղափարախոսական աշխատանքների անհրաժեշտ միասնությունը:

Արդի փուլում կուսակցության գաղափարախոսական աշխատանքն իր բովանդակությամբ, ներազդման ձևերով ու մեթոդներով պետք է կապված լինի հասարակական զարգացման հրատապ խնդիրների հետ, կյանքին համաքայլ ընթանա, խորապես և համակողմանիորեն վերլուծի հասունացած պրոբլեմները: ՍՄԿԿ XXVII համագումարում շեշտվեց, որ կուսակցության գաղափարախոսական գործունեությունն իր բոլոր ձևերում պետք է համաձայնեցվի երկրի սոցիալ-տնտեսական զարգացման արագացման խնդիրների հետ:

Համագումարում մշակված արագացման ստրատեգիական կուրսը, տնտեսական աճի տեմպերի արագացման, գիտատեխնիկական առաջընթացի հիման վրա արտադրության համակողմանի ինտենսիվացման, ժողովրդական տնտեսության կազմակերպման ու կառավարման խելացի ձևերի մշակման հետ միասին, նախատեսում է քաղդաստիարակչական աշխատանքում քարացածության և պահպանողականության

նկատմամբ անհանդուրժողականություն, գաղափարախոսական և քաղաքական ինստիտուտների աշխատանքի ձևերի ու մեթոդների նորացում:

«Սոցիալ-տնտեսական զարգացումն արագացնելու պայքարում բացառիկ բարենպաստ հասարակական պայմաններ են ստեղծվում գաղափարախոսական աշխատանքի արդյունավետության բարձրացման համար»— նշվեց ՍՄԿԿ Կենտկոմի Քաղաքական զեկուցման մեջ (նույն տեղը, էջ 145):

Համագումարի որոշումներին համապատասխան կուսակցության վարած սոցիալ-տնտեսական զարգացման արագացման կուրսն արդեն դրական արդյունքներ է տալիս: Ինչպես նշեց Մ. Ս. Գորբաչովը ՍՄԿԿ Կենտկոմի 1986 թ. հունիսյան պլենումում, այս տարվա հինգ ամիսների ընթացքում արդյունաբերական արտադրանքի աճը անցյալ տարվա նույն ժամանակաշրջանի համեմատությամբ կազմեց 5,7 տոկոս: Նկատելի են տեղաշարժեր արդյունաբերության հիմնական ճյուղերում, ամենից առաջ մեքենաշինությունում, մետաղաձուլությունում, գազի և քարածխի արդյունահանությունում: Ամբողջությամբ արդյունաբերական արտադրանքի ծավալի հավելաճի տեմպերը տասներկուերորդ հնգամյակի առաջին կիսամյակում կազմել են 5,6 տոկոս՝ տարեկան պլանի 4,3 տոկոսի դիմաց, գյուղատնտեսության մեջ աճել են անասունի, թռչնի, կաթի և ձվի գնումները, անցյալ տարվա համեմատությամբ մեծացել են բնակչության եկամուտները:

Այս ամենը, անշուշտ, բարենպաստ իրավիճակ է ստեղծում մասսաների վրա կուսակցության գաղափարական ներազդման արդյունավետության բարձրացման համար: Ժողովրդական տնտեսության զարգացման հաջողություններում դրսևորվում է գաղափարախոսական, քաղդաստիարակչական աշխատանքի սոցիալ-տնտեսական ապահովման էությունը:

Կուսակցության XXVII համագումարում նշվեց, որ 70-ական թվականներին երկրի ժողովրդական տնտեսությունում սկսեցին արագորեն աճել դժվարությունները, զգալիորեն իջան տնտեսական աճի տեմպերը: Հետևանքը եղավ այն, որ մի շարք կարևոր ուղղությունների գծով չկատարվեցին իններորդ և տասներորդ հնգամյակների ժողովրդատնտեսական պլանները, ոչ լիովին իրականացվեց այդ ժամանակաշրջանի համար նախատեսված սոցիալական ծրագիրը: Անշուշտ, դա չէր կարող չանդրադառնալ գաղափարախոսական, քաղդաստիարակչական աշխատանքի արդյունավետության վրա: Չէ որ քաջ հայտնի է, որ կյանքի պայմանները, սոցիալական միջավայրը հսկայական նշանակություն ունեն մարդկանց գաղափարական և բարոյական դիրքորոշման ձևավորման համար: Նշված շրջանում գաղափարախոսական աշխատանքում նկատելի էր որոշ հեռացում կյանքի պահանջներից, պրոպագանդայում երևան եկավ մակերեսային մոտեցում թերությունների և պրոբլեմների արտացոլմանը, որն իջեցնում էր դաստիարակչական աշխատանքի արդյունավետությունը: Զգացվում էր կյանքի առաջադրած պրոբլեմների օբյեկտիվ, փաստարկված վերլուծության անհրաժեշտությունը: Քաղդաստիարակչական աշխատանքի արդյունավետության թուլացումը բացատրվում էր նաև գաղափարախոսական միջոցառումների անբավարար մակարդակով: Համագումարի որոշումների ոգով հետագա կատարելագործման կարիք ունի քաղլուսավորության համակարգը: Ոչ միշտ է իր բարձրության վրա գտնվում դասախոսական պրոպագանդան, մինչև օրս էլ հանդիպում են ցածրորակ հրապարակումներ և հաղորդումներ մամուլում, ռադիոյով և հեռուստատեսությամբ, արվեստի բովանդակազուրկ ստեղծագործություններ, որոնք չեն համապատասխանում աշխատավորների աճած պահանջներին:

ՍՄԿԿ XXVII համագումարը, խորապես վերլուծելով գործերի դրվածքը քաղդաստիարակչական աշխատանքում, անհրաժեշտ համարեց կյանքի հետ գաղափարախոսության հետագա ամրապնդումը: Դրանից ելնելով՝ համագումարը հասարակագետների առջև խնդիր դրեց համակողմանիորեն ուսումնասիրել արագացման բազմակողմանի խնդիրները, լայն ընդգրկումով վերլուծել այդ պրոցեսի բոլոր ասպեկտները: Ինչպես նշվեց ՍՄԿԿ Կենտկոմի Քաղաքական զեկուցման մեջ, այժմ հրամայական պահանջ է զգացվում «լուրջ փիլիսոփայական ընդհանրացումների, հիմնավորված տնտեսագիտական ու սոցիալական կանխատեսումների, խոր պատմագիտական հետազոտությունների» (նույն տեղը, էջ 142): Անհրաժեշտ է, որ, մի կողմից, հասարակական գիտությունները ընդհուպ զբաղվեն կյանքի կոնկրետ պա-



հանջներով, մյուս կողմից՝ առավել լայնորեն օգտագործվեն հասարակագետ գիտնականների առաջարկությունները: Նման մոտեցումն էական նշանակություն ունի գաղափարախոսական աշխատանքի արդյունավետությունը բարձրացնելու գործում:

Գաղափարախոսական աշխատանքի արդյունավետությունն անհնարին է առանց կոնկրետ իրադրության խոր վերլուծության, առանց հասարակական զարգացման բոլոր գումարելիների հաշվառման, և դրա համար էլ կուսակցությունն իր ամբողջ քաղդաստիարակչական աշխատանքը կառուցում է՝ հաշվի առնելով կոնկրետ պատմական իրադրությունը:

Կուսակցությունը միշտ հաջողության է հասել սոցիալիստական շինարարության բարդ խնդիրները լուծելիս մասսաներին մոբիլիզացնելու գործում՝ ելնելով այն բանից, որ ի նկատի է ունեցել սովետական մարդկանց քաղաքական հասունության բարձր մակարդակը: Եվ միանգամայն օրինաչափորեն Քաղաքական զեկուցման մեջ նշվեց. «Ամենաէականը, որի վրա այսօր անհրաժեշտ է կենտրոնացնել կուսակցական ներգործության ամբողջ ուժը, այն բանին հասնելն է, որ յուրաքանչյուր մարդ ըմբռնի ներկա պահի սրությունը, նրա բեկումնային բնույթը: Մեր ամեն մի պլան օդում կախված կմնա, եթե այն անտարբեր թողնի մարդկանց, եթե մենք չկարողանանք արթնացնել մասսաների աշխատանքային ու հասարակական ակտիվությունը, նրանց եռանդն ու նախաձեռնությունը» (նույն տեղը, էջ 144): Այս նպատակին հասնելու աստիճանն էլ այսօր կուսակցական կազմակերպությունների գաղափարախոսական աշխատանքի արդյունավետության գնահատման ամենակարևոր չափանիշներից մեկն է: Այդ խնդրի իրականացումն այնքան էլ հեշտ գործ չէ, քանի որ հարկ կլինի հաղթահարել մտածելակերպի իներցիան, որը գոյացել է համեմատաբար երկար ժամանակվա ընթացքում:

Մեր հասարակության վերափոխող ուժը մարդկային գործոնն է, ուստի այսօր հսկայական նշանակություն է ձեռք բերում յուրաքանչյուր կոմունիստի, յուրաքանչյուր սովետական մարդու կողմից ՍՄԿԿ XXVII համագումարի պատմական դրույթների խոր յուրացումը: Այդ իսկ առումով համագումարում հատուկ ուշադրություն դարձվեց անհատական աշխատանքի՝ որպես դաստիարակության կարևորագույն ձևի, վրա: Այս կապակցությամբ գաղափարախոսական ներազդման արդյունավետության մակարդակը կոնկրետ նկատելի է դառնում: Որքանով որ յուրաքանչյուր մարդ գիտակցում է հասարակության վերակառուցման պրոցեսում իր մասնակցությունը կուսակցության գործերին, այնքանով էլ դրսևորվում է նրա գաղափարայնությունը: Հետևաբար, աշխատանքային կոլեկտիվների կուսակցական կազմակերպությունների խնդիրն է յուրաքանչյուր մարդու գաղափարական համոզվածության հետագա ամրապնդումը:

Կոմունիստական աշխարհայացքի կարևորագույն հատկանիշներից է պայքարը բուրժուական գաղափարախոսության զանազան դրսևորումների դեմ: Իմպերիալիստական պրոպագանդան ինչպես նախկինում, այնպես էլ այժմ ձգնում է աղավաղել կոմունիստական կուսակցության ու սովետական պետության ներքին ու արտաքին քաղաքականությունը, զրպարտել սոցիալիստական դեմոկրատիայի սկզբունքները: «Բուրժուական պրոպագանդիստների հնարագիտությանն ու անսկզբունքայնությանը պետք է հակադրվեն մեր գաղափարախոսական աշխատողների բարձր պրոֆեսիոնալիզմը, սոցիալիստական հասարակության բարոյականությունը, նրա կուլտուրան, ինֆորմացիայի բացահայտությունը, մեր պրոպագանդայի համարձակ և ստեղծագործական բնույթը»,— նշվեց ՍՄԿԿ Կենտկոմի Քաղաքական զեկուցման մեջ (նույն տեղը, էջ 148):

Սոցիալիստական և բուրժուական գաղափարախոսությունների հակամարտության ուժեղացման պայմաններում պահանջվում է բարձրացնել մեր գաղափարախոսական ինստիտուտների գործունեության արդյունավետությունը:

Կուսակցության XXVII համագումարում նշվեց, որ գաղափարադաստիարակչական աշխատանքի արդյունավետության բարձրացման գործուն միջոցը պայքարն է հանուն ապրելակերպի անբասիրության: «Որքան եռանդագին հաստատվեն մեր իդեալները, նոր հասարակության սկզբունքներն ու արժեքները, այնքան արդյունավետ կլինի մեր դաստիարակությունը» (նույն տեղը, էջ 149): Ուստի այսօր սոցիալիզմի «Յուրաքանչյուրից՝ ըստ ընդունակությունների, յուրաքանչյուրին՝ ըստ աշխա-

տալիքի» հիմնական սկզբունքի հետևողական իրականացումը հսկայական նշանակություն է ձեռք բերում: Սոցիալական արդարության սկզբունքի խստիվ կենսագործումը գաղափարախոսական աշխատանքի արդյունավետության անհրաժեշտ երաշխիք է: Մեր երկրում իրականացվում են ամենակարևոր դեմոկրատական սկզբունքները: Մեզանում իրոք առկա են ժողովրդապետություն, բոլոր ազգերի քաղաքական իրավահավասարություն, օրենքի առաջ բոլոր քաղաքացիների իրավահավասարություն: Հենց մեր հասարակությունում գոյություն ունի անձի իսկական ազատություն: Աշխատանքով ապահովվածությունը, անվճար կրթությունն ու բժշկական սպասարկումը, մշակույթի արժեքների համընդհանուր մատչելիությունը, պետության կողմից սոցիալական խոշոր միջոցառումների իրականացումը վկայում են սոցիալիստական հասարակության հսկայական առավելությունների, հասարակական կյանքի բոլոր ոլորտներում սոցիալական արդարության սկզբունքների իրականացման մասին: Դրա հետ մեկտեղ մեր հասարակությունում առկա են կաշառակերության, հափշտակման, սպեկուլյացիայի և այլ ապօրինի գործողությունների միջոցով անաշխատ եկամուտներ ստանալու դեպքեր: Ժամանակը թելադրում է այդ արատավոր երևույթների դեմ պայքարի հրամայական անհրաժեշտությունը: Վճռական բարելավման կարիք ունի բանվորների և ծառայողների նյութական ու բարոյական խթանման համակարգը: Այս կապակցությամբ գաղափարախոսական աշխատողների, մասսայական ինֆորմացիայի միջոցների առջև խնդիր է ծառանում օբյեկտիվորեն, փաստարկված կերպով վերլուծելու արդի կյանքի ծնած պրոբլեմները, բացահայտելու բացասական երևույթների առաջացման պատճառները:

Հասարակության զարգացման որակապես նոր աստիճանը, որին պետք է հասնել սոցիալ-տնտեսական զարգացման արագացման ուղիով, պահանջում է հասարակական կյանքի բոլոր ոլորտներում սոցիալական արդարության սկզբունքի ամրապնդում: Այս սկզբունքից նույնիսկ մասնավոր դեպքում ամենաաննշան շեղումը զգալիորեն վնասում է գաղափարախոսական ներազդման արդյունավետությանը: Ծայրահեղ վնասակար է նաև ձևական մոտեցումը գաղափարախոսական աշխատանքին: Այն դրսևորվում է նախ և առաջ պրոպագանդայի և կյանքի իրական փաստերի միջև անհամապատասխանության, խոսքի և գործի միջև խզման, իրական կյանքի երևույթների թերագնահատման մեջ: «Ակտիվ որոնում, նորարարություն, անսխալականության կոմպլեքսի հաղթահարում, սերտ կապ մասսաների հետ, լայն հրապարակայնություն՝ ահա այն պահանջները, որ այսօր ներկայացվում են կուսակցական կազմակերպությունների աշխատանքի ոճին, յուրաքանչյուր կոմունիստի՝ անկախ նրա զբաղեցրած պաշտոնից»,— նշեց Մ. Ս. Գորբաչովը ԳՍՄԿ XI համագումարում («Правда», 19 апреля 1986): Գաղափարական աշխատանքում այդ պահանջների կատարումը նրա արդյունավետության բարձրացման անհրաժեշտ պայմանն է:

ՍՄԿԿ XXVII համագումարը մեծ ուշադրություն դարձրեց հասարակության կյանքում մասսայական ինֆորմացիայի և պրոպագանդայի միջոցների դերի բարձրացմանը: ՍՄԿԿ ծրագրի նոր խմբագրությունում նշված է. կուսակցությունը կձգտի, որպեսզի մասսայական ինֆորմացիայի միջոցները խոր վերլուծության ենթարկեն ներքին ու միջազգային կյանքի միտումներն ու երևույթները, տնտեսական ու սոցիալական պրոցեսները, ակտիվորեն պաշտպանեն ամեն մի նորն ու առաջավորը, վերհանեն հրատապ, մարդկանց հուզող պրոբլեմներն ու մատնանշեն դրանց լուծման ուղիները:

Արդի պայմաններում մասսայական ինֆորմացիայի միջոցների աշխատանքի արդյունավետությունը որոշվում է այն բանով, թե որքանով են նրանք նպաստում երկրի սոցիալ-տնտեսական զարգացման արագացմանն ուղղված կուսակցության գլխավոր կուրսի իրականացմանը: Խիստ կարևորվում են նաև հրապարակայնությունն ու հասարակական վերահսկողությունը, ավելի սրությամբ պետք է դնել պրոբլեմներն ու քննադատել թերությունները, հաղթահարել մակերեսայնությունը հրապարակային ելույթներում, վերացնել դատարկաբանությունը, դատողությունների քարացածությունը:

Համագումարի փաստաթղթերում սահմանված են գրականության և արվեստի խնդիրները սովետական մարդկանց հոգևոր կերպարի ձևավորման հարցում: Իր գաղափարախոսական գործունեությունում կուսակցությունը հաշվի է առնում այն հսկայական ազդեցությունը, որ գրականությունն ու արվեստը ունենում են հասա-



րակական գիտակցության, հոգևոր կյանքի վրա: Համագումարը գրականության և արվեստի զարգացման գլխավոր գիծ համարեց ժողովրդի կյանքի հետ կապի ամրապնդումը, սոցիալիստական իրականության ճշմարտացի և բարձր գեղարվեստական պատկերումը, նորի, առաջավորի ոգեշունչ ու վառ բացահայտումը և կրքոտ մերկացումն այն ամենի, ինչ խանգարում է հասարակության առաջընթացին:

Հայաստանի կոմկուսի Կենտկոմի 1986 թ. ապրիլյան պլենումում, որտեղ քննարկվեցին ՍՄԿԿ XXVII համագումարի արդյունքները և դրանք կատարելու գործում հանրապետության կուսակցական կազմակերպության խնդիրները, զգալի տեղ հատկացվեց գաղափարախոսական, քաղդաստիարակչական աշխատանքի արդյունավետության բարձրացմանը: ՀԿԿ Կենտկոմի առաջին քարտուղար Կ. Ս. Դեմիրճյանի զեկուցման մեջ նշվեց. «Կուսակցության առաջադրած խնդիրների մասշտաբայնությունն ու նորությունը պահանջում են գաղափարախոսական աշխատանքի նկատմամբ ստեղծագործական մոտեցում, հրաժարում հանդիսամոլությունից, շաբլոնից, դատարկախոսությունից, մտացածին կամպանիաներից, որոնք պրոպագանդան հեռացնում են կյանքից»:

Հանրապետական կուսակցական կազմակերպության գործունեությունը գաղափարախոսական, քաղդաստիարակչական աշխատանքի բնագավառում համակողմանի գնահատականի արժանացավ «Հայաստանի հանրապետական կուսակցական կազմակերպությունում ՍՄԿԿ Կենտկոմի 1983 թվականի հունիսյան պլենումի որոշումների կատարման ընթացքի մասին» կուսակցության Կենտկոմի որոշման մեջ, որտեղ խնդիր էր դրվում գաղափարախոսական աշխատանքն ավելի սերտորեն կապակցել գործնական խնդիրների լուծման, սոցիալ-տնտեսական իրական պրոցեսների հետ:

Ի կատարումն ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի որոշման, Հայաստանի կուսակցական կազմակերպությունները զգալի աշխատանք կատարեցին քաղուսուցման համակարգի, դասախոսական պրոպագանդայի, միասնական քաղօրերի արդյունավետության բարձրացման, պրոպագանդիստների որակական կազմի բարելավման առումով:

Հայաստանի կոմկուսի XXVIII համագումարում Կ. Ս. Դեմիրճյանը նշեց. «Մասսայական-քաղաքական ուսուցման ողջ համակարգում անցում է կատարվել լուսավորականությունից դեպի կոնցեպտուալություն՝ որպես մարքս-լենինյան աշխարհայացքի ձևավորման, մարդկանց քաղաքական կոփմանն ուղղված աշխատանքի արդյունավետության բարձրացման կարևոր միջոցի»:

Համագումարն արձանագրեց Երևանի, Լենինականի, Կիրովականի քաղաքային, Էջմիածնի, Ախուրյանի, Իջևանի, Հրազդանի շրջանային կուսակցական կազմակերպությունների գաղափարախոսական, քաղդաստիարակչական աշխատանքների բարելավումը:

Միասնական քաղօրերի անցկացման դրական փորձ է կուտակել Երևանի երկաթուղային հանգույցի կուսակցական կոմիտեն: Դրան նպաստում է քաղօրերի անցկացման արդյունավետության վերլուծության լավ կարգավորված համակարգը: Կուսկոմիտեն մշակել է անկետավորման հատուկ եղանակ: Քաղօրերը կազմակերպված կերպով անցկացնում են գիտնականներ, կուսակցական աշխատողներ ու ակտիվիստներ, զանազան ստորաբաժանումների ղեկավարներ: Միջոցառումներն անցկացվում են կուսակցության Օրջոնիկիձեի շրջկոմի հետ հստակորեն համաձայնեցված կարգով:

Բարելավվել է մասսայական ինֆորմացիայի միջոցների աշխատանքը, մեծացել աշխատավորների կոմունիստական դաստիարակության զանազան հարցերին նվիրված հրապարակումների քանակը:

Դրա հետ մեկտեղ Հայաստանի կոմկուսի 1986 թ. ապրիլյան պլենումը նշեց գաղափարախոսական աշխատանքի գործնականության բարձրացման, դաստիարակության ասպարեզում առավել կոնկրետություն ապահովելու անհրաժեշտությունը: Պլենումում նշվեց, որ մի շարք քաղաքային ու շրջանային կուսկազմակերպություններում դաստիարակչական աշխատանքը շարունակում են վարել հին ձևով՝ առանց պատշաճ կոնկրետության, առանց առկա թերությունները վերացնելու նպատակադրման: Հանրապետության գաղափարախոսական ակտիվի խորհրդակցությունը, քննարկելով գաղափարախոսական հիմնարկությունների, մասսայական ինֆորմացիայի ու պրոպագանդայի միջոցների գործերի վիճակն ու խնդիրները ՍՄԿԿ Կենտկոմի 1985 թ.

ապրիլյան և հոկտեմբերյան պլենումների որոշումների լույսի ներքո, էական թերություններ բացահայտեց քաղդաստիարակչական աշխատանքներում: Խորհրդակցությունում միաժամանակ շեշտվեց, որ անհրաժեշտ է կուսակցական կոմիտեներն ու մասսայական ինֆորմացիայի միջոցների կոլեգիաները մշակեն կադրերի ընտրության, տեղաբաշխման, որակավորման բարձրացման գործնական, կոնկրետ ծրագիր: Լուրջ մտահոգություն է պատճառում այն, որ թերթերի ու ամսագրերի էջերում, հեռուստատեսային և ռադիոհաղորդումներում երբեմն երևան են գալիս պատահական, դաստիարակչական արժեք չներկայացնող, աշխատավորների կոմունիստական դաստիարակությանը չօգնող ելույթներ: Շատ պրոբլեմներ ու չլուծված հարցեր կան աշխատավորների կուլտուրական սպասարկման բնագավառում: Հաճախ գրեթե դատարկ են մնում պրոֆեսիոնալ թատրոնները, համերգասրահները, կինոնկարների ցուցադրումը տեղի է ունենում տարերայնորեն: Մարդկանց չի հրապուրում կուլտուրլուսավորական հիմնարկությունների գործունեությունը, նրանք չեն կատարում իրենց պատասխանատու խնդիրները, հատկապես քիչ արդյունավետ է նրանց աշխատանքը գյուղական վայրերում: Նման վիճակի պատճառը թատրոնների և երաժշտական կոլեկտիվների ոչ ճիշտ ռեպերտուարային քաղաքականությունն է, առանձին ակումբային հիմնարկությունների նյութատեխնիկական աղքատիկ բազան, կադրերի ցածր մակարդակը:

ՀԿԿ Կենտկոմի 1986 թ. հուլիսի 10-ին կայացած պլենումը քննարկեց «ՍՄԿԿ Կենտկոմի 1986 թվականի հունիսյան պլենումի արդյունքները և հանրապետական կուսակցական կազմակերպության խնդիրները տասներկուերորդ հնգամյակի տնտեսական ու սոցիալական զարգացման պլանների իրականացման ուղղությամբ» հարցը: Այնտեղ մասնավորապես նշվեց, որ ընթացիկ տարվա 6 ամիսների ընթացքում ապրանքային արտադրանքի իրացման պլանը կատարվել է 101,8 տոկոսով, արդյունաբերության ծավալն աճել է 5 տոկոսով: Ընդլայնվել են կապիտալ շինարարությունը, բնակչությանը ցույց տրվող ծառայությունների ծավալը, արագացել են ապրանքաշրջանառության տեմպերը: Տասներկուերորդ հնգամյակում Հայաստանի աշխատավորները պետք է իրականացնեն տնտեսական ու սոցիալական զարգացման ծանրակշիռ պլաններ: Միագումար հասարակական արտադրանքի ծավալը պլանավորվում է մեծացնել 24, ազգային եկամուտը՝ 26 տոկոսով: Տասներկուերորդ հնգամյակում հանրապետության արդյունաբերությունում նոր տեխնիկայի միջոցների ներդրման միջոցառումների շնորհիվ տնտեսական արդյունավետությունը 1,3 անգամ ավելին կլինի, քան նախորդ հնգամյակում, իսկ որակի պետական նշանով արտադրանքի ծավալը կաճի 85 տոկոսով:

Նման վիթխարի խնդիրների իրագործումը պահանջում է բարձրացնել կուսակցական ղեկավարությունը տնտեսության զարգացման, կազմակերպությունների գաղափարախոսական, քաղդաստիարակչական աշխատանքի նկատմամբ:

Միաժամանակ ասվեց, որ տնտեսական, սոցիալական և հոգևոր զարգացման խնդիրների լուծման գործում պատասխանատու դեր է պատկանում գաղափարախոսական աշխատանքին, որի նկատմամբ պահանջները համակողմանիորեն մեծանում են: Ակնբախ է նաև, որ գաղափարախոսական հիմնարկությունները սկսել են հետևողականորեն վերակառուցել իրենց աշխատանքը կուսակցության XXVII համագումարի որոշումների ոգով:

Պլենումն արձանագրեց, որ մի շարք քաղկոմների, շրջկոմների, շատ սկզբնական կուսկազմակերպությունների գործունեության մեջ տեղի է ունենում շրջադարձ դեպի մարդիկ, դեպի կենդանի գործը: Նշվեց դրական փոփոխությունների մասին Երևանի, Լենինականի, Կիրովականի քաղաքային և Աշտարակի, Արագածի, Էջմիածնի շրջանային կուսկազմակերպություններում: Ղեկավարման քաղաքական մեթոդները դանդաղ են յուրացվում Ամասիայի, Արտաշատի, Շամշադինի, Ստեփանավանի կուսշրջկոմներում:

Այժմ կենսական խնդիր է գաղափարախոսական ճակատի ակտիվացումը, նրա համալրումը նորի զգացումով օժտված կարող ուժերով:

---



# ՎԵՐՍՏՈՒԳԻՉ ՀԱՆՁՆԱԺՈՂՈՎՆԵՐԻ ԳՈՐԾՈՒՆԵՈՒԹՅՈՒՆԸ ՆՈՐ ՊԱՀԱՆՋՆԵՐԻ ՄԱԿԱՐԴԱԿԻՆ

ՍՄԿԿ XXVII ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ ՍԱՀՄԱՆԵՑ կուսակցական աշխատանքի վերակառուցման կոնկրետ խնդիրները: Վերակառուցման նպատակն է՝ հասնել այն բանին, որպեսզի յուրաքանչյուր կուսկազմակերպությունում տիրի նոր լուծումների որոնման, գործունեության ձևերի ու մեթոդների նորացման մթնոլորտը: Կոմունիստների ջանքերը պետք է ուղղված լինեն կուսակցական դեմոկրատիայի ծավալմանը, վերակառուցման գործի նկատմամբ պատասխանատվության բարձրացմանը: Այն բանով, թե ինչպես են գործում կուսկազմակերպությունները, մեծապես պայմանավորված է ողջ աշխատավորության ակտիվությունը, արագացման վճռորոշ ուժի՝ ժողովրդական զանգվածների արարման թափն ու խորությունը:

Ինչպես հայտնի է, կուսակցության XXVII համագումարը հաստատեց ՍՄԿԿ Կենտրոնական վերստուգիչ հանձնաժողովի կանոնադրությունը: Ընթացիկ տարվա մայիսին ՍՄԿԿ Կենտկոմը հաստատեց նաև հանրապետական, երկրամասային, մարզային, օկրուգային, քաղաքային ու շրջանային կուսկազմակերպությունների վերստուգիչ հանձնաժողովների վերաբերյալ կանոնադրությունը:

Նոր կանոնադրությամբ նախատեսվում է ընդլայնել վերստուգիչ հանձնաժողովների ֆունկցիաները կուսակցական բյուջեի կատարման, անդամավճարների գանձման, ընդունման ու հաշվառման, հրատարակչությունների, կուսակցական կոմիտեների մյուս ձեռնարկությունների ու հիմնարկների ֆինանսատնտեսական գործունեության, տեղական կուսակցական մարմիններում, թերթերի ու հանդեսների խմբագրություններում աշխատավորների նամակների, դիմումների ու բողոքների քննարկման նկատմամբ վերահսկողության իրականացման գործում: Այն նրանց նպատակամղում է կուսակցական կարգապահության հետագա ամրապնդման, ՍՄԿԿ կանոնադրության պահանջների անշեղ պահպանման:

Հանրապետության կուսակցական կազմակերպությունում վերստուգիչ աշխատանքի վերլուծությունը ցույց է տալիս, որ մի շարք կազմակերպությունների, ամենից առաջ Հայաստանի կոմկուսի, Երևանի, Լենինականի քաղաքային, Աշտարակի, Ազիզբեկովի, Գուգարքի, Սևանի շրջանային կուսկազմակերպությունների վերստուգիչ հանձնաժողովների գործունեության մեջ նկատվում են որոշակի դրական փոփոխություններ:

Վերջերս Հայաստանի կոմկուսի Կենտկոմի բյուրոն որոշում ընդունեց Հայաստանի հանրապետական կուսկազմակերպությունում կուսակցական բյուջեի կատարումը բարելավելու միջոցառումների մասին: Ինչպես անցյալ տարի, այնպես էլ ընթացիկ տարվա առաջին կիսամյակում կուսբյուջեն հաջողությամբ կատարվեց թե՛

եկամուտների և թե ծախսերի գծով։ Առաջվա պես կուսակցական բյուջեի կազմավորման հիմնական աղբյուրը անդամավճարներն են։ Եկամուտների մեջ դրանց տեսակարար կշիռը կազմում է ավելի քան 75 տոկոս։

Դրա հետ մեկտեղ հաշվետու տվյալները ցույց են տալիս, որ թերավճարումների գումարը դանդաղ է նվազում։ Կոմունիստների 0,4 տոկոսը կամ տարեկան ավելի քան 800 մարդ, անդամավճար են մուծում ոչ լրիվ աշխատավարձից։ Ընթացիկ տարում անդամավճարի թերամուծման բազմաթիվ փաստեր են հայտնաբերվել Արտաշատի, Մասիսի, Կամոյի անվան, Թումանյանի շրջաններում։

Ըստ երևույթին որոշ կուսկազմակերպություններում անդամավճարի մուծումը համարում են զուտ տնտեսական գործ, դրան քաղաքական իմաստ չեն տալիս և չեն տեսնում գլխավորը՝ ինչպես են կոմունիստները իրականում կատարում կանոնադրական պահանջները։ Քիչ չեն դեպքերը, երբ սկզբնական կուսկազմակերպությունների քարտուղարները ամիսներով, նույնիսկ տարիներով թաքցնում են «փախուստի» մեջ գտնվող կոմունիստներին։ Ընդ որում վերստուգիչ հանձնաժողովները. ստուգումներ անցկացնելով, հաճախ չեն նկատում նման փաստերը։ Տեղին է նշել նաև, որ կոմունիստների հաշվառման գործը պատշաճ հիմքի վրա է դրված ոչ ամենուրեք, միշտ չէ, որ ստուգումները կատարվում են փութաջանորեն։ Ուշագրավ մի օրինակ. 1980 թվականի դեկտեմբերին Հոկտեմբերյանի շրջանի երկաթբետոնե շինվածքների գործարանի զոդող, ՍՄԿԿ անդամ Ռ. Բաղդասարյանը կորցնում է կուստոմսը, դադարում է անդամավճար մուծել և, շատ չանցած, ազատվում է աշխատանքից։ 1933 թվականին այդ կազմակերպությունը անցնում է Բաղրամյանի շրջանին։ Հինգ տարի անց միայն, 1985 թ. դեկտեմբերին, այն էլ ստուգումից հետո, գործարանի սկզբնական կուսկազմակերպությունը որոշում է ընդունում Ռ. Բաղդասարյանին ՍՄԿԿ կանոնադրության 8-րդ պարագրաֆի հիման վրա կուսակցությունից դուրս մնացած լինելու մասին։

Մի այլ օրինակ։ 1961 թվականից ՍՄԿԿ անդամ Ս. Չեչելյանը 1984 թվականի մարտին ազատվում է երկրաբանության վարչությանն առընթեր արտադրատեխնիկական ապահովման վարչությունից, որը գտնվում է Օրջոնիկիձեի շրջանում, և աշխատանքի անցնում Էջմիածնի շրջանում։ Չնայած դրան, նա մեկ տարուց ավելի անդամավճար է մուծում նախկին աշխատավայրում, ընդ որում պակաս մուծելով մի մեծ գումար, ապա մեկնում է հանրապետության սահմաններից դուրս։ Նրա գտնվելու վայրը չի հաջողվում պարզել։ Պահանջվեց ևս մեկ տարի, մինչև որ վարչության սկզբնական կուսկազմակերպությունը սկզբունքային գնահատական տվեց Չեչելյանի վարքագծին։

Ցավոք, նման օրինակները եզակի չեն։ Առանձին կոմունիստներ տարիներով առսկ համարվում են հաշվառման մեջ։ Դա տարածված է հատկապես այն շրջաններում, որտեղ մեծ թվով մարդիկ են վաստակի մեկնում հանրապետության սահմաններից դուրս։ Իսկ կուսակցական կոմիտեները ոչ միայն չեն պայքարում այդ երևույթի դեմ, այլև փաստորեն ներողամտություն են ցուցաբերում նրանց նկատմամբ՝ թողնելով հաշվառման մեջ։

Միայն ընթացիկ տարվա առաջին կիսամյակում 75 կոմունիստներ դուրս են մնացել կուսակցությունից։ Իսկ եթե նշենք, որ 1986 թ. օգոստոսի 1-ի դրությամբ հանրապետությունում կային 237 չաշխատող կոմունիստներ, ապա կարելի է համոզված ասել, որ նրանցից շատերը, դուրս մնալով կուսակցական կազմակերպությունների հսկողությունից, կարող են և առհասարակ դուրս մնալ կուսակցությունից։

Ինչպես սկզբնական կուսկազմակերպություններում, այնպես էլ շրջկոմներում ու քաղկոմներում դեռևս արմատախիլ չեն արվել անդամավճարների վերաբերյալ հաշվետվությունների կեղծման, պարտքերի ու թերավճարումների փաստերը։ Անդամավճարների մուտքի նկատմամբ առանձին շրջկոմների ու քաղկոմների կողմից պատշաճ հսկողության բացակայության հետևանքով կուսկազմակերպությունների շուրջ 20 տոկոսը ստացված գումարները խնայդրամարկղ է մուծում ուշացումով։ Նման փաստեր կան Մյասնիկյանի, Մասիսի, Արագածի, Հրազդանի և այլ շրջաններում։

Բնավ էլ սակավ չեն դեպքերը, երբ անդամավճարների մուծման ճշտության ստուգումները անցկացվում են մակերեսորեն, ոչ պարբերաբար։ Այսպես, 1985



թվականին Աբովյանի և Արտաշատի շրջանային կուսկազմակերպությունների վերստուգիչ հանձնաժողովների անդամների կողմից ստուգվել է սկզբնական կուսկազմակերպությունների կեսից, իսկ Ամասիայում՝ մեկ երրորդից պակաս մասը, Կալինինոյում ստուգվել է յուրաքանչյուր յոթ կազմակերպությունից մեկը։ Ընդհանուր առմամբ հանրապետությունում անցյալ տարի ոչ մի անգամ չի ստուգվել 226 սկզբնական կուսկազմակերպություն։

Դրությունը էապես չի փոխվել նաև 1986 թվականի առաջին կեսին։ Ամասիայի և Թալինի շրջաններում վերստուգիչ հանձնաժողովները ստուգել են յուրաքանչյուր 7-րդ, Արտաշատում՝ 6-րդ, Վարդենիսում՝ 10-րդ, Սպիտակում՝ 9-րդ կազմակերպությունը, իսկ Կալինինոյում՝ սկզբնական կուսկազմակերպությունների ընդամենը 5 տոկոսը։ Ամեն տեղ չէ դեռ,որ պրակտիկա է դարձել շրջկոմների ու քաղկոմների բյուրոների նիստերում կուսակցական անդամավճարների ընդունման, մուծման և հաշվետվության արդյունքների եռամսյակային քննարկումը։ Առաջին կիսամյակում այդ հարցը չի քննարկվել Ազիզբեկովի, Ապարանի, Արարատի, Բաղրամյանի, Շամշադինի շրջկոմների բյուրոներում։

Անհրաժեշտ է ավելի ակտիվորեն ամրապնդել կուսակցական կարգապահությունը։ Անդամավճարը ժամանակին մուծելը կուսակցության յուրաքանչյուր անդամի և անդամության թեկնածուի առաջնահերթ պարտականությունն է։ Այդ կարգից կատարվող ամեն մի շեղում պետք է դառնա կուսակցական կոմիտեների, բյուրոների ու ժողովների քննարկման առարկա։ Վերստուգիչ հանձնաժողովները պարտավոր են մշտապես վերլուծել անդամավճարների մուծման սահմանված կարգի խախտման պատճառները, միջոցներ ձեռնարկել դրանց հաղթահարման համար։

Վերստուգիչ հանձնաժողովները հաճախ չեն ապահովում ստուգման ենթակա հարցերը լիովին ընդգրկելու վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմի պահանջի պատշաճ կատարումը։ Այսպես, չեն ստուգվում ֆինանսաբյուջետային աշխատանքի և տնտեսական գործունեության կարևոր շատ կողմեր։ Առանձին վերստուգիչ հանձնաժողովներ արհեստականորեն նեղացրել են ստուգումների շրջանը և սահմանափակվում են միայն անդամավճարների մուծման ճշտության նկատմամբ հսկողությամբ։ Հաճախ ձևական մոտեցում է դրսևորվում նաև բյուջետային միջոցների օգտագործման, հաստիքային կարգապահության պահպանման, դրամարկղային օպերացիաների, գույքի, կազմտեխնիկայի, գրադարանային ֆոնդի անվթարության ստուգումների ժամանակ։ Մինչդեռ կան կուսբյուջեի առանձին հոդվածների գծով գերածախսի, միջոցները ոչ նախատեսված նպատակով ծախսելու դեպքեր։ Ընթացիկ տարվա առաջին կիսամյակում կատարված հատկացումների դիմաց նկատելի գերածախս են թույլ տվել Ղուկասյանի, Հրազդանի, Սիսիանի և Թալինի կուսշրջկոմները։

Մի շարք կուսկոմիտեներ շարունակում են հանրապետական ու տեղական բյուջեից միջոցների օգտագործման սխալ պրակտիկան։ Սպիտակի շրջանում, օրինակ, 19 պատասխանատու աշխատողների համար, առանց դրա անհրաժեշտության, դրվել է 45 հեռախոս, որոնցից 17-ի վարձը վճարվում է այլ կազմակերպությունների հաշվին։ Շեղումներ կան նաև տրանսպորտի միջոցների օգտագործման սահմանված կարգից։ Այս հարցերը պետք է լրջորեն անհանգստացնեն շրջանային ու քաղաքային կուսկազմակերպությունների վերստուգիչ հանձնաժողովներին։

Վերստուգիչ հանձնաժողովների գործունեության պատասխանատու տեղամասերից է աշխատավորների նամակների, դիմումների ու բողոքների քննարկման վերահսկողությունը։ Հայաստանի կոմկուսի Կենտկոմում ընթացիկ տարվա անցած ութ ամսում ստացվել է ավելի քան 14 հազար նամակ՝ հազարով ավելի, քան նախորդ տարվա նույն ժամանակաշրջանում։ Մեծացել է կուսակցության մեջ ընդունելության, կադրերի ընտրության, տեղաբաշխման ու դաստիարակության, տեղական սովետների գործունեության ղեկավարման ասպարեզում կուսկազմակերպությունների աշխատանքի թերություններին վերաբերող դիմումների քանակը։ Այդ հարցերի առթիվ սկսել է ավելի շատ նամակներ ստացվել Երևանից և Լենինականից, ինչպես նաև Արտաշատի, Մարտունու, Վարդենիսի ու Եղեգնաձորի շրջաններից։

Վերստուգիչ հանձնաժողովների ուշադրությունը պետք է բևեռել կուսակցական ապարատում նամակների հետ տարվող աշխատանքի որակի վրա։ Քիչ չեն դեպ-

քերը, երբ այցելուները բախվում են ձևականության, բյուրոկրատական մոտեցման հետ: Վերստուգիչ հանձնաժողովները կոչված են պաշտպանելու կոմունիստների, բոլոր աշխատավորների շահերը, ի հայտ բերելու ապարատի այն աշխատողներին, ովքեր մարդկանց կարիքների ու պահանջների նկատմամբ անուշադիր են, չինովնիկական վերաբերմունք են ցուցաբերում:

Հանրապետության կոմկուսի Կենտկոմում ստացվող ինֆորմացիան վկայում է, որ տեղերում դեռևս վերջ չի տրվել նման դեպքերին: Նամակների հետ տարվող աշխատանքի ցածր որակի մասին է վկայում ամենից առաջ այն, որ կրկնվող նամակների քանակը չի նվազում: Եվ դա չի կարող չանհանգստացնել: Մեկուկես-երկու անգամ ավելացել է Կիրովականից, Արթիկի, Ղափանի, Թումանյանի շրջաններից ստացվող այդպիսի նամակների քանակը:

Մեծ թիվ են կազմում այն նամակները, որոնք հետևանք են առանձին ղեկավար աշխատողների կողմից տրված անհիմն հավաստիացումների, չիրագործված խոստումների ու պարտավորությունների: Որպես կանոն, կուսակցական մարմիններին դիմելուց հետո նման նամակների հեղինակները դրական պատասխան են ստանում, լուծվում են նրանց բարձրացրած հարցերը: Սակայն քաշքշուկի համար մեղավորները հազվադեպ են պատասխանատվության ենթարկվում: Կուսակցական կոմիտեները պետք է ընդլայնեն նամակներն ու դիմումները վերստուգիչ հանձնաժողովների քննարկմանն ուղարկելու պրակտիկան:

Վերստուգիչ հանձնաժողովները պետք է ավելի մեծ ուշադրություն նվիրեն նաև կուսակցական կոմիտեներում և սկզբնական կուսկազմակերպություններում փաստաթղթերի հետ տարվող աշխատանքի ստուգմանը: Հարկ է ուշադրություն դարձնել ոչ միայն դրանց քննարկման ժամկետներին ու կանոնավոր պահպանությանը, այլև ուսումնասիրել, թե ինչպես է փոխվում աշխատանքի ոճը, ինչպես է իրականացվում հաշվետվության կրճատման վերաբերյալ ցուցումը: Այս գործում մեզ մոտ անկարգապահության փաստեր դեռ շատ կան:

Վերցնենք այնպիսի մի հարց, ինչպիսին կուսակցության մեջ ընդունելությունն է: Ուսումնասիրությունը ցույց է տալիս, որ կուսակցության քաղկոմներում, շրջկոմներում, վերստուգիչ հանձնաժողովներում պատշաճ մակարդակով չի իրականացվում հսկողությունը կուսակցության մեջ ընդունելության գործերի անցման կարգի պահպանման նկատմամբ: Ընթացիկ տարվա առաջին վեց ամսում ՍՄԿԿ շարքերը որպես անդամ և անդամության թեկնածու ընդունվելու վերաբերյալ 3.700 գործերից, որոնք քննարկվել են ՀԿԿ շրջկոմներում ու քաղկոմներում, միայն երկու երրորդն է սկզբնական կազմակերպությունների կողմից շրջկոմներ հանձնվել սահմանված ժամկետներում: Երբեմն ժամկետների խախտումներ են թույլ տալիս նաև կուսշրջկոմները (Արարատի, Իջևանի, Ղափանի): Ընթացիկ տարվա հուլիսի 1-ի դրությամբ շրջկոմներում և քաղկոմներում դեռևս կար կուսակցության անդամության թեկնածու ընդունելու մասին սկզբնական կուսկազմակերպությունների 67 չքննարկված որոշում:

Մի շարք սկզբնական կուսկազմակերպություններ, շրջկոմներ ու քաղկոմներ անհրաժեշտ ուշադրություն չեն նվիրում ՍՄԿԿ-ի մեջ ընդունելության փաստաթղթերի որակյալ ձևակերպմանը, թույլ են տալիս ջնջումներ, զանազան ուղղումներ, կուսակցական փաստաթղթերի լրացման տեխնիկայի, հաշվառման ու հանձնման սահմանված կարգի այլ խախտումներ, որի հետևանքով վերջին ժամանակներս հարկ է լինում կուսակցական փաստաթղթերի որոշ կոմպլեկտներ թերի համարել և փոխել: Որոշ վերստուգիչ հանձնաժողովների տեսադաշտից երբեմն դուրս են մնում կուսակցական գործավարության հարցերը, դրա նկատմամբ հաճախ անփույթ վերաբերմունք է դրսևորվում: Վերադաս մարմինների փաստաթղթերի կորստյան դեպքեր են եղել Օրջոնիկիձեի և Շահումյանի շրջանների կուսկազմակերպություններում:

Չափազանց շատ թերություններ կան կուսակցական կոմիտեների, սկզբնական կուսկազմակերպությունների արձանագրությունների ձևակերպումներում ու բովանդակության մեջ: Հարկ է մշտապես հսկել, թե կուսակցական կազմակերպությունները ինչպես են վարում իրենց գործերը, ինչպես են պահպանում սահմանված կարգը: Հրազդանի, Սիսիանի, Նոյեմբերյանի և այլ շրջանների որոշ կուսկազմակերպություններում չեն պահպանվում արձանագրությունների կազմման ձևն ու ժամկետները, ընդունված որոշումները զուրկ են կոնկրետությունից, ոչ ոքի ոչինչ չեն պարտավորեցնում: Ապարանի, Արագածի, Ղափանի, Արարատի և այլ շրջանների կուսկազմակերպություններում եղել են դեպքեր, երբ արձանագրություններում չեն ներկայացվել առանձին զեկուցումներ, անցյալում ընդունված որոշումներ:

Թերություններ կան նաև վերստուգիչ հանձնաժողովների կազմակերպական աշխատանքում: Անհասկանալի է, թե ինչ նկատառումներով Ամասիայի, Գուգարքի, Կալինինոյի, Մեղրիի և Շամշադինի շրջանների վերստուգիչ հանձնաժողովներն ընթացիկ տարվա առաջին կիսամյակում որևէ անգամ չեն ամփոփել անցկացված ստուգումների արդյունքները: Որոշ հանձնաժողովներ չեն հաղորդում իրենց ստուգումների արդյունքների մասին, թերությունների վերացման առաջարկներով չեն դիմում կուսակցական կոմիտեներին: Բացի այդ, նրանցից ոչ բոլորն են ճիշտ պլանավորում իրենց գործունեությունը, ժամանակին հաստատում աշխատանքի պլանները, այստեղից էլ՝ գրոհայնությունը ստուգումների ընթացքում, դրանց ձևական բնույթը:

Վերստուգիչ հանձնաժողովները պետք է ավելի հաճախ դնեն աշխատանքի որակի հարցերը, խստապահանջ լինեն հանձնարարված գործի կատարումն ապահովելու հարցում: Ինչպես վկայում է պրակտիկան, նոր ոգով աշխատելուն խոչընդոտող բնորոշ թերությունն այն է, որ հանձնաժողովներին հաճախ պակասում է սկզբունքայնությունը իրավիճակի անաչառ գնահատման գործում, նրանք երկյուղում են, թե թերությունների հայտնաբերմամբ կարող են հարուցել կուսկոմիտեների քարտուղարների դժգոհությունը: Այդ պատճառով էլ ստուգումները հաճախ անցկացվում են մակերեսորեն, հանդիպած սխալները ջանում են չնկատել: Ճշմարտությունն ասելու, սուր հարցերը չշրջանցելու ունակությամբ պետք է օժտված լինի վերստուգիչ հանձնաժողովի ամեն մի անդամ, առավել ևս նրա նախագահը:

Տեղական կուսկազմակերպությունների վերստուգիչ հանձնաժողովների նոր կանոնադրությունը մշակվել է ՍՄԿԿ Կենտրոնական վերստուգիչ հանձնաժողովի կանոնադրության հիման վրա: Այդ հիմնարար փաստաթղթերը համապատասխանում են կուսակցության կյանքի արդի փուլի պահանջներին, հաշվի են առնում կուտակված փորձն ու գործողության ուղեցույց են ծառայում: Նոր կանոնադրության համաձայն, վերստուգիչ հանձնաժողովների նախագահները, նրանց տեղակալները մասնակցում են կուսակցական կոմիտեների բյուրոների նիստերին: Դա էապես նոր հանգամանք է: Այդպիսով, նրանք ավելի հանգամանորեն իրազեկ կլինեն կուսկոմիտեների ամենօրյա գործերին, իսկ դա հնարավորություն կտա բարձրացնելու պատասխանատվությունը, աշխատանքը դարձնելու ավելի նպատակասլաց:

Մի շարք հարցեր, որոնք անցյալում տարբեր ձևով էին մեկնաբանվում, նոր կանոնադրությունում ստացել են իրենց լուծումը: Սահմանվում է, որ հիմա ընտրվում է հանձնաժողովի նախագահի տեղակալ, իսկ խոշոր կազմակերպություններում՝ նաև քարտուղար: Կանոնադրությունում իր արտացոլումն է գտել կադրային քաղաքականության հետագա կատարելագործման մասին համագումարի հիմնադրույթը: Վերստուգիչ հանձնաժողովների նախագահների համար սահմանված է հինգ տարուց ոչ պակաս կուսստաժ, այսինքն՝ տվյալ հարցում նրանց ներկայացվում են նույն պահանջները, ինչ և կուսկոմիտեների քարտուղարներին:

Կանոնադրությունում նշվում է, որ վերստուգիչ հանձնաժողովները օգտվում են իրենց գործունեությանն առնչվող այն բոլոր փաստաթղթերից, որոնք գտնվում են համապատասխան կուսկոմիտեների և նրանց ենթակայության հրատարակչությունների, ձեռնարկությունների ու հիմնարկների տրամադրության տակ: Իսկ եթե հանձնաժողովի և կուսկոմիտեի միջև տարաձայնություններ են ծագում, այսինքն՝ նրանց կարծիքները չեն համընկնում, այդ դեպքում հանձնաժողովը, չխոչընդոտելով կոմիտեի աշխատանքին, վիճելի հարցի քննարկումը հանձնում է վերադաս կուսակցական մարմնին:

Կանոնադրությունը ստուգվող մարմիններին, նրանց ձեռնարկություններին ու հիմնարկներին պարտավորեցնում է ստուգման ակտերը քննարկելուց հետո վերստուգիչ հանձնաժողովներին հաղորդել դրանցում պարունակվող դիտողությունների

և առաջարկությունների իրականացման մասին: Դրա իմաստն այն է, որ բացառվեն վերստուգիչ հանձնաժողովներից ստացված ահազանգերի անտեսման փաստերը, հանձնաժողովներ, որոնք իրենք ևս պարտավոր են հետևողականություն ու հաստատակամություն դրսևորել, եթե իրենց բարձրացրած հարցերն անուշադրության են մատնվում:

Վերստուգիչ հանձնաժողովների գործունեության բարելավման կարևոր պայմաններից է նրանց բոլոր անդամներին ակտիվ աշխատանքի ներգրավելու պահանջը: Այդ հանձնաժողովներում ընտրվելը կոմունիստի վրա մեծ պատասխանատվություն է դնում, պարտավորեցնում է նրան գործի նկատմամբ բարեխիղճ վերաբերմունքով արդարացնել ցույց տրված վստահությունը: Վերստուգիչ աշխատանքում անհրաժեշտ է լայնորեն ներգրավել նաև կուսակցական ակտիվը:

Կանոնադրությամբ հստակորեն սահմանվում են տարբեր մակարդակներում կուսկոմիտեների և վերստուգիչ հանձնաժողովների փոխհարաբերությունները: Նշվում է, որ վերստուգիչ հանձնաժողովների աշխատանքի ղեկավարումը իրականացնում են վերադաս կուսակցական կոմիտեները: Հանրապետական կուսկազմակերպության վերստուգիչ հանձնաժողովը, կանոնադրության համաձայն, քաղաքային ու շրջանային կուսկազմակերպությունների վերստուգիչ հանձնաժողովներին հիմնականում մեթոդական օգնություն է ցույց տալիս:

Վերստուգիչ հանձնաժողովների աշխատանքի արդյունավետության բարձրացման նկատելի գործոն է մասսայական ինֆորմացիայի միջոցների կողմից նրանց աշխատանքի լայն լուսաբանումը: Համապատասխան հրապարակումներում անհրաժեշտ է պարզաբանել նոր կանոնադրության դրույթները, պրակտիկայում դրանց իրականացման ընթացքը:

Վերստուգիչ հանձնաժողովները այսօր օժտված են այն բոլոր լիազորություններով, որոնք հնարավորություն են ընձեռում կուսակցական սկզբունքայնությամբ բացահայտելու թերությունները ու վրիպումները, անհաշտ պայքար մղելու մեր առաջընթացը խոչընդոտող արգելքների վերացման համար:

Հարկավոր է տեղերում գործն այնպես կազմակերպել, որպեսզի վերստուգիչ հանձնաժողովի յուրաքանչյուր անդամ ունենա կոնկրետ հանձնարարություն, ակտիվորեն մասնակցի կուսկազմակերպության առջև ծառացած խնդիրների լուծմանը, իր արժանի ավանդը մուծի մեր ընդհանուր գործում:

---



# ԴԱՓՆԵԿԻՐԸ

**Ա. ՄԵԼԻՔՅԱՆ**

Այդ օրը Պողոս Սարգսյանի բրիգադի համար դարձավ շրջադարձային: Ժողովից հետո, որն անցկացրեց ինքը՝ բրիգադավարը, շինարարները դեռ երկար ժամանակ չէին ցրվում: Թեև որոշումն արդեն ընդունված էր, բայց, այդուհանդերձ, վեճերը շարունակվում էին. «Լավ մտածիր, Պողոս, թաքցնելու բան չկա, ոմանք լավ են աշխատում, մյուսները՝ համեմատաբար վատ, բրիգադային կապալն արդյոք հավասարության չի՞ հանգեցնի: Ստացվում է, որ յուրաքանչյուրից է կախված և՛ վերջնական արդյունքը, և՛ ամսվա մեր վաստակը: Աշխատանքային մասնակցության գործակիցը, որի մասին դու խոսում ես, իրո՞ք կօգնի անաչառ գնահատելու մարդկանց անձնական ներդրումը: Անհամեմատ ավելի ձեռնտու է, երբ պատասխանատու ես միայն ինքդ քեզ համար և քո աշխատանքի համար: Էլ ինչո՞ւ գլուխներս ավելորդ ցավի մեջ գցենք»:

Պողոս Սարգսյանը ներքուստ իրեն վաղուց էր նախապատրաստել այդ ժողովին: Գիտեր, որ կլինեն ոչ քիչ տարաձայնություններ, ինքն էլ էր երբեմն տարակուսում: Բայց ոչ թե նրա համար, որ հավատացած չէր իր ընտրության ճշտությանը, բրիգադային կապալի առավելություններին: Գլխավոր դժվարությունը նա տեսնում էր մեկ այլ բանում՝ մարդկանց իր հետևից տանելու, նորովի աշխատելու հարցում նրանց համոզելու մեջ: Իսկ Պողոս Սարգսյանը բրիգադային կապալի մեթոդին անցնելու պայմաններ ուներ: Կոլեկտիվի կայունությունը, նրա բազմաթիվ անդամների պրոֆեսիոնալ բարձր վարպետությունը, աշխատանքային ամուր կարգապահությունը՝ այդ ամենը մեծապես նպաստում էր բարձր արդյունքների ձեռքբերմանը: Շենքերը շահագործման էին հանձնում ժամանակին, աշխատանքների որակի առթիվ բողոքներ չկային, գյուղշին միավորման Էջմիածնի շրջանում գտնվող № 1 տրեստի 2-րդ շինվարչությունում այդ բրիգադը համարվում էր լավագույններից մեկը:

Իսկ ի՞նչ էր ուզում Պողոս Սարգսյանը: Ամեն ոք, ով լավ ծանոթ է նրան, միանգամից կասի, որ նրա բնավորության գլխավոր գիծը անսահման նվիրվածությունն է իր աշխատանքին: Հենց դրանում են, նրա կարծիքով, կենտրոնացված աշխատողի պարտքի, պատվի, խղճի մասին հասկացությունները: Եվ այդ ոչ թե ուղղակի ամպագորգոռ խոսքեր են, այլ անհրաժեշտ պահանջ, որը պետք է կոնկրետ արտահայտություն գտնի առօրյա, սովորական գործերի մեջ: Իսկ կատարելագործել իր աշխատանքը, ձգտել նոր բնագծերի՝ բրիգադավար Պողոս Սարգսյանի համար նշանակում է կյանքը հագեցնել առանձնահատուկ իմաստով, կատարած պարտքի գիտակցությամբ: Նա իր համար այդպիսի բնագծեր է համարում տասնյակ շենքերը, որ ինքն ու իր ղեկավարած կոլեկտիվը կառուցել են սեղմ ժամկետներում և հանձնել, որպես կանոն, «լավ» ու «գերազանց» գնահատականներով: Այսօր այստեղ բոլորը միահամուռ այն կարծիքին են, որ ձեռքբերված հաջողությունների հիմքը բրիգադային կապալն է:

Բայց այն ժամանակ աշխատանքի կազմակերպման ու խթանման առաջադիմական եղանակը, որը շինարարության մեջ, այն նախաձեռնողի ազգանունով, զլոբինյան մեթոդ է կոչվում, թեև շատերին էր հետաքրքրում, բայց, այդուհանդերձ,

բնավ ոչ ամեն կոլեկտիվ էր համարձակվում դրան անցնել: Մինչդեռ հենց այն, ինչը հաճախ տարակուսանքներ էր առաջացնում մյուսների մեջ, հրապուրում էր Պողոս Սարգսյանին. դա մեկ բրիգադի ուժերով տներ կառուցելն էր: Գոյություն ունի սոսկ մի փոքրիկ վերապահում. միայն սանտեխնիկական աշխատանքներ կատարելիս է հրավիրվում մասնագիտացված խումբ: Մնացած ամեն ինչ՝ սկսած հիմքը գցելուց և վերջացրած հարդարման աշխատանքներով, կատարում է նույն կոլեկտիվը: Իհարկե, դրա համար հարկավոր էր շատ բան փոխել բրիգադի կառուցվածքում և, որ առանձնապես կարևոր է, հասնել այն բանին, որ նրա անդամներից յուրաքանչյուրը տիրապետեր մի քանի մասնագիտության:

— Այդ խնդիրը մեզ հաջողվեց լուծել համեմատաբար արագորեն,— հիշում է Սարգսյանը:— Եվ, այդուհանդերձ, երբ մենք ընդհուպ կանգնեցինք նոր մեթոդին անցնելու առաջ, թեժ վիճաբանություններ առաջացան: Շատերը չէին համաձայնում աշխատանքն ըստ վերջնական արդյունքի գնահատելու սկզբունքին, որի կիրառության դեպքում ամբողջ կոլեկտիվի հաջողությունը կախման մեջ էր դրվում յուրաքանչյուրի ներդրումից: Իսկ վարձատրությունն ըստ աշխատանքային մասնակցության գործակցի համարում էին սուբյեկտիվ և ոչ ձեռնտու բան...

Պողոս Սարգսյանին առաջինը պաշտպանեց Արշամ Ղևոնդյանը՝ փորձառու մի ատաղձագործ, որը հիմա էլ աշխատում է այդ բրիգադում և հանդիսանում է նրանցից մեկը, ովքեր որոշում են կոլեկտիվի դեմքը: Իսկ երբ նրանց միացան ևս մի քանի մարդ, բրիգադավարը ժողով անցկացրեց: Թեև լուրջ տարակարծություններ կային, բայց, այդուհանդերձ, որոշեցին առաջարկվող մեթոդը փորձել նոր օբյեկտի շինարարությունում: Եթե ստացվի, կաշխատեն բրիգադային կապալով, իսկ եթե չստացվի, ապա այդ դեպքում... Ամենից հեշտը հնին վերադառնալն է, բայց այդ մասին Պողոս Սարգսյանը մտածել չէր ուզում. նա հույսով էր և հավատում էր հաջողությանը: Դրան հավատում էր նաև շինարարական վարչության ղեկավարությունը, որը գտնում էր, որ հենց այդ կոլեկտիվում են առկա աշխատանքի կազմակերպման և խթանման առաջադիմական ձևին անցնելու անհրաժեշտ պայմանները:

«Փորձարարական» օբյեկտ դարձավ քաղաքի ծայրամասի բնակելի տներից մեկը, որը բրիգադային կապալի մեթոդով Պ. Սարգսյանի կոլեկտիվի կառուցած առաջին շենքն է: Դրա նկատմամբ վարչությունում դրսևորեցին առանձնահատուկ հետաքրքրություն, հոգ էին տանում, որ մատակարարումներն իրականացվեին համաչափորեն: Եվ իրոք, շինանյութերն ստացվում էին ժամանակին. պարապուրդները այսպես ասած օբյեկտիվ պատճառների մասին անգամ խոսք լինել չէր կարող: Իսկ աշխատանքային մասնակցության գործակցի խիստ չափանիշները բրիգադի յուրաքանչյուր անդամից պահանջում էին կարգապահություն, կոլեկտիվի համար առավել մեծ օգտակարությամբ աշխատելու ձգտում: Այլապես հնարավոր չէր հասնել բարձր վերջնական արդյունքների և օգտվել աշխատանքի վարձատրության ակորդային-պարգևատրման համակարգի առավելություններից: Պ. Սարգսյանի գլխավորած բրիգադը գործում էր իբրև միասնական արտադրական շղթա, որի կարևորագույն սկզբունքներն էին փոխվերահսկողությունը, փոխօգնությունը, աշխատանքի յուրաքանչյուր կոնկրետ տեղամասի համար անձնական և կոլեկտիվ պատասխանատվության զուգորդումը:

Բնակելի շենքը կառուցեցին սեղմ ժամկետում՝ 8 ամսում, հանձնաժողովն այն ընդունեց «գերազանց» գնահատականով: Հաջողությունն ակներև էր, և դա ամենագլխավոր փաստարկը դարձավ աշխատանքի կազմակերպման ու խթանման նոր մեթոդի օգտին: Պողոս Սարգսյանի գլխավորած կոլեկտիվը հանրապետությունում առաջիններից մեկն անցավ բրիգադային կապալի:

...ԱՅԴ ԺԱՄԱՆԱԿԻՑ ՇՈՒՐՋ ՄԵԿՈՒԿԵՍ տասնամյակ է անցել: Բայց հիմա էլ բրիգադի անդամներից շատերը հաճախ են հիշում և՛ Պ. Սարգսյանի հրավիրած այն ժողովի, և՛ երկար շարունակվող վեճերի, և՛ զլոբինյան մեթոդով կառուցված առաջին տան մասին: Հիշում են, որովհետև հենց դրանցից սկսվեցին կոլեկտիվի աշխատանքի կազմակերպման արմատական վերափոխումները, որոնք հնարավորություն ընձեռեցին զգալիորեն բարձրացնել աշխատանքի թե՛ արտադրողականությունը և թե որակը: Եվ էլի՝ հաջողվեց ավելի սերտորեն համախմբել բրիգադին, ստեղծել համախոհների կոլեկտիվ, որը լավ գիտե իր խնդիրները և միշտ իրեն պա-



տասխանատու է համարում հանձնարարված յուրաքանչյուր օբյեկտի համար: Այդ տարիների ընթացքում, իհարկե, եղել են մարդիկ, որ հեռացել են, չդիմանալով առաջադիմական մեթոդի խիստ պահանջներին: Բայց փոխարենը մնացել է հիմնական մասը՝ թվով 17 մարդ, իսկական վարպետներ, որոնք առավել լիովին են դրսևորել և դրսևորում իրենց ընդունակությունները և որոնք բրիգադային կապալը համարում են աշխատանքի միակ ընդունելի ու ձեռնտու ձևը՝ ինչպես բարոյական, այնպես էլ նյութական առումով:

Խոսելով իր ղեկավարած կոլեկտիվի մասին, Պողոս Սարգսյանն ամենից առաջ տալիս է Արշամ Ղևոնդյանի անունը: Եվ ոչ միայն այն պատճառով, որ միասին են աշխատում արդեն ավելի քան 25 տարի, այլ այն, որ ատաղձագործը, ինչպես բրիգադավարն է հավաստում, առաջին դեմքն է շինհրապարակում: Իհարկե, ավելացնում է նա, փայտից չէ, որ տուն ենք կառուցում: Բայց շենքի բետոնե հիմքի համար կոնստրուկցիաներ պատրաստելուց սկսած՝ ատաղձագործից պահանջվում է աշխատանքի բարձր ճշգրտություն: Դրանից է կախված այն, թե հետո ինչպիսի ընթացք կունենա օբյեկտի շինարարությունը: Եվ ամեն անգամ Արշամ Ղևոնդյանն ու Ալբերտ Մելիքսեթյանը հիանալի են կատարում իրենց գործը: Նրանց հետ մեկտեղ նաև մյուսները՝ բետոնագործ Հրանտ Ոսկանյանը, որմնադիր Սուրեն Բաղալյանը, բանվորուհի Պոլինա Կոժուխովան, որոնք կազմում են կոլեկտիվի կորիզը և ընթանում են սոցիալիստական մրցության ավանգարդում:

Իսկ ինչ վերաբերում է իրեն՝ բրիգադավարին, ապա այստեղ նրան լիովին վստահում են, հարգում նրա կարծիքը: Որպեսզի կոլեկտիվում առողջ բարոյական մթնոլորտ տիրի, այդ բանն առանձնապես կարևոր է: Չէ՞ որ բրիգադի իրավունքների և հնարավորությունների ընդլայնումով անչափ բարձրանում է նաև նրա ղեկավարի պատասխանատվությունը: Հոգ տանել իր կոլեկտիվի անդամների մասին, թույլ չտալ սուբյեկտիվ մոտեցում՝ ահա հիմնական պահանջները, առանց որոնց հնարավոր չէ հաջողությունը: Իսկ ամեն մի կոնկրետ տեղամասում աշխատանքը հստակորեն կազմակերպելու ունակությունը Սարգսյանի՝ որպես ղեկավարի, գլխավոր տարբերիչ հատկանիշն է: Ոչ պակաս կարևոր է և այն, որ նա այն բրիգադավարներից չէ, ովքեր հրամայում են և իրենց գործն ավարտած համարում: Եթե հարկ է լինում, ինքն էլ է ձեռք զարկում աշխատանքին, օգնում, ըստ որում գործից գլուխ է հանում ուզածդ վարպետից ոչ պակաս հմտությամբ: Վարպետ Պողոսը տիրապետում է մի քանի մասնագիտությունների. բարձր կարգի ատաղձագործ է, ամրանագործ, ծեփագործ: Մասնագիտությունների համատեղում է նա պահանջում բրիգադի յուրաքանչյուր անդամից: Հենց այդպես է կոլեկտիվում իրագործվում միմյանց փոխարինելու սկզբունքը:

Պողոս Սարգսյանը, որը սովորաբար սակավախոս է, սիրում է կրկնել. «Կառուցում ենք մարդկանց համար»: Դրա մեջ բրիգադի ամենօրյա աշխատանքի իմաստն է պարունակվում: Կառուցել մարդկանց համար՝ նշանակում է ոչ միայն օբյեկտը ժամանակին հանձնել շահագործման, այլև բոլոր աշխատանքները կատարել բարձր որակով, որպեսզի իրենց ստացած նոր բնակարաններում մարդիկ ապրեն երջանիկ, հարմարավետ պայմաններում: Այսպիսի ուշագրավ մի փաստ. պատմում են, որ քիչ չեն դեպքեր եղել, երբ մարդիկ խնդրել են հետաձգել իրենց հերթը, մինչև որ հնարավորություն լինի բնակարան ստանալու Պողոս Սարգսյանի կոլեկտիվի կառուցած շենքից:

Բնորոշ է և մեկ այլ բան. աշխատանքի կազմակերպման և խթանման առաջադիմական ձևին անցնելուց ի վեր բրիգադավարի համար նորմա է դարձել աշխատանքների գրաֆիկ մշակելը, այն հաշվով, որ օբյեկտի շինարարությունն ավարտվի պլանավորված ժամկետից առնվազն մեկ ամիս շուտ: Դա յուրատեսակ պարտավորություն է, որը կոլեկտիվում քննարկվելուց հետո օրենքի ուժ է ստանում: Եվ աշխատանքի տեմպերի առաջացման ավանդույթն այստեղ դեռ ոչ մի անգամ չի խախտվել: Ուստի զարմանալի չէ, որ Պողոս Սարգսյանի բրիգադն իր 11-րդ հնգամյակը եզրափակեց 10 ամիս շուտ, նախատեսված 2 միլիոն 140 հազար ռուբլու դիմաց կատարելով 2 միլիոն 723 հազար ռուբլու շինմոնտաժային աշխատանքներ, այստեղ արտադրողականությունը բարձրացավ 18,7 տոկոսով: Բրիգադը հիանալի ցուցանիշների է հասնում նաև 12-րդ հնգամյակի մեկնարկային տարում: Այդ ձեռքբերումնե-

րում զգալի դեր է խաղացել Պողոս Սարգսյանը, որը 1985 թվականի արդյունքներով դարձավ ՍՍՀՄ պետական մրցանակի դափնեկիր: Ի դեպ, դա նրա աշխատանքային ծառայությունների միակ ճանաչումը չէ: 1975 թվականին, բրիգադային կապալի ներդրումից մի քանի տարի հետո, այն մեթոդի, որը հնարավորություն ընձեռեց հասնելու առանձնապես բարձր արդյունքների, Պ. Սարգսյանը պարգևատրվեց «Պատվո նշան» շքանշանով:

ՆԵՐԿԱՅՈՒՄՍ ՆՐԱ ԲՐԻԳԱԴԸ շենք է կառուցում Ջվարթնոց բնակելի միկրոշրջանում: Հետաքրքիր է Պողոս Սարգսյանին տեսնել շինհրապարակում. արագաշարժ է, եռանդագին, ամբողջապես աշխատանքով տարված: Անցնելով մերթ մեկ, մերթ մյուս տեղամասը, նա ոչ թե պարզապես ցուցումներ է տալիս, շտկում այս կամ այն օղակի գործողությունները, թեև դա էլ շատ կարևոր է: Ղեկավարելով իր բրիգադը, Պ. Սարգսյանը միաժամանակ դառնում է շինարարության անմիջական մասնակիցը: Եվ ոչ միայն նրա համար, որ լավ գիտե կառուցվող օբյեկտում տիրող իրավիճակը, այլև նրա, որ համոզված լինի, թե յուրաքանչյուր կոնկրետ տեղամասում աշխատանքը կատարվում է խղճի մտոք:

Կոլեկտիվում ընտելացել են այն բանին, որ բրիգադավարը ժլատ է գովելու մեջ: Կմոտենա, կնայի գնահատողի պես և եթե գոհ մնա, գլուխը խրախուսանքով կթափահարի ու կհեռանա: Իսկ եթե դժգոհ լինի... Երբ Պ. Սարգսյանը որևէ կիսատ-պռատ գործ կամ խոտան է նկատում, դառնում է անզիջող, խիստ, փոքր-ինչ կոպիտ: Անպայման կպահանջի գործը նորից անել, իսկ բրիգադի խորհրդում կձգտի այն բանին, որ կատարված աշխատանքի ցածր որակի համար իջեցվի աշխատանքային մասնակցության գործակիցը: Վկա դառնալով այդպիսի տաք վեճերի կամ ներկա գտնվելով կոլեկտիվի արտադրական ժողովին, համոզվում ես, որ բրիգադում բնավ ոչ ամեն ինչ է հարթ, և այստեղ հաջողությունն ամեն անգամ ձեռք է բերվում ոչ հեշտությամբ: Շինարարության մեջ ինչքան ուզես դժվարություններ ու պրոբլեմներ կան: Պ. Սարգսյանի կոլեկտիվը նույնպես բացառություն չէ: Բայց նրա համար կա մի էական տարբերություն. այն, որը կախված է հենց բրիգադից, որպես կանոն, լիովին լուծվում է նրա կողմից:

Այսօր հազիվ թե կարելի է ասել, թե կոլեկտիվն սպառել է իր հնարավորությունները: Եվ դա ունի իր բացատրությունը: Ինքը՝ բրիգադավարը, հազվադեպ է լիովին գոհ լինում հանձնված օբյեկտից: Իսկ երբ նրա հետ խոսում ես այդ մասին, զգում ես, թե այստեղ՝ աշխատանքային սկզբնական օղակում, ինչպես են իրենց հստակորեն զգալ տալիս ամբողջ ճյուղի պրոբլեմները. նախագծային-նախահաշվային փաստաթղթերով ժամանակին չապահովելը, մշտական սրբագրումները, մատակարարումների անհամաչափությունը, շինանյութերի ցածր որակը: Չէ որ, ցավոք, արդեն կանոն է դարձել. մարդիկ նոր բնակարան ստանալու հետ մեկտեղ սկսում են անպայման այն նորոգել. հաճախ փոխում են դռները, մանրահատակը, ջեռուցման մարտկոցները, էլեկտրալարերի տեղադրությունը, մի խոսքով, շատ բան, ամենը չես թվարկի: Այստեղ, իհարկե, նկատի չունենք նրանց, ովքեր իրենց բնակարանում չափազանց թանկարժեք, ճոխ նորոգում են կատարում: Դա այլ խոսակցության թեմա է: Տվյալ դեպքում խոսքը վերաբերում է նրանց, ովքեր կամենում են համեստ, բայց հարմար և գեղագիտական տեսք տալ իրենց բնակարանին: Իսկ դրա համար հարկ է լինում նորոգել այն, իսկ դա պահանջում է և՛ լրացուցիչ միջոցներ, և՛ ժամանակ: Ինչ արած, հաճախ այդպիսի տներ են շահագործման հանձնվում:

— Դա թերևս ամենամեծ կշտամբանքն է նախագծողների, պատվիրատուների, մատակարարների, շինարարների հասցեին,— պնդում է Պողոս Սարգսյանը:— Դեռ ավելին, այն ակնբախորեն ցույց է տալիս, թե շինարարությունը, հատկապես բնակարանային շինարարությունը, որքան է հետ մնացել ժամանակի պահանջներից: Այսօր նրա հնարավորությունները հետ են մնում մարդկանց պահանջմունքները բավարարելուց: Այստեղ հարկավոր է արմատական բեկում, ճյուղի արագ զարգացում:

Այդ պրոբլեմների մասին Պ. Սարգսյանը հուզմունքով է խոսում, որովհետև նա, որպես շինարար, կոմունիստ, քաղաքացի, բնավ անտարբեր չէ այն գործի նկատմամբ, որին ծառայում է ահա արդեն շուրջ 30 տարի: Մեր զրույցի մեջ ասես դրսևորվում է բրիգադավարի խառնվածքի քննադատական տրամադրվածությունը: Կարծես նա պատրաստ է մոռանալու իր կոլեկտիվի ձեռք բերած նվաճումները և



խոսելու միայն հասունացած պրոբլեմների մասին: Պողոս Սարգսյանը չի էլ թաքցնում, որ իր՝ շինարարների բրիգադի փորձով իմաստնացած ղեկավարի համար դժվար է դարձել մարդկանց հետ աշխատելը: Նույն որմնադիրը կամ, ասենք, ծեփագործը խնդրում, իսկ հաճախ էլ ուղղակի պահանջում է աշխատանքի այնպիսի վարձատրություն, որը մի քանի անգամ գերազանցում է աշխատանքների պաշտոնապես սահմանված վարձաչափերը: Եվ նրանց հասկանալ է պետք: Կյանքը զարգանում է, աճում են մարդկանց պահանջմունքներն ու պահանջներն ինչպես կենցաղում, այնպես էլ արտադրության մեջ: Նրանք ուզում են աշխատել ավելի արտադրողաբար, ստեղծագործաբար, ձեռքի աշխատանքի նվազ գործադրմամբ. վերջին հաշվով հասնել բարձր արդյունքների և ստանալ համապատասխան վարձատրություն: Իսկ շինարարական հրապարակում փաստորեն ամեն ինչ նույն ձևով է մնացել, ինչպես եղել է մի քանի տասնամյակ առաջ: Մինչև հիմա գործում են նույն նորմատիվները, 60-ական թվականներին սահմանված վարձաչափերը, ամբարձիչ կռունկից բացի, ոչ մի մեքենայացում չկա, որմնադիրների, ծեփագործների, մանրահատակագործների, մյուս աշխատողների տրամադրության տակ կան միայն ձեռքի պարզունակ գործիքներ ու հարմարանքներ: Դրա համար էլ, երբ շինարարների աշխատանքը ծանր են համարում, դա պետք է հասկանալ բառացիորեն: Այստեղ նկատի է առնվում ոչ միայն այն, որ նրանց հարկ է լինում աշխատել և՛ անձրև, և՛ ձյուն գալիս, և՛ սառնամանիքին, և՛ տապին: Նրանց աշխատանքը ծանր է, որովհետև կատարվում է հիմնականում ձեռքով: Եվ մի՞թե օրինաչափ չէ, որ փորձառու, որակյալ վարպետը որակով կատարած իր աշխատանքի համար խնդրում է բարձր վարձատրություն: Կարծում ենք, որ օրինաչափ է: Եվ Պողոս Սարգսյանը, սովորաբար, ձգտում է բավարարել իր կոլեկտիվի անդամների այդպիսի պահանջները: Այստեղ առանձնակի գաղտնիքներ չկան: Երբ մեծ օբյեկտների շինարարություն է վստահվում,— իսկ նրան հիմնականում հենց այդպիսի օբյեկտներ են հանձնարարում,— և երբ դրանք կառուցվում են բրիգադային կապալի եղանակով, ապա երևան են գալիս տնտեսական մանևրման լայն հնարավորություններ: Բացի այդ, եթե շենքը ժամկետից շուտ է շահագործման հանձնվում, ապա դրա շինարարությունը նախատեսվածից էժան է նստում: Դա նույնպես թույլ է տալիս ավելացնել նյութական խրախուսման միջոցները:

Այստեղ խախտման տարր կա՞, արդյոք: Երևի: Չէ որ բրիգադի անդամների աշխատանքի վարձատրությունը պաշտոնական, թող նույնիսկ հնացած, նորմատիվներից բարձր է: Բայց գոյություն ունի հարցի նաև մեկ այլ, շատ կարևոր կողմ. թույլ տալով նման «գերածախս», որը հետո փոխհատուցվում է ամբողջ կոլեկտիվի աշխատանքի բարձր արդյունավետությամբ, Պ. Սարգսյանը դրա հետ մեկտեղ դուրս չի գալիս յուրաքանչյուր կոնկրետ օբյեկտի շինարարության համար սահմանված ֆինանսների շրջանակներից: Եվ գուցե հենց նրա համար, որ նա առավել լիովին է օգտագործում նյութական խթանման հնարավորությունները, նրա ղեկավարած բրիգադը կայունաբար գերակատարում է պլանային առաջադրանքները:

ՄԻՆՉԵՎ 2000 ԹՎԱԿԱՆԸ ՅՈՒՐԱՔԱՆՉՅՈՒՐ ընտանիքի առանձին բնակարանով կամ տնով ապահովելու՝ կուսակցության XXVII համագումարի պահանջը առաջիկա ժամանակաշրջանում ամեն մի շինարարի համար դառնում է գլխավորը: Եվ որ այդ խոշորամասշտաբ ծրագրի իրագործմանը ակտիվորեն կմասնակցի նաև իր ղեկավարած կոլեկտիվը՝ դա շատ է ոգևորում Պողոս Սարգսյանին:

— Ես հաճախ եմ հիշում, թե ինչպիսին էր Էջմիածինը մոտ 30 տարի առաջ, երբ այստեղ աշխատելու եկա Երևանի հիդրոմելիորատիվ տեխնիկումի շինարարական ֆակուլտետն ավարտելուց հետո,— պատմում է բրիգադավարը:— Այն ժամանակ այստեղ համեմատաբար բազմահարկ երկու շենք կար. հին հանրախանութը և դրա կողքին գտնվող նույն տիպի բնակելի տունը: Եվ այն ժամանակ հազիվ թե կարելի լիներ ենթադրել, որ երեք տասնամյակում այսքան անճանաչելիորեն կվերափոխվեր մեր քաղաքի դեմքը: Կառուցվել են հսկայական թվով բնակելի տներ: Եվ, այդուհանդերձ, բնակարան ստանալու համար հերթագրվածները դեռ քիչ չեն...

Հենց դրա համար էլ Պողոս Սարգսյանը բնակարանային պրոբլեմի լուծման՝ կուսակցական համաժողովում առաջ քաշված ծրագիրը համարում է խիստ հրատապ

մանակաշրջանը կոմունիստական կուսակցության ու սովետական ժողովրդի պատմության կարևորագույն փուլերից է, երբ լուծվում էր ՍՍՀՄ-ում սոցիալիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման խնդիրը։ Գրախոսվող աշխատությունում հեղինակը փորձել է որոշ չափով լրացնել Հայաստանի կոմունիստական կուսակցության ինդուստրացման ժամանակաշրջանի գործունեության պատմությունը։ Այդ խնդրի լուծումը նրան հիմնականում հաջողվել է։ Սոցիալիստական ինդուստրացման մարքս-լենինյան տեսության, ՍՄԿԿ, անդրկովկասյան կոմունիստական կազմակերպությունների ու Հայաստանի կոմկուսի համագումարների որոշումների, ինչպես նաև արխիվային փաստաթղթերի, վիճակագրական ժողովածուների և պարբերական մամուլի ու գրականության տվյալների հիման վրա նա կարողացել է ստեղծել արժեքավոր աշխատություն։ Գրքում փորձ է արված՝ ցույց տալու հանրապետության ինդուստրացման առանձնահատկությունները և լուսաբանելու բանվոր դասակարգի ու աշխատավորության մյուս խավերի նյութական, կուլտուրական ու կենցաղային պայմանների բարելավման պատմությունը։

Աշխատությունը բաղկացած է փոքրիկ ներածականից, երեք գլուխներից և շատ համառոտ վերջաբանից։ Ներածականում հիմնավորված է հետազոտվող թեմայի հրատապությունը, ցույց է տրված նրա մշակվածության աստիճանը, ուսումնասիրության աղբյուրները, գրականությունը։

Աշխատությունն սկսվում է հանրապետության ժողովրդական տնտեսության վերականգնման պատմության առավել կարևոր հարցերի քննարկմամբ, ցույց է տրվում, թե տնտեսական ինչ հիմքի վրա է Հայաստանում սկսվել ժողովրդական տնտեսության սոցիալիստական վերակառուցումը, երկրի ու հանրապետության ինդուստրացումը։ Սովետական Հայաստանի արդյունաբերության վիճակը մինչև ինդուստրացումը (1920—1926 թթ.) գլխում, որը փաստորեն ներածական բնույթ ունի, արծարծված հարցերն արդեն շոշափվել են սովետահայ պատմակուսակցական գրականության մեջ։ Թեպետև հեղինակը տեղական կուսկոմիտեների ու կազմակերպությունների գործունեության պատմությունից նոր փաստեր ու տվյալներ է բերել արդեն հայտնի պրոբլեմների նորովի լուսաբանման համար, սակայն հանրահայտ երևույթների ու փաստերի նկարագրման ու պարզաբանման վրա շատ է ծանրացել։ Ավելին, նա ոչ միայն անհարկի շատ տեղ է հատկացրել վերականգնման տարիներին Սովետական Հայաստանի և ՌՍՖՍՀ արդյունաբերության ու էներգետիկայի վիճակի նկարագրությանը, այլև նույն հարցի քննությունը տարածել է նաև նախասովետական ժամանակաշրջանի վրա՝ հաճախակի խախտելով իր ընտրած թեմայի ժամանակագրական շրջանակները, չկարողանալով խուսափել կրկնություններից։

Եվ, այնուամենայնիվ, հեղինակը կուսակցության ու երկրի պատմության ընդհանուր ֆոնի վրա կարողացել է տալ Սովետական Հայաստանի արդյունաբերության վերականգնման ու զարգացման իրական պատկերը։ Նա բացահայտել է այն գործոնները, որոնք հնարավոր դարձրին արագորեն իրագործել հանրապետության արդյունաբերության վերականգնման աշխատանքները։ Այդ տեսակետից հեղինակը բարձր է գնահատել ՌՍՖՍՀ և ռուս ժողովրդի կողմից Սովետական Հայաստանին ցույց տրված եղբայրական օգնության նշանակությունը, ինչպես նաև Անդրֆեդերացիայի ու ՍՍՀՄ-ի կատարած դերը, Վ. Ի. Լենինի՝ Կովկասի կոմունիստներին ուղղված 1921 թ. ապրիլի 14-ի հայտնի նամակի ստրատեգիական կարևորությունը։ Այնուհետև բնութագրելով հին հասարակարգից ժառանգած արդյունաբերության խղճուկ վիճակը հանրապետությունում՝ Սաղաթելյանը շարադրում է արդյունաբերական ձեռնարկությունների ազգայնացման ու արդյունաբերության տարբեր ճյուղերի վերականգնման պատմությունը։ Այստեղ նա հանգամանորեն ցույց է տալիս պղնձարդյունաբերության, մեխանիկական արհեստանոց-գործարանների, շինանյութերի, կաշվի, բամբակազտիչ գործարանների, խոշոր, թեթև և սննդի արդյունաբերության բազմաթիվ այլ ձեռնարկությունների ու տրանսպորտի վերականգնման ընթացքը՝ եզրակացնելով, որ Հայաստանում արդյունաբերությունը հիմնականում ոտքի կանգնեցվեց ժողովրդական տնտեսության վերականգնման ժամանակաշրջանի վերջերին (տե՛ս էջ 47—55)։

Աշխատության այս մասում կրկին շեշտված է այն ճշմարտությունը, որ շնորհիվ կոմունիստական կուսակցության լենինյան ազգային քաղաքականության ճիշտ կիրառման և եղբայրական սովետական հանրապետությունների ու հատկապես ՌՍՖՍՀ-ի անշահախնդիր օգնության՝ Սովետական Հայաստանում արդյունաբերության վերականգնմանը զուգընթաց տեղի էր ունենում նոր արդյունաբերական ձեռնարկությունների ու օբյեկտների շինարարություն, որով նպաստավոր պայմաններ են ստեղծվում հանրապետության ինդուստրիալ զարգացման համար։ Այս կապակցությամբ հանգամանալի լուսաբանված է ՌՍՖՍՀ-ի կողմից Սովետական Հայաստանին նվիրված տեքստիլ գործարանի սարքավորումների ստացման, տեղադրման, մեխանիկական և այլ գործարանների ու ձեռնարկությունների տեխնիկական վերազինման նպատակով Ռուսաստանից ստացված մետաղամշակման սարքերի ու մեքենաների տեղադրման պատմությունը, վերհանված այդ երևույթի ինտերնացիոնալ և քաղաքական նշանակությունը։

Աշխատության համեմատաբար հաջողված մասերից են երկրորդ և երրորդ գլուխները, որոնք ներկայացնում են հետազոտվող թեմայի բուն բովանդակությունը։ Երկրորդ գլխում՝ Արդյունաբերական շրջանների կուսակցական կազմակերպությունների գործունեությունը ինդուստրացման առաջին տարիներին (1926—28 թթ.), հաջող փորձ է արված, ելնելով ՍՍՀՄ-ում սոցիալիզմի կառուցման լենինյան պլանի տեսական դրույթներից, հիմնավորելու երկրի սոցիալիստական ինդուստրացման քաղաքականության կուսակցության ընդունած կուրսը, որը հռչակվել էր ՀամԿ(բ)Կ XV համագումարում։ Ցույց է տրված սոցիալիստական ինդուստրացման էությունը, ինդուստրացման սովետական ու կապիտալիստական մեթոդների և նրա իրագործման համար անհրաժեշտ կուտակման աղբյուրների տարբերությունը, ինչպես նաև այդ հարցերի մասին ՀամԿ(բ)Կ XIV համագումարի և ՀամԿ(բ)Կ Կենտկոմի 1926 թ. ապրիլյան պլենումի ընդունած որոշումների էությունն ու գործնական և քաղաքական նշանակությունը։ Այստեղ շոշափված են նաև սոցիալիստական ինդուստրացման տեղական առանձնահատկությունները։ Ելնելով ինդուստրացման ընդհանուր օրինաչափությունների և տեղական առանձնահատկությունների խելամիտ զուգակցման ու կիրառման անհրաժեշտությունից՝ հեղինակն իրավացիորեն եզրակացնում է. «Ինդուստրացումը մեր կուսակցության կողմից նախատեսվել էր իրագործել ամբողջ երկրի մասշտաբով, անկախ այն բանից, թե տնտեսական զարգացման ինչպիսի մակարդակի վրա էր գտնվում միութենական հանրապետություններից յուրաքանչյուրը» (էջ 77)։ Ինդուստրացման պրոբլեմը ուներ համամիութենական նշանակություն, այն կարելի էր և պետք էր լուծել ու լուծվեց ողջ սովետական ժողովրդի համատեղ ջանքերով։

Գրքում նշված է, որ Հայաստանի կոմկուսը, հանրապետության աշխատավորները անվարան նվիրվել են երկրի ինդուստրացման լենինյան քաղաքականության իրականացման գործին։ Ինդուստրացման առաջին հաջողությունների թվում հիշատակված են հանրապետության գունավոր մետալուրգիայի ձեռնարկությունների վերականգնման ու զարգացման, տեքստիլ արդյունաբերության ինդուստրիալ զարգացման, շինանյութերի, էներգետիկայի, խոշոր, թեթև ու սննդի արդյունաբերության և երկաթուղային տրանսպորտի ասպարեզում ձեռք բերված նվաճումները։

Երկրի և նրա առանձին շրջանների ինդուստրացման գործում վճռական դեր խաղաց ՍՍՀՄ և ազգային հանրապետությունների առաջին հնգամյա պլանների կենսագործումը։ Այս պրոբլեմի լուծման հետ կապված հարցերի քննարկմանն է նվիրված գրախոսվող աշխատության երրորդ՝ Ժողովրդական տնտեսության զարգացման առաջին հնգամյա պլանի ընդունումը և կուսակցական կազմակերպությունների պայքարը նրա կենսագործման համար (1928—1932 թթ.) գլուխը։ Այս և նախորդ գլխում դրսևորվել են հեղինակի գիտահետազոտական աշխատանք կատարելու կարողությունները։ Բնութագրված են գիտականորեն հիմնավորված տարեկան և հեռանկարային հնգամյա պլանների դերն ու նշանակությունը սոցիալիստական շինարարության պրոցեսում, ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման առաջին հնգամյա և միութենական ու ազգային հանրապետությունների հնգամյա պլանների հիմնական տնտեսական ու քաղաքական խնդիրները, օրինաչափություններն ու առանձնահատկությունները։

Ելնելով ՀամԿ(բ)Կ XV, XVI համագումարների, ինչպես նաև ՀամԿ(բ)Կ XVI կոնֆերանսի ու Կենտկոմի համապատասխան պլենումների, Անդրկովկասի կոմունիստական կազմակերպությունների V և VI, ՀԿ(բ)Կ VI—VII համագումարների որոշումներից՝ հեղինակը հիմնականում ճիշտ է բնութագրել Հայկոմկուսի և նրա տեղական կոմիտեների ու սկզբնական կազմակերպությունների, ինչպես նաև հանրապետության ողջ աշխատավորության առջև ծառացած հերթական խնդիրները, կարողացել է ցույց տալ դրանց լուծման համար ծավալված պայքարի ընթացքն ու գլխավոր արդյունքները։ Այստեղ համեմատաբար հաջող է ներկայացված Հայկոմկուսի գավառային, շրջանային կոմիտեների ու սկզբնական կազմակերպությունների գործունեության պատմությունը՝ ինդուստրացման ասպարեզում առաջին հնգամյակի պլանային առաջադրանքները կատարելու ուղղությամբ։ Հատկապես հաջող է տրված հնգամյակի տարիներին սոցմրցման ու հարվածայնության ծավալման ընթացքում Անդրկովկասի և միութենական մյուս հանրապետությունների բանվոր-ծառայողների ցուցաբերած ինտերնացիոնալ համախմբվածության պատկերը, Երևանի, Լենինականի, Լենինգրադի, Ռոստովի, Թիֆլիսի, Բաքվի և այլ քաղաքների բանվոր-ծառայողների, Ձորագետի ՀԷԿ-ի ու մյուս հանրապետությունների հիդրոէլեկտրակայանների շինարարների սոցմրցման ու դրանց կատարման արդյունքների պատմությունը։ Գրքում նշվում է, որ հնգամյակի տարիներին շահագործման հանձնվեցին ավելի քան քսան արդյունաբերական ձեռնարկություններ, ինչպես նաև Ձորագետի ՀԷԿ-ը, Երևանի երկրորդ էլեկտրակայանը, Լենինականի հիդրոէլեկտրակայանի երկրորդ

հերթը, Լենինական—Արթիկ, Լենինական—Անիպեմզա, Ղափան—Մինչևան երկաթուղիները և այլն։

Գրքում փաստերի ու տվյալների գիտական լուսաբանման հիման վրա հեղինակը կարողացել է հանգել այն ճիշտ հետևության, որ հնգամյա պլանների իրագործումով մեր երկիրը հետամնաց ագրարային երկրից դարձավ առաջավոր ինդուստրիալ երկիր, ստեղծվեց սոցիալիզմի տնտեսական հիմքը, իսկ Հայաստանը խոշոր առաջընթաց քայլ կատարեց ինդուստրացման ճանապարհին, դարձավ ինդուստրիալ-ագրարային հանրապետություն։ Վերլուծելով առաջին հնգամյակի կատարման արդյունքները, հեղինակը ցույց է տվել այդ ասպարեզում Հայկոմկուսի գավառային, շրջանային կոմիտեների ու արտադրական կուսկազմակերպությունների կատարած դերը, դրանով իսկ իր համեստ ավանդը ներդրել Հայկոմկուսի պատմության գիտական մշակման գործում։

Սակայն աշխատությունը զերծ չէ առանձին թերություններից ու վրիպումներից։ Լավ կլիներ, եթե գրքի ներածականը և հատկապես վերջաբանը լինեին ավելի ծավալուն ու նպատակասլաց։ Նրա գլուխները ստորաբաժանված լինեին ենթագլուխների կամ պարագրաֆների, բեռնաթափվեին կրկնություններից ու կողմնակի նյութերից։

Թեև աշխատության առաջին գլխի շարադրանքի ընդհանուր բովանդակությունից երևում է, որ հեղինակը ճիշտ դիրքերի վրա է կանգնած Հայաստանում վերականգնման ժամանակաշրջանը (1921—1925 թթ.) սահմանելու հարցում, բայց առանձին ձևակերպումներից երևում է (էջ 69 և 71), որ հեղինակը դեռ լրիվին չի հրաժարվել այն պատմաբանների ու տնտեսագետների սխալ տեսակետից, ըստ որի իբրև թե վերականգնման շրջանը Հայաստանում ընդգրկում է 1921—1928 թթ.։

Կան նաև փաստական սխալներ. մի տեղ ասված է, թե ՀԿ(բ)Կ XIV համագումարը տեղի է ունեցել 1925 թ. նոյեմբերին, մի այլ տեղում՝ 1925 թ. սեպտեմբերին։ Իրականում համագումարի աշխատանքներն սկսվել են 1925 թ. նոյեմբերի 30-ին, ավարտվել՝ դեկտեմբերի 4-ին։ Բացի այդ, այստեղ մի պարբերությունում ասված է՝ կուսակցությունը ինդուստրացման կուրս է վերցրել XIV կուսկոնֆերանսում, մյուս դեպքում՝ կուսակցության XIV համագումարում։

Որոշ անվանումներ գրքում միակերպ չեն տրված (օրինակ, «Ձորագետի էլեկտրակայան» և «Ձորագէս» ձևերը), առկա են որոշ վրիպումներ ու տառասխալներ։

Տ. Սաղաթելյանի գրախոսվող գիրքը, այդ ամենով հանդերձ, ուշագրավ ու շահեկան ուսումնասիրություն է։

Վ. ՆԵՐԿԱՐԱՐՅԱՆ
Պատմական գիտությունների դոկտոր,
պրոֆեսոր

---

# ԴԱՍՏԻԱՐԱԿՈՒԹՅԱՆ ԴՊՐՈՑ

Կոմերիտմիության պանծալի տարեգրության էջերը հարուստ են մեր բազմազգ ժողովրդի արժանավոր զավակների բազում անուններով, որոնք իրենց կյանքն ու գործը անմնացորդ նվիրաբերել են սոցիալիստական հասարակության կառուցմանը։ Շատ հայրենանվեր գործերի հեղինակ է մեր փառապանծ երիտասարդ սերունդը, բազմաթիվ դրվագներ վառ, անջնջելի հետք են թողել սովետների երկրի պայքարի ու արարման քառուղիներում։ Կոմերիտականները, պատանի լենինյանները կոմունիստների հետ կողք-կողքի կյանք ու ավյուն են ներարկել անկենդան տափաստաններին։

Կոմերիտմիությունն առաջինն արձագանքեց Հյուսիսային Ղազախստանի խամ ու խոպան հողերի յուրացման կուսակցության կոչին։ Երկրի տարբեր ծայրերից դեպի Ղազախստան ձգվեցին կոմերիտականներով, ուսանող երիտասարդներով լի գնացքների էշելոնները։ Դա 1954 թվականի փետրվարին էր։ Սկսվեց մեծ պայքարը, որը դարձավ սովետական երիտասարդության աշխատանքային էստաֆետի ամենավառ էջերից մեկը։

Խոպանի հերոսների մասին տարբեր լեզուներով բազում գրքեր են հրատարակվել։ Դրանցից է 25 встреч с участниками студенческих строительных отрядов գիրքը, որ լույս է տեսել Ալմա Աթայում՝ խամ ու խոպան հողերի յուրացման 30 և ուսանողական շինարարական ջոկատների ստեղծման 25-ամյակի կապակցությամբ։ Ժողովածուն կազմված է վավերագրական պատմվածքներից, հարցազրույցներից։ Կարդալով գիրքը՝ ծանոթանում ենք տարբեր ազգության պատկանող քսանհինգ երիտասարդների հետ, որոնք ուսանողական տարիներից սկսած ակտիվորեն մասնակցել են այդ հայրենասիրական շարժմանը, այնտեղ ստացել աշխատանքային կոփվածք։ Այսօր նրանք ապրում են Մոսկվայում, Կիևում, Մինսկում, Ալմա Աթայում, Երևանում, Տաշքենդում, Թբիլիսիում և երկրի բազմաթիվ այլ վայրերում։ Նրանց մեջ կան շինարարներ, բժիշկներ, գիտնականներ, մանկավարժներ...

Անցած քսանհինգ տարիների ընթացքում աննախադեպ փոփոխություններ են տեղի ունեցել ղազախստանյան խոպանում։ Ծնվել են նոր ավաններ, սովխոզներ, կոլտնտեսություններ, կառուցվել դպրոցներ ու մանկապարտեզներ, արտադրական շենքեր, մշակույթի ժամանակակից տներ, կենցաղային սպասարկման օբյեկտներ և այլն։ Գյուղի մարդիկ ապրում են բարեկարգ տներում։ Այս ամենում իրենց ավանդն ունեն գրքի հերոսներ Վյաչեսլավ Պիսմեննին, Ռոլան Սեյսենբաևը, Կարեն Պողոսյանը, Մուրատ Ազիմովը, Անատոլի Վոլոշչենկոն, Թամազ Փոփխաձեն, Զավեն Հարությունյանը, Ֆերդինանդ Գայդուկը, Իվան Ալյաևը, Սերգեյ Գոնչարովը և մյուսները։

Գրքում Կարեն Պողոսյանի մասին ջերմ էջեր է նվիրել Վ. Գուսլյարովը։ Ահա թե ինչ է գրում նա. «Հայաստանի հանրապետական ուսանողական շինարարական ջոկատի պատմությունն ու այս մարդու անունը այնքան են միահյուսված, որ Կարեն Պողոսյանի սոսկ կենսագրությունը այդ պատմության մասին կարող էր շատ բան ասել։ Առաջին տասներեք տարիներին նա է գլխավորել ջոկատը։ Նրա անունը գրանցված է ղազախստանյան կոմերիտմիության պատվաբեր գործերի Ոսկե գրքում։ Կարենն այն քչերից մեկն է, որն ունի բոլոր կոմերիտական պարգևները՝ ամենափոքրից մինչև ամենամեծը...»։

Որքա՜ն սիրով է կապված եղբայրական Ղազախստանի հետ Երևանի Կ. Մարքսի անվան պոլիտեխնիկական ինստիտուտի մեխանիկական ֆակուլտետի շրջանավարտ, ինստիտուտի «Նաիրի» շինջոկատի հրամանատար Զավեն Հարությունյանը։ Եվ այսօր էլ նա չի մոռացել Պավլոդարի մարզի Կրասնոկուտսկի շրջանը, «Ագրոնոմիա» սովխոզը, ուր իր շտաբով տեղավորվել էր ջոկատը։ Աշխատում էին հինգ սովխոզներում, կառուցեցին 15 տնակներ, 3 փարախներ։ Զավեն Հարությունյանին շինջոկատային ճամփաները տարել են նաև Էքիբաստուզ։ Այստեղ նա իր ընկերների հետ միասին հանքագործների համար կառուցել է բնակելի տներ, հանքահորեր տանող երկաթուղագծեր անցկացրել...

Գրքում Զավենին նվիրված ակնարկը Յու. Կիրինիցիյանովը վերնագրել է «Հայաստանի և Ղազախստանի զավակը»։ Դիպուկ է գրված. այդ է հաստատում նաև ինքը՝ Զավեն Հարությունյանը, հեղինակի հետ Երևանում ունեցած իր զրույցն ավարտելով հետևյալ խոսքերով.

— Ես ծնվել եմ Հայաստանում, ես սիրում եմ նրա պատմությունը, մշակույթն ու լեզուն, բայց ամեն շինջոկատային ամառ ինձ զգում եմ ոչ միայն Հայաստանի, այլև Ղազախստանի զավակ։

Տարիներ են անցել։ Խամ ու խոպան հողերի յուրացման պիոներների անունները և գործերը չեն մոռացվել։ Նրանց հայրենասիրական նախաձեռնությունը նոր թափով շարունակում են 80-ական թվականների երիտասարդները։ Ամեն տարի երկրի բոլոր հանրապետությունների հազարավոր ուսանողներ իրենց ամառային քննաշրջանն են անցկացնում մեր հայրենիքի բազմաթիվ կառույցներում, աշխատում հանրային դաշտերում, շենացնում շատ բնակավայրեր։ Այդ քննաշրջանը իրավամբ կարելի է անվանել հասունության քննաշրջան, երիտասարդության աշխատանքային և ինտերնացիոնալ դաստիարակության դպրոց։

Ընթացիկ տարում ՍՄԿԿ XXVII համագումարի անունը կրող համամիութենական ուսանողական ջոկատի անդամները մասնակցեցին Արևմտյան Սիբիրի նավթագազային և Հարավային Յակուտիայի տերիտորիալ-արտադրական կոմպլեքսների շինարարությանը, աշխատեցին Բայկալ-ամուրյան երկաթուղում, Կանսկ—Աչինսկի ջերմաէներգետիկ համալիրում, Էքիբաստուզում։ Մեր հանրապետության ուսանողական ջոկատները աշխատեցին Կիրովի և Վոլգոգրադի մարզերում, Տյումենում ու Մարիական ԻՍՍՀ-ում, Պրիմորիեում և այլ շրջաններում։ Հայաստանում ուսանողները մասնակցեցին Ջրառատի թռչնաբուծական և Սիսիանի տրիկոտաժի ֆաբրիկաների շինարարությանը, Զանգեզուրի պղնձամոլիբդենային կոմբինատի վերակառուցմանը, կատարեցին մի շարք այլ աշխատանքներ։

Սովետական երկրի ժողովուրդները փորձության ժամին միշտ էլ իրար օգնության ձեռք են մեկնել: Ինը հազար երիտասարդներ կամավոր մեկնեցին Չեռնոբիլի շրջան՝ օգնելու ատոմային էլեկտրակայանի վթարի հետևանքների վերացմանը: Սեպտեմբերին Մոլդավիա գնացին երկրի պրոֆտեխուսումնարանների սովորողներից կազմված համամիութենական շինարարական ջոկատի անդամները, որոնք մասնակցում են երկրաշարժից տուժած շրջաններում կատարվող շինարարական աշխատանքներին: Այդ նպատակով Սովետական Հայաստանը 200 հոգի գործուղեց եղբայրական Մոլդավիա:

Այս մտորումներն ու փաստերը, կարծես, գրախոսվող գրքի շարունակությունն են, որը ղազախստանցիների երախտագիտության արտահայտությունն է բոլոր նրանց հանդեպ, ովքեր հացի շտեմարան դարձրին այդ հսկայածավալ երկրամասի անծայրածիր տարածքները: 1984 թվականին լույս տեսած այս գրքի ուշացումով գրախոսման պատճառն այն է, որ միութենական հանրապետություններում հրատարակվող գրականությունը մենք ժամանակին ու սիստեմատիկաբար չենք ստանում և հաճախ իրազեկ չենք տպագրվող հրապարակումներին:

Երիտասարդությունը, որ սովետական հասարակության ամենադինամիկ և ակտիվ մասն է, իր հայրենանվեր աշխատանքով մասնակցում է կուսակցության XXVII համագումարի ստրատեգիական ծրագրերի իրականացմանը, երկրի սոցիալ-տնտեսական զարգացմանը, քաղաքական կյանքին, մեր պետության պաշտպանունակության ամրապնդմանը: Տասներկուերորդ հնգամյակի համապետական ժողովրդատնտեսական կառույցներում ևս գերակշռում են երիտասարդները: Այսօր այնտեղ իրենց ծանրակշիռ ավանդն են ներդնում կես միլիոն երիտասարդ կամավորներ:

Հիրավի, խոսել երիտասարդության մասին, նշանակում է խոսել մեր երկրի վաղվա օրվա, ապագայի մասին: Հավատարիմ կուսակցությանն ու ժողովրդին սովետական երիտասարդությունը նորանոր բնագծեր է նվաճում սոցիալիստական հասարակության կատարելագործման ճանապարհին:

**Ս. ՍԻՄՈՆՅԱՆ**

---

Հանձնված է շարվածքի՝ 14.10.86 թ.: Ստորագրված է տպագրության՝ 6.11.86 թ.: ՎՖ 05754: Ֆորմատ՝ 70×108 1/16: Տպագրությունը՝ բարձր, 8,4 պայմանական տպ. մամ., 9,4 հրատ. մամ.: Տպաքանակը՝ 17732: Պատվեր՝ 2010:

ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Երևան—23, Օրջոնիկիձեի պողոտա № 2: